Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

3
ՄԱՐՏ
1987 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն

*ՀԱՄՈԶՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՀԵՆԱՐԱՆՆ Է։ Հանդիպում ՍՄԿԿ Կենտկոմում* . . . . . 3

*ՅՈՒ. ԿՈՉԵՏԿՈՎ— Ակտիվորեն վերակառուցել կուսակցական աշխատանքը* . . . . . . . 12

ԱՐԱԳԱՑՄԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱ

*Ա. ՄԽԻԹԱՐՅԱՆ— Տնտեսական մեխանիզմի համակառուցման հարցի շուրջ* . . . . . . . . 23

*Վ. ՄԱՆՈՒԿՅԱՆ— Հասարակական առաջադիմության կարևոր գործոնը* . . . . . . . 30

*Գ. ԴԱՎԹՅԱՆ— Կոլեկտիվ կապալի տնտեսական և սոցիալական ասպեկտները* . . . . . . . 35

*Ս. ԴԱԼԼԱՔՅԱՆ, Ռ. ՊԵՏՐՈՍՅԱՆ— Կառավարման սոցիալական գործոնները արտադրության մեջ* . . . 41

*Գ. ՆԻԿՈՂՈՍՅԱՆ— Արդյունավետ օգտագործել տուֆը՝ մեր բնական հարստությունը* . . . . . . 47

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՊՐԱԿՏԻԿԱ

*Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆ— Ոչ միայն դիպլոմով* . . . . 51

*Ղ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ— Կենդանի կապը լսարանի հետ* . . 53

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

ԿՐԹՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆ.
ՊՐՈԲԼԵՄՆԵՐ ԵՎ ՄՏՈՐՈՒՄՆԵՐ

*Բ. ՎԱՐԴԱՆՅԱՆ— Աշխատանքը և ուսումը անբաժան են* . 62

*Հ. ՄԱԽՋԱՆՅԱՆ— Ռեֆորմի հիմնադրույթների կենսագործման ուղիով* . . . . . . . . . . 68

ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ՃԱԿԱՏՆԵՐՈՒՄ

*Ս. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ— Ընդդեմ դաշնակցական մամուլի ննեգափոխումների* . . . . . . . . . 75

ՀԻՇԱՐԺԱՆ ՏԱՐԵԹՎԵՐ

*Լ. ՄԱՐԿՈՍՅԱՆ— Ականավոր գիտնականը, բոցաշունչ հայրենասերը* . . . . . . . . . 81

ԱԹԵԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ

*Լ. ԿԱՆՅԱՆ— Արմատավորելով նոր ծեսերը* . . . . 85

ԳԻՏՈՒԹՅԱՆ ՀՈՐԻԶՈՆՆԵՐԸ

*Ճառագայթները ծառայում են մարդուն* . . . . 90

ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

*Ռ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ— Հայրենիքի ձգողական ուժը* . . 95





**Խմբագրության հասցեն՝**
*375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2*

**ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝**

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—36
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թղթակից, սրբագրիչ՝ 58—86—11




# ՀԱՄՈԶՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՀԵՆԱՐԱՆՆ Է

## ՀԱՆԴԻՊՈՒՄ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեում տեղի ունեցավ հանդիպում մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների ղեկավարների հետ: Գործարար մթնոլորտում կարծիքներ փոխանակվեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումի պահանջների լույսի ներքո մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի հրատապ խնդիրների շուրջ:*

*Հանդիպման մասնակիցների առջև ելույթ ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:*

*Կենտկոմի հունվարյան պլենումից հետո անցել է երկու շաբաթ, և դուք ժամանակ ունեիք մտածելու նրա գաղափարների, նրա որոշումների նշանակության մասին: Մենք շատ բարձր ենք գնահատում այդ պլենումը: XXVII համագումարը սահմանեց մեր աշխատանքի կոնցեպցիան, գիծը: Բայց ամեն մի քաղաքական գիծ, եթե հասարակության մեջ չի մարմնավորվում գործնական որոշումներով, էկոնոմիկայի, քաղաքականության ոլորտում, գաղափարախոսության, բարոյականության, ընդհանրապես հոգևոր ոլորտում ընդունվող որոշումներով, ապա այդ գիծը մնում է օդում կախված, դա մանիլովշչինա է: Եվ մենք դա արդեն վերապրել ենք:*

*Եթե դառնանք անցյալին, ապա մեզ մոտ քիչ չեն հռչակվել գործնական որոշումներ: Դրանցում կա այն ամենը, ինչով մենք այսօր զբաղվում ենք: Դուք հիշում եք, ասված էր, որ մենք պետք է բարելավենք կառավարումը, որ հարկավոր է գիտատեխնիկական առաջադիմությանը նվիրված պլենում: Հսկայական աշխատանք կատարվեց, իսկ պլենումը այդպես էլ տեղի չունեցավ: Դա 15—17 տարի առաջ էր: Դրանք հենց այնքան տարիներն են, որքան որ մենք կորցրել ենք:*

*Այսօր այդ բանը թույլ տալ չի կարելի: Պլենումի կողմից իր առջև դրված խնդիրներն էին՝ տալ վերակառուցման տեսությունը և քաղաքականությունը, ՍՄԿԿ XXVII համագումարի գիծը շրջել-դնել պրակտիկ գործերի հարթության վրա բոլոր ուղղություններով:*

*Պլենումի նախապատրաստությունը, ինչպես գիտեք, հեշտ գործ չեղավ: Հասարակության մեջ բավական լայն տարածում էին գտել այսպիսի տրամադրություններ. իսկ մենք արդյոք հարցը չափից դուրս կտրուկ չե՞նք դնում, բացահայտում մեր դժվարությունները, ոչ մի լավ բան չենք նկատում: Ներկա ղեկավարությունը ինչի՞ մեջ է տեսնում սովետական պետության ուժը:*

*Հարկ էր տալ շատ հարցերի պատասխաններ, վերադառնալ ակունքներին, արմատներին, հասկանալ, թե ինչ է տեղի ունեցել, և մենք որտեղ ենք գտնվում: Չհասկանալով դա, անկարելի է առաջ շարժվել:*

*Բայց գլխավորը, ինչպես մենք նշեցինք պլենումում, անցյալի հետ հաշիվները մաքրելը, որևէ մեկին հիշատակելը չէր: Հարկավոր էին երևույթների, պրոցեսների գնահատում, վերլուծություն, դրանց միտումների բացահայտում: Մենք ջանում էինք դա անել, քանի որ այդ ամենը՝ վերլուծությունը, քննադատությունը, ինքնաքննադատությունը, դասերը մեզ հարկավոր են այսօրվա համար և վաղվա համար: Սա է գլխավորը: Պետք էր անել այնպիսի*

առաջարկություններ, որպեսզի աշխատանքի մեջ ներգրավվի ամբողջ հասարակությունը:

Եթե մենք հունվարյան պլենումում կանգնեինք երևույթների նկատմամբ նախկին մոտեցումների վրա, եթե միայն քննադատեինք, վերլուծեինք և կոնստրուկտիվ ծրագիր չառաջարկեինք, չասեինք գլխավորը՝ ինչ և ինչպես անել, ինչ նոր ուժեր ներգրավել, ինչպես հաղթահարել արգելակման մեխանիզմը և արագացման իրոք նոր մեխանիզմ ստեղծել, ապա այդ դեպքում դա նորից կլիներ դոփում տեղում: Եվ մենք կանգ չառանք անցածի վրա: Հունվարյան պլենումն ունի իր նշանակությունը, ունի իր տեղը: Մենք պետք է անցնեինք դա և առաջ շարժվեինք:

Լավ է, որ մամուլը վերակառուցման նոր փուլը ցույց է տալիս որպես դժվարին, բարդ, դիալեկտիկական պրոցես, նշեց Մ. Ս. Գորբաչովը: Եվ պետք չէ այն պարզունակացնել: Նույնը և կյանքում: Ամեն ինչ չէ, որ հարթ է ընթանում: Նորը ծնունդ է առնում և հաստատվում պայքարում, փորձարկվում կյանքով, պրակտիկայով: Վերակառուցումը ընթանում է լայնքով ու խորքով. ձեռք է բերում կոնկրետ քաղաքականության ձև: Շոշափվում են շատ մարդկանց շահերը: Կան մարդիկ, որոնց վերակառուցումը դժվարությամբ է տրվում, բայց նրանք հասկանում են, որ այլ կերպ չի կարելի: Ամենքը պետք է վերակառուցվեն: Հանուն ժողովրդի, սոցիալիզմի արմատական շահերի: Վերակառուցումը այլընտրանք չունի: Մեր ամբողջ հասարակությունը տառապանքով է ձեռք բերել այն: Վերակառուցմանը պետք է զորավիգ լինել, վերակառուցումը պետք է պաշտպանել, վերակառուցումը պետք է զարգացնել, վերակառուցումը պետք է առաջ մղել:

Պետք է ապրել ու աշխատել խղճի մտոք, գտնել թե՛ ռեզերվներ և թե՛ հնարավորություններ ինչ-որ բան ավելի լավ անելու, աշխատանքը հավելելու: Ինձ դուր է գալիս հավելել բառը: Այս ամենը պետք է հոգով, մտքով ու սրտով ըմբռնել, զգալ, և այդ դեպքում կհավելես:

Եվ այստեղ հասակով մեկ հառնում է մարդկային գործոնի դերը: Մենք համամիտ ենք գլխավոր հարցում. պետք է ամրապնդել մարդուն, նրա ոգին, նրա համոզմունքները: Այն մարդու համար, ում գիտակցությունը երկատված է, ապրելն ու աշխատելը դժվար է: Նա կորցնում է կողմնորոշիչները, նա վերակառուցման ընդունակ չէ: Չի կարելի ավերել մարդու հոգևոր աշխարհը: Պետք է պաշտպանել և ամրացնել այն: Եթե գիտակցությունը չի խաթարված, այնժամ ամեն ինչ կստացվի: Պետք է գործել, ամենայն ակտիվությամբ պայքարել մտադրածի իրականացման համար: Մշակույթի ամբողջ պոտենցիալը պետք է ի սպաս դրվի մարդուն:

Պլենումի նյութերը կուսակցության շատ տարիների գործունեության ծրագիր են: Դա նաև մամուլի աշխատանքի ծրագիր է: Եթե ուշադրությամբ խորամուխ լինենք պլենումի նյութերին, ապա պետք է պարզ լինի, որ դրանցում սահմանված են սովետական հասարակության նոր որակական վիճակի հասնելու՝ սոցիալիզմի զարգացման այդ արմատական խնդիրը լուծելու ուղիները:

Հունվարյան պլենումի գլխավոր իմաստը՝ բոլոր պրոբլեմների լուծման տեսանկյունից, դեմոկրատիայի զարգացումն է: Զարգացնել դեմոկրատիան թե՛ էկոնոմիկայում, թե՛ քաղաքականության և թե հենց կուսակցության մեջ: Բայց սոցիալիստական հիման վրա: Ոչ թե հեռացում սոցիալիզմից, այլ ավելի շատ սոցիալիզմ, ոչ թե հեռացում դեմոկրատիայից, այլ ավելի շատ դեմոկրատիա, ոչ թե հեռացում սոցիալիստական բարոյականությունից, այլ հանուն սոցիալիստական բարոյականության:

Ահա թե որն է վերակառուցման էությունը:

Պլենումի գաղափարները պահանջում են մշտական, ամենօրյա, խորացված, ստեղծարար աշխատանք: Եվ, որ գլխավորն է՝ դրանք հարկավոր է նյութականացնել, հագեցնել կոնկրետ բովանդակությամբ: Եվ այստեղ մամուլի դերն անփոխարինելի է:

Մեզ հարկավոր է երկխոսություն ժողովրդի հետ, հարկավոր է լայն խորհուրդ, կուսակցության և ժողովրդի գործողություններում սերտ միասնության մշակում: Մեզ մոտ ամբողջ հասարակությունը բարիկադների մի կողմում է: Ուրիշ հարց է, որ տարբեր մարդիկ ունեն բուն վերակառուցման և դրանում իրենց դերի ըմբռնման տարբեր մակարդակներ: Վերակառուցման ուղղակի,



բացահայտ հակառակորդներն այնքան էլ շատ չեն: Կան որոշակի մի մաս կազմող մարդիկ, որոնք չգիտեն, թե ինչպես պետք է աշխատել նորովի և չեն կարողանում աշխատել վերակառուցման պայմաններում: Նրանց պետք է սովորեցնել: Նրանց պետք է օգնել:

Պլենումի որոշումները քննարկվում են աշխատավորական կոլեկտիվներում և լիակատար պաշտպանություն գտնում: Եվ, ինչը մեզ համար հատկապես կարևոր է, պաշտպանություն՝ գործով: Հարկավոր է, որ բոլորը տրամադրվեն աշխատանքի այդպիսի տոնայնությամբ: Ավելի շատ գործարարություն, ավելի քիչ ընդհանուր դատողություններ վերակառուցման օգուտի մասին. այսպիսին պետք է լինի այսօր մասսայական ինֆորմացիայի միջոցների ելույթների լեյտմոտիվը:

Նոր, հիրավի արմատական տեղաշարժեր են տեղի ունենում հասարակության մեջ: Դրանք պահանջում են ուժերի, էներգիայի հսկայական ծախսում. նախաձեռնություն, գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցում, համառ պայքար չեզոքության և քարացածության դեմ, կադրերի հոգեբանական վերակառուցում, նոր մտածողություն, աշխատանքի նոր ոճ:

Եվ այստեղ մամուլը իր հնարավորություններով, նորի, առաջավորի իր ընկալունակությամբ, ունենալով այնպիսի հզոր լծակներ, ինչպիսիք են քննադատությունը, հրապարակայնությունը, լավագույն փորձի պրոպագանդումը, կարող է և պետք է շատ բան անի:

Վերակառուցման պայմաններում աշխատանքի կենդանի փորձի պրոպագանդումը մեզ համար հիմա գերագույն կարևորության գործ է: Նորի ծիլերը դժվարությամբ են բարձրանում: Դրանց հաճախ խեղդում են անկարգապահության, անպատասխանատվության, անձեռնհասության «մոլախոտերը»: Իսկ ահա պրոպագանդայի միջոցների հոգատարությունը ծիլերի նկատմամբ, ուղղակի ասենք, քիչ է:

Մենք լավ ենք տեսնում. կան վերակառուցման նվիրյալներ: Նրանք մեր օրերի հերոսներն են: Եվ նրանց հարկավոր է այնպես ցույց տալ, որ նրանք մարդկանց սովորեցնեն իրենց օրինակով, պայքարի խանդավառեն հանուն հասարակության հեղափոխական վերափոխումների: Մենք պարտավոր ենք և կպաշտպանենք այն, ինչն ամրապնդում է սոցիալիզմը, ամրապնդում մարդու ոգին: Չի ճնշում նրան, շփոթության չի մատնում: Հիշո՞ւմ եք, ինչպիսին էր Լենինի ելույթը կուսակցության XI համագումարում: Ինչ դժվարին իրադրություն էր, սակայն, ինչ լավատեսությամբ էր նա խոսում:

Որքա՜ն հիանալի մարդիկ, կոլեկտիվներ ունենք մենք այսօր: Իսկ ո՞ւր են նրանք մամուլի էջերում:

Նորի ծիլերը հարկավոր է փայփայել, որպեսզի դրանք արմատներ արձակեն, սաղարթ տան, որպեսզի անտառին հաջորդի մանրանտառը: Ժողովուրդը վերակառուցման գլխավոր գործող անձն է: Եվ ժողովուրդը, աշխատավոր մարդը պետք է լինի մամուլի, հեռուստաէկրանի գլխավոր գործող անձը:

Առաջավոր փորձի նկատմամբ կուսակցական հոգատարությանը օրգանապես կապված է նաև հրապարակայնության, քննադատության բնույթի հարցը: Հրապարակայնությունը, ինչպես ասվեց ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումում, թե՛ մեր հասարակության դեմոկրատացման պրոցեսի պարտադիր պայմանն է և թե սկսված վերափոխումների անշրջելիության կարևորագույն երաշխիքներից մեկը:

Մենք գտնում ենք, որ մեր մամուլը՝ թերթերը, ռադիոն, հեռուստատեսությունը, հասարակական-քաղաքական և գրական-գեղարվեստական հանդեսները ընդհանուր առմամբ լավ են աշխատել հրապարակայնության՝ որպես մեր հասարակական կյանքի նորմայի, հաստատման համար:

Իսկ այժմ քննադատության մասին: Այս հարցը միշտ հարուցել է և այսօր էլ հարուցում է վեճեր, դիսկուսիաներ: Քննադատությունը դառը դեղամիջոց է, բայց հիվանդություններն անհրաժեշտ են դարձնում այն: Կնճռոտվում ես, բայց և ընդունում: Եվ իրավացի չեն այն ընկերները, որոնք ենթադրում են, թե քննադատությունը կարելի է դոզավորել ըստ ժամանակի: Անիրավացի են նաև նրանք, ովքեր հակված են կարծելու, թե լճացման երևույթներն արդեն վերացել են և, իբր, ժամանակն է «հետ քաշվել»:

այստեղ էլ ուժի մեջ է մնում ճշմարտության անխախտ, սոցիալիստական օրենքը։

Եղել է թե՛ այս և թե այն, թե՛ ուրախալին և թե՛ վշտալին։

Ինչ էլ որ մեզ հետ պատահել է, մենք առաջ ենք ընթացել, մենք չենք հայտնվել ֆաշիզմի թրթուրների տակ։ Մենք ֆաշիզմը խորտակեցինք ոչ միայն հերոսությամբ ու ինքնազոհաբերմամբ, այլև լավագույն պողպատով, լավագույն տանկերով, լավագույն զինվորներով։ Եվ այս ամենը կռել է մեր սովետական ժամանակը։

Իսկ վերցրեք հետպատերազմյան տարիները։ Ամեն խրճիթում՝ վիշտ, քաղաքների տեղում՝ մոխրակույտեր։ Տնտեսական շրջափակում։ Սառը պատերազմ։ Իսկ մենք չխոնարհվեցինք։ Կրկին ոտկացինք և բարձրացանք մինչև տիեզերք։

Գործի այս կողմը մենք երբեք չպետք է մոռանանք։

Չպետք է մոռանալ անունները և առավել ևս բարոյազրկություն է ժողովրդի կյանքի ամբողջ ժամանակաշրջաններ մոռանալը կամ լռության մատնելը, ժողովրդի, որն ապրում էր, հավատում և կուսակցության ղեկավարությամբ աշխատում հանուն սոցիալիզմի։

Պատմությունը հարկավոր է տեսնել այնպիսին, ինչպիսին որ կա։ Ամեն ինչ եղել է, եղել են սխալներ՝ և ծանր, բայց երկիրը առաջ էր շարժվում։ Վերցրեք ինդուստրացման կամ կոլեկտիվացման տարիները։ Դա կյանք է, իրողություն։ Դա ժողովրդի ճակատագիրն է բոլոր հակասություններով՝ թե նվաճումներով և թե սխալներով հանդերձ։

Կուսակցությունն արդեն գնահատական տվել է սխալներին ու վրիպումներին, մեր մոլորություններին։ Բայց այդ պարագայում էլ, ամենածանր ժամանակներում կուսակցությունը ապրում էր, պայքարում։ Մեզ վիճակվեց նախագնացների առաքելությունը։ Ահա թե ինչպիսի՜ բարդ դիալեկտիկա կա այստեղ, այն հարկավոր է տեսնել, ընկերներ։

Առանձնահատուկ ուշադրություն է պահանջում, շարունակեց Մ. Ս. Գորբաչովը, ազգային հարցը։ Մեր սկզբունքային դիրքորոշումը մենք կուսակցության XXVII համագումարում արտահայտեցինք հստակ ու հետևողական։ Մենք կողմնակից ենք բոլոր ժողովուրդների թե՛ ազգային զգացմունքների, թե՛ պատմության, թե՛ մշակույթի, թե՛ լեզվի նկատմամբ հարգալից վերաբերմունքի, կողմնակից ենք լիակատար և փաստական հավասարության։

Մենք ապրում ենք բազմազգ երկրում, և այդ հարցերը անուշադրության մատնելը վտանգավոր է։ Ցավոք, մենք երբեմն իրավիճակը այդ ուղղությունում գնահատել ենք կենացաճառերի ձևով, իսկ չէ որ դա կենդանի կյանքն է իր բովանդակ բազմազանությամբ։

Մի կողմից, աճում, բարձրանում է բոլոր ժողովուրդների և ազգությունների, նույնիսկ ամենափոքրերի, կուլտուրական մակարդակը, ստեղծվել է ազգային մտավորականություն։ Նա ուսումնասիրում է իր ծագման արմատները, երբեմն դա հանգեցնում է պատմության և նրա հետ կապված ամեն ինչի (և ոչ միայն առաջավորի) աստվածացման։ Մյուս կողմից, կյանք են մտնում նոր սերունդներ, և նրանց հարկավոր է դաստիարակել, ժամանակակից պատկերացումներ տալ այն մասին, թե որտեղ են իրենք ապրում և ինչպես է հաստատվել մարդկության պատմության այնպիսի մի հազվագյուտ երևույթ, երբ հարյուրից ավելի ազգեր ու ժողովուրդներ ապրում են, եթե դատենք նույնիսկ պատմական մեծ չափանիշներով, համերաշխ ու լավ։ Եվ, այնուամենայնիվ, դա կենդանի կյանք է, շարժում, զարգացում, ուստի և յուրաքանչյուր փուլում կարող են լինել հակասություններ։ Սրանով պետք է հանգիստ զբաղվել, ուսումնասիրել, լուծել, դաստիարակել։ Ընդ որում միակ ճիշտ մոտեցումը լենինյան ազգային քաղաքականությունն է, լենինյան ոգին։

Մենք ազգային հարցը դիտել ենք, դիտում ենք և կլուծենք միայն ինտերնացիոնալիստական դիրքերից։

Մենք պետք է ավելի մեծ վստահություն ցույց տանք երիտասարդությանը, ասաց Մ. Ս. Գորբաչովը։ Գործարաններն ու ֆաբրիկաները, ամենադժվարին տեղամասերը, գիտության ու տեխնիկայի նոր ուղղությունները, դեռևս չբնա-



կեցված շրջանները՝ ամեն ինչ նա է յուրացնում, ամեն ինչ նա է տանում, իր ուսերին վերցնում։ Ասենք, գաղափարական տեսակետից էլ մեր երիտասարդությունը հասուն է։

Վերջերս ես «Սովրեմեննիկ» թատրոնում ներկա եղա «Բոլշևիկները» ներկայացմանը։ Դահլիճում ներկա գտնվողների 70 տոկոսը երիտասարդներ էին։ Բեմում բավական լուրջ բանավեճ էր տեղի ունենում։ Դահլիճում լռություն է, ամենքը լսում են։ Ու երբ ներկայացումը մոտենում էր ավարտին, պիեսի հերոսները երգեցին «Ինտերնացիոնալը»։ Ամբողջ դահլիճը հոտնկայս նրանց հետ երգում էր պրոլետարական հիմնը։

Հասարակությունը միշտ էլ ավելի մեծ զգացմունքայնությամբ է արձագանքում արվեստի հրապարակախոսական պաթոսին, բարոյական գնահատումներին։ Այստեղ ամեն մի վրիպում, փաստերի միտումնավոր ընտրություն առանձնապես նկատելի է։ Այլ կերպ ասած, ամեն անճշտություն հիվանդագին արձագանք է առաջացնում, շոշափում մարդու սոցիալական ինքնազգացողությունը։ Սրանից անհնար է խուսափել։

Գրականությունը հասարակությանը նախապատրաստում էր փոփոխություններին, անհանգստացնում հասարակական խիղճը։ Որոշ հրապարակախոսներ համարձակորեն էին հանդես գալիս այն գաղափարների օգտին, որոնք այսօր կուսակցական ու պետական որոշումների ուժ են ձեռք բերել էկոնոմիկայում, մշակույթի, լուսավորության բնագավառում։

Թվում է, հիմա, երբ փոխվել են պայմանները, օրինաչափ է տեսնել հրապարակախոսության թռիչք։ Առանձին հաջողություններ իսկապես կան։ Բայց երբեմն հրապարակախոս գրողները նոր խոսքի փոխարեն շտապում են ասել-վերջացնել այն, ինչ առաջ չէին ասել։

XXVII համագումարը մտավորականության բոլոր ջոկատների ուշադրության կենտրոնում դրեց գեղարվեստական արտացոլման ճշմարտության հարցը։ Շրջադարձային ժամանակաշրջանում մենք, ինչպես երբեք, իրականությունն օբյեկտիվորեն, բազմակողմանիորեն տեսնելու կարիքն ունենք։ Ճշմարտությունը պետք է լինի լիակատար։ Այնժամ նա կունենա կոնստրուկտիվության որակը։

Այսօրվա խոսակցության ընթացքում ես գուցեև սրեցի որոշ հարցեր, բայց միայն մեկ նպատակով՝ ճշտել մեր շարժման բոլոր կոորդինատները, գործել համերաշխորեն։

Կենտկոմը վստահ է, որ ժուռնալիստները, մեր ամբողջ կուսակցական հրապարակախոսությունը կուսակցության ու ժողովրդի հետ միասին անշեղորեն և անդուլ կերպով կվարեն վերակառուցման գործը։

Քննարկմանը մասնակցեցին «Պրավդա» թերթի գլխավոր խմբագիր Վ. Գ. Աֆանասևը, «Օկտյաբր» հանդեսի գլխավոր խմբագիր Ա. Ա. Անանևը, ՏԱՍՍ-ի գլխավոր դիրեկտոր Ս. Ա. Լոսևը, ՍՍՀՄ հեռուստառադիոպետկոմի նախագահ Ա. Ն. Ակսյոնովը, «Իզվեստիա» թերթի գլխավոր խմբագիր Ի. Դ. Լապտևը, «Մոսկվա» հանդեսի գլխավոր խմբագիր Մ. Ն. Ալեքսեևը, «Կոմունիստ» հանդեսի գլխավոր խմբագիր Ի. Տ. Ֆրոլովը, «Օգոնյոկ» հանդեսի գլխավոր խմբագիր Վ. Ա. Կորոտիչը, ՍՍՀՄ հրատպետկոմի նախագահ Մ. Ֆ. Նենաշևը, «Զնամյա» հանդեսի գլխավոր խմբագիր Գ. Յա. Բակլանովը, «Նորություններ» մամուլի գործակալության վարչության նախագահ Վ. Մ. Ֆալինը, «Լիտերատուրնայա գազետայի» գլխավոր խմբագիր Ա. Բ. Չակովսկին, «Սովետսկի սոյուզ» հանդեսի գլխավոր խմբագիր Ն. Մ. Գրիբաչովը, ՍՍՀՄ գրողների միության վարչության առաջին քարտուղար Վ. Վ. Կարպովը, «Նովի միր» հանդեսի գլխավոր խմբագիր Ս. Պ. Զալիգինը։

Մասսայական ինֆորմացիայի միջոցների ղեկավարների ելույթներում միահամուռ պաշտպանություն հայտնվեց ՍՄԿԿ Կենտկոմի հունվարյան պլենումի որոշումներին։ Նշվում էր, որ կուսակցությունը երկիրը դուրս է բերում մեր հասարակության զարգացման որակապես նոր, ըստ էության հեղափոխական փուլ։ Տպավորիչ են 70—80-ական թվականների սահմանագծում ստեղծված իրադրության խոր ու համարձակ տեսական վերլուծությունը, հասունացած պրոբլեմների ճշգրիտ առանձնացումը և դրանց լուծման ուղիների կոնկրետ մատնանշումը։ Կենտրոնական կոմիտեի մոտեցումը խորին հար-

գանքի և հայրենասիրական հպարտության զգացում է առաջացնում, բոլոր ժուռնալիստներին մղում է նորացման պայքարի։

Մամուլի աշխատողների, սովետական մշակույթի գործիչների պարտքն է, շեշտում էին հռետորները, ակտիվորեն օգնել կուսակցությանը սովետական հասարակության կյանքի բոլոր կողմերի վերափոխման հեղափոխական պրոցեսում։ Ժուռնալիստների, հրապարակախոսների և գրողների համար կարևոր է ոչ միայն խորապես ու բազմակողմանիորեն բացահայտել վերակառուցման էությունը, այլև վերակառուցվել անձամբ, վերակառուցել ստեղծագործական կոլեկտիվների աշխատանքը։

Ժուռնալիստներից, ամբողջ հրապարակախոսությունից պահանջվում են բարձր ձեռնհասություն, խոր թափանցում կյանքի մեջ։ Հասարակության մեջ բարդ պրոցեսներ են ընթանում, և դրանց մասին պետք է գրել կրքոտ, շահագրգիռ, պրոֆեսիոնալ կերպով, գործիմացությամբ։

Այսօր ժուռնալիստների հոդածության գլխավոր առարկան է մարդկանց օգնել ավելի լավ հասկանալու և յուրացնելու վերակառուցման գաղափարները, մասսաներին ոտքի հանելու համաժողովրդական պայքարի՝ հանուն կուսակցության պլանների հաջող կատարման։ Հենվելով ճշմարտության դասերի վրա, պետք է ծավալել քննադատությունը, ուժեղացնել պայքարը բյուրոկրատիզմի ու պահպանողականության դեմ և միևնույն ժամանակ խստիվ հետևել մեր ստրատեգիական սկզբունքին՝ ակտիվորեն ու հմտորեն պաշտպանել սոցիալիստական իդեալները, սոցիալիստական բարոյական արժեքները, սոցիալիստական ոգեղենությունը։ Դա մարդկանց հետ տարվող աշխատանքի այն հիմքն է, առանց որի անհնար է նորացման նպատակներին հասնելը։

Ելույթ ունեցողներից շատերը նշում էին, որ վերակառուցումը իրողություն է դարձել, բայց հակասական, բարդ իրողություն։ Այդ պայմաններում ժուռնալիստները կոչված են վերակառուցումը ցույց տալու հենց այնպիսին, ինչպես որ կա, և ոչ թե այնպիսին, ինչպիսին երևում է այս կամ այն աշխատասենյակի պատուհանից։

Ափսոսանք էր հայտնվում, որ ժուռնալիստը այսօր էլ երբեմն դժվարությամբ է ինֆորմացիա ձեռք բերում։ Մամուլի ներկայացուցչից բառացիորեն փախչում են այն աշխատողները, ովքեր հարկավոր տեղեկություններն ունեն։ Մի շարք գերատեսչություններում դեռ կենսունակ են այդ կապակցությամբ հարուցվող ամենատարբեր արգելքները։ Ժուռնալիստների նկատմամբ կուսակցական և պետական մարմինների հարգալից վերաբերմունքը պետք է նորմ դառնա, դա թույլ կտա խուսափել շատ սխալներից։

Հանդիպման մասնակիցներն ասում էին, որ լայն դեմոկրատիայի և հրապարակայնության պայմաններում մամուլի, գրականության և արվեստի աշխատողներից պահանջվում է թե՛ կուսակցական համարձակություն, թե՛ կուսակցական պատասխանատվություն հրատարակությունների գաղափարական ու գեղարվեստական մակարդակի համար։

Քննադատության ենթարկվեց այն հրապարակախոսների ու գրողների դիրքորոշումը, ովքեր կողմնակի դիտորդի կեցվածք են ընդունում, թերությունների ու պրոբլեմների մասին գրում են ինչ-որ օտարացման երանգով։ Պաշտպանություն գտան այն հրապարակումները, որոնց հեղինակները սուր կերպով և քննադատաբար հետազոտում են բարդ իրողությունները, բայց դրա հետ մեկտեղ հանդես բերում քաղաքացիական շահագրգռություն հասարակական ախտերի բուժման գործում, զբաղվում ստեղծարար որոնմամբ։ Կարևոր է հեղինակի ակտիվ դիրքորոշումը։ Իր ողջ տրամադրությամբ թերին քննադատելիս նա պետք է կրի ու հաղորդի դրական լիցք, շարժման լիցք, կյանքի լիցք։

Նշվեց, որ այժմ երկրում, ըստ էության, ձևավորվում է համաժողովրդական ճակատ, որը հոգով միտված է վերակառուցմանը։ Կուսակցությունը մարդկանց միավորում է մեծ գաղափարների շուրջը։ Այդպես է եղել մեր սոցիալիստական պատմության բեկումնային ժամանակաշրջաններում, այդպես է նաև այժմ։ Դա է մեր պատմական ուղու հաջորդայնությունն ու հետևողականությունը։

Հարկավոր է ըստ ամենայնի պաշտպանել անհատի աճը վերակառուցման պրոցեսում և ամենից առաջ այսօր, նոր պայմաններում հասունացող աշխա-



տանքի մարդու, բանվոր-անհատի աճը։ Երկիրը վերակառուցող մարդկանց կյանքը հագեցած է հսկայական բովանդակությամբ։ Այդ կյանքն արժանի է, որ իր մասին պատմվի վառ, հանգամանորեն։

Ուշադրություն էր հրավիրվում երկրում տեղի ունեցող պրոցեսների տեսական խոր իմաստավորման, հասարակական զարգացման առանձնահատկությունների վերլուծության անհրաժեշտության վրա։ Տեսական հոդվածների սոցիալական պահանջմունքը մեծանում է։ Հարկավոր է այդպիսի նյութերի բարձր կուլտուրա, իսկ դա պահանջում է սովորել մտածել ու գրել նորովի։ որպեսզի տեսությունը, իրոք, ծառայի մարդկանց հասարակական գիտակցության աճին, նրանց քաղաքական կուլտուրայի բարձրացմանը։ Հարկավոր է առավելագույնս օգտագործել այն ինտելեկտուալ պոտենցիալը, որն արդեն կա։

Ելույթ ունեցողները պատմեցին այն խոր փոփոխությունների մասին, որ ընթանում են թերթերում, հանդեսներում, հեռուստատեսությունում և ռադիոյում, ինֆորմացիոն գործակալություններում, հրատարակչական գործում։ Հաղորդումները, հրապարակումները բարձրացնում են հասարակական կյանքի, էկոնոմիկայի և քաղաքականության խոշոր հարցեր։ Այդ առնչությամբ առաջադրվեց ժուռնալիստիկայի մեջ թարմ ուժերի, լավ կենսակոփվածք ունեցող տաղանդավոր երիտասարդության ներհոսի անհրաժեշտության, մասսայական ինֆորմացիայի միջոցների համար կադրերի պատրաստման համակարգի կատարելագործման հարցը։

Հանդիպմանը մասնակցեցին ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Ե. Կ. Լիգաչովը և ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Ա. Ն. Յակովլևը։

---

# ԱԿՏԻՎՈՐԵՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑԵԼ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ

**ՅՈՒ. ԿՈՉԵՏԿՈՎ**
ՀԿԿ Կենտկոմի երկրորդ քարտուղար

*Մ*ԵԿ ՏԱՐԻ Է ԱՆՑԵԼ ԱՅՆ ԺԱՄԱՆԱԿԻՑ, երբ Մոսկվայում տեղի ունեցավ պատմական նշանակության իրադարձությունը՝ ՍՄԿԿ XXVII համագումարը, որը նշանավորեց կտրուկ շրջադարձի սկիզբը կուսակցության, սովետական ողջ հասարակության կյանքում։ Անցնելով բոլշևիկյան ճշմարտության, կուսակցական սկզբունքայնության և պահանջկոտության մթնոլորտում՝ XXVII համագումարը ցույց տվեց, որ կուսակցությունը կանգնած է պատմական խնդիրների բարձրության վրա, արժանավայել կերպով է կատարում սովետական հասարակության ավանգարդի դերը, վստահորեն ընթանում լենինյան կուրսով։ Համագումարում վավերացվեցին և հետագա զարգացում ստացան երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումի գիծը, աշխարհում խաղաղության ամրապնդման կուսակցության կուրսը, տեսականորեն հիմնավորվեցին մեր հասարակության հեռանկարային զարգացման ուղիները։

Համագումարի որոշումները, փաստաթղթերը դարձան մեր կյանքի բոլոր կողմերի արմատական վերակառուցման ու վերափոխման ստեղծագործական ծրագիրը, առաջ բերեցին աշխատավորական զանգվածների վիթխարի եռանդն ու ակտիվությունը։ Այժմ կուսակցության մեջ, ողջ երկրում կատարվում է չտեսնված թափի, իր նորարարությամբ աննախադեպ աշխատանք, որն ուղղված է համագումարի առաջադրած գլխավոր խնդրի՝ սովետական հասարակության որակապես նոր վիճակի ապահովման իրականացմանը։

ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների կատարմանը նորարարական մոտեցման խկական օրինակ են ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումը, Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովի «Վերակառուցման և կուսակցության կադրային քաղաքականության մասին» զեկուցումը։ Պլենումի որոշումները նշանավորում են արմատական վերափոխման նոր փուլի սկիզբը, որ տեղի է ունենում երկրի տնտեսական և հասարակական-քաղաքական կյանքի բոլոր ոլորտներում։ Սովետական մարդիկ մեծագույն գոհունակությամբ նշում են, որ մեր հասարակությունում ծագող հակասությունների լուծման նկատմամբ պարզունակ, մակերեսային մոտեցմանը գալիս են փոխարինելու իսկական գիտական վերլուծությունը, սոցիալիզմի վերաբերյալ լենինյան դրույթների զարգացման նկատմամբ իսկական ստեղծագործական մոտեցումը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի աշխատանքի հեղափոխական-ստեղծագործական համարձակ ոճը։ Այսօր կուսակցական կազմակերպությունններն ավելի լավ են պատկերացնում վերակառուցման էությունը, նրա կենսական պահանջները և վերջնական նպատակները։

Հավանություն տալով կուսակցության ստրատեգիական կուրսին՝ Հայաստանի կոմունիստները, հանրապետության բոլոր աշխատավորներն ակտիվորեն ներգրավվել են ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների իրականացման, հասարակական կյանքի վերակառուցման պրոցեսում։ Հանրապետության կուսակցական կազմակերպության աշխատանքում է՛լ ավելի են ուժեղացել ինքնաքննադատությունը, կուսակցական սկզբունքայնությունը, սրությունն ու հաստատակամությունը նախատեսված պլանների կատարումն ապահովելու գործում։ Ամենուրեք պայքար է ծավալվել գիտատեխնիկական առաջընթացի արագացման, արտադրության արդյունավետության ու արտադրանքի որակի բարձրացման, նյութական և աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման համար։ Գաղափարախոսական և քաղաքական-դաստիարակչական աշխատանքը կենտրոնացվել է կուսակցության գլխավոր պահանջի կատարման՝ մարդկային գործոնի ակտիվացման, դաստիարակչական գործունեության մեթոդների նորացման վրա։ Քաղաքական և կազմակերպչական աշխատանքի ծանրության կենտրոնը է՛լ ավելի է տեղափոխվում սկզբնական կազմակերպությունններ, աշխատավորական կոլեկտիվներ։ 1986 թվականի արդյունքները վկայում են, որ տնտեսական և սոցիալական ոլորտի զարգացման առանձին ուղղություններում ապահովվել է ռեալ արագացում։ Արդյունաբերության աշխատողները սահմանված պլանից ավելի թողարկել են 142,8 միլիոն ռուբլու արտադրանք, որը 103,5 միլիոնով գերազանցում է սոցիալիստական պարտավորությունները։ Գրեթե երկու անգամ գերակատարվել է աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը։ Ձեռք են բերվել մի շարք կարևոր արտադրատեսակների արտադրության բարձր տեմպեր։ Օրինակ, հաշվիչ տեխնիկայի միջոցների թողարկումը ավելացել է 23 տոկոսով, լվացքի մեքենաներինը՝ 1,4 անգամ։ Հանրապետությունում կրճատվել է արտադրանքի իրացման, արտադրության ծավալի, աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանային առաջադրանքները չկատարող ձեռնարկությունների ու միավորումների թիվը։ Ամրապնդվել է նաև մատակարարումների կարգապահությունը։ Գերակատարվել են հողագործական և անասնապահական բոլոր տեսակի մթերքների արտադրության պլանները։ Պետությանը հացահատիկի վաճառքի առաջադրանքը կատարվել է 133,2 տոկոսով, մսինը՝ 122, պտուղներինը՝ 120,1 տոկոսով։ 1985 թվականի համեմատությամբ 18,5 տոկոսով ավելի կեր է կուտակվել։ Ակտիվորեն լուծվում են սոցիալական զարգացման հարցերը։ 1986 թվականին շահագործման է հանձնվել 861,9 հազար քմ բնակելի մակերես։ Դա 96,1 հազար քմ-ով ավելի է, քան 1985 թվականին։ Գերակատարվել են դպրոցների, նախադպրոցական հիմնարկությունների, հիվանդանոցների և պոլիկլինիկաների գործարկման առաջադրանքները։ Պլանից ավելի արտադրվել են 90,4 միլիոն ռուբլու ժողովրդական սպառման ապրանքներ, 8,6 տոկոսով աճել են կենցաղային ծառայությունները։

Ժամանակը, բարդ և պատասխանատու խնդիրները պահանջում են արմատապես վերակառուցել կուսակցական աշխատանքը։ Խոսքն առաջին հերթին այն մասին է, որպեսզի կուսակցական կոմիտեները վերածվեն իսկական քաղաքական ղեկավարման մարմինների։ Իսկ դրան կարելի է հասնել միայն կուսակցական քաղաքական և կազմակերպչական գործունեության ողջ համալիրը վճռականորեն դեպի մարդկանց հետ տարվող աշխատանքը վերակողմնորոշելու միջոցով։ Գործի էությունն այն է, որպեսզի յուրաքանչյուր կուսակցական կազմակերպությունում հաստատվեն ստեղծագործական մթնոլորտ, սկզբունքային պահանջկոտության և ինքնաքննադատության իրավիճակ, որպեսզի գտնվեն սոցիալ-տնտեսական, գիտատեխնիկական և գաղափարադաստիարակչական պրոբլեմների գործուն լուծումներ։

Մեր հանրապետության շատ կուսակցական կոմիտեներ ու կազմակերպությունններ ակտիվորեն վերակառուցում են ղեկավարման ոճն ու մեթոդները։ Քաղաքական գնահատականների թարմություն ու սրություն, կուսակցական-քաղաքական աշխատանքի ձևերի ու մեթոդների ողջ կոմպլեքսի կատարելագործման ու նորացման ձգտում են նկատվում կուսակցության Երևանի քաղկոմի գործունեության մեջ։ Քաղաքում մշակվել են սոցիալ-տնտեսական զարգացման կարևոր ուղղությունների մի շարք նպատակային կոմպլեքսային ծրագրեր՝ «Տրանսպորտ», «Առողջություն», «Ջրամատակարարում» և այլն։ Քաղկոմի պլենումներն անցնում են աշխույժ ու հետաքրքիր, սկզբունքայնու-

թյան, Հանրապետության մայրաքաղաքի բարդ օրգանիզմի կենսագործունեության բարելավման նկատմամբ ակտիվ նպատակաուղղվածության պայմաններում:

Որակապես կատարելագործված դաստիարակչական գործունեության հետաքրքրական, ուսանելի օրինակներ են ցույց տալիս կուսակցության Լենինականի քաղկոմն ու շրջկոմները: Այստեղ շատ բան է արվում ըստ բնակության վայրի բնակչության հետ տարվող աշխատանքը ակտիվացնելու նպատակով: Օրինակ, գործում են զանազան ակումբներ, մարզական սեկցիաներ երեխաների ու անչափահասների համար, կուլտուր-լուսավորական համալիրներ: Ըստ բնակության վայրի ինֆորմացիոն պրոպագանդիստական աշխատանքում ներգրավվել է քաղաքային սովետի դեպուտատների ավելի քան 95 տոկոսը: Ժամանակի պահանջներին համապատասխանում է ձեռնարկությունների ու հիմնարկությունների կուսկոմիտեների նպատակասլաց գործունեությունը սոցիալ-կուլտուրական նշանակության օբյեկտներում բնակչության անվճար աշխատանքի կազմակերպման բնագավառում:

Տնտեսական և սոցիալական զարգացման արագացման նկատմամբ իր քաղաքական դիրքորոշումը հստակորեն սահմանել է Կիրովականի կուսակցական կազմակերպությունը: Այդ դիրքորոշումը ձևակերպվել է գիտատեխնիկական առաջընթացի արագացման, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման, սոցիալական ոլորտի զարգացման վերաբերյալ կուսակցության քաղկոմի համապատասխան որոշումներում: Քաղկոմի, կուսակցական ակտիվի աշխատանքի ոճը ամբողջությամբ վերցրած բնութագրում են այնպիսի հատկանիշներ, ինչպիսիք են առարկայնությունը, կոնկրետությունը, կադրերի նկատմամբ բարձր պահանջկոտությունը, նպատակաուղղվածությունը դեպի վերջնական արդյունքները: Ուշադրության արժանի է կուսակցության քաղկոմի աշխատանքը սկզբնական կուսկազմակերպությունների ղեկավարման, ՍՄԿԿ կանոնադրության պահանջների, կուսակցական որոշումների կատարման համար կոմունիստների պատասխանատվության բարձրացման ասպարեզում:

Վերակառուցմանը ակտիվորեն են ձեռնամուխ եղել Արագածի կուսշրջկոմում: Շրջանում կան դրական տեղաշարժեր և՛ էկոնոմիկայում, որտեղ գերակատարվել են առաջադրանքները գործնականում գյուղատնտեսության բոլոր ցուցանիշներով, և՛ գյուղի սոցիալական վերակառուցման հարցերի լուծման մեջ, և՛, ամենագլխավորը, պրակտիկորեն բոլոր մակարդակների աշխատողների մտածողության մեջ:

Հանրապետությունում կան շատ աշխատանքային կոլեկտիվներ, որտեղ տնտեսական և սոցիալական զարգացման արագացման նկատմամբ նոր մոտեցումները իրականացվում են կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների ղեկավարությամբ մշակված կոնկրետ ծրագրերի միջոցով: Դրանց թվում են «Էլեկտրոն», «Հայէլեկտրամեքենա», «Լույս», «Ավտոգենմեքենա» արտադրամիավորումները, այլ ձեռնարկություններ: Այդ կոլեկտիվների կուսակցական կազմակերպությունների ընդունած որոշումների էությունն այն է, որ դրանք ուղղված են արտադրանքի կամ արտադրության ծավալի կտրուկ ավելացմանը, թողարկվող արտադրանքը համաշխարհային ստանդարտի մակարդակի հասցնելուն, արտադրության աճի ապահովումը գլխավորապես ռեսուրսների տնտեսման, մարդկանց աշխատանքի պայմանների և կենցաղի բարելավման հաշվին:

Գլխավոր խնդիրը, որ դրել է ՍՄԿԿ XXVII համագումարը կուսակցության, ողջ հասարակության առջև, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումն է: Ապահովել արագացումը՝ նշանակում է ապահովել այսօր և ապագայում մեր հասարակության վստահ առաջընթաց շարժումը, նրա առաջավոր դիրքերը սոցիալական առաջադիմության ճանապարհին:

Այսօր, վերակառուցման սկզբնական փուլում, չափազանց կարևոր է, որպեսզի յուրաքանչյուր կուսակցական կոմիտե կոնկրետ կերպով սահմանի ու ձևակերպի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման իր խնդիրները ամբողջությամբ վերցրած և նրա գլխավոր ուղղություններում: Գործնականում դա պետք է արտահայտվի ողջ հնգամյակի համար արտադրական կոլեկտիվ-



ների առավել լարված պլանների մշակման, աշխատանքի արտադրողականության, արտադրանքի որակի արմատական բարձրացման, ռեսուրսախնայողության, սոցիալական ոլորտի զարգացման ամբողջական կոմպլեքսային ծրագրերի հաստատման մեջ: Վերջնական նպատակները պետք է որոշել՝ ելնելով ՍՄԿԿ XXVII համագումարի ստրատեգիական դրույթներից: Այս մասին անհրաժեշտ է նշել այն պատճառով, որ պրակտիկայում նման մոտեցումը դրսևորվում է ամենևին էլ ոչ բոլոր տեղերում: Այսպես, Հանրապետության մայրաքաղաքի Լենինյան շրջանի շատ ձեռնարկություններում մշակվել և իրականացվում են գիտատեխնիկական զարգացման արագացման հնգամյա կոմպլեքսային ծրագրեր: Սակայն այդ ծրագրերի մեծ մասը չի ապահովում աշխատանքի արտադրողականության, արտադրանքի որակի արմատական բարձրացման, արտադրության ծավալը ռեսուրսների խնայողության և ռացիոնալ օգտագործման հաշվին 70—80 տոկոսով ավելացնելու՝ գլխավոր խնդիրների կատարումը: Վարդենիսի շրջանում վերջին ժամանակամիջոցում ձեռք են բերվել ոչ վատ ցուցանիշներ գյուղատնտեսական արտադրության զարգացման գործում: Դրա հետ միասին անասնապահական մթերքների արտադրության մինչև 1990 թվականը նախատեսված միջին տարեկան տեմպերը ցածր են այսօրվա մակարդակից:

Իր բնույթով ու մասշտաբներով հեղափոխական վերակառուցմանը նպատակաուղղված համակողմանի կշռադատված, հստակ ու սկզբունքային քաղաքական դիրքորոշման բացակայությունը, ցավոք, բնորոշ է հանրապետության շատ կուսակցական կոմիտեների: Նման պայմաններում, իհարկե, դեռ վաղ է խոսել իրական վերակառուցման, նոր խնդիրների նկատմամբ մոտեցման հարցում վճռական բեկման մասին: Հետհամագումարյան աշխատանքի փորձը համոզիչ կերպով ցույց է տալիս, որ վերակառուցման ամենակարևոր գործոնը պրոբլեմների ընդհանուր շղթայում տվյալ սոցիալ-քաղաքական իրադրությանը համապատասխանող գլխավոր ուղղությունների ճիշտ ընտրությունն է: Անշուշտ, արտադրական ցուցանիշները, վերջին հաշվով, որոշում են արագացման ստրատեգիայի իրականացմանն ուղղված գործողությունների ու միջոցառումների ողջ կոմպլեքսի արդյունավետությունը: Եվ այստեղ առաջին պլան է մղվում անխախտ պայմանը՝ կուսակցական-քաղաքական աշխատանքում վճռական շրջադարձի անհրաժեշտությունը դեպի մարդիկ, կոնկրետ յուրաքանչյուր մարդը: Ինչու՞մ պետք է արտահայտվի շրջադարձը: Առաջին հերթին՝ սոցիալական միջավայրի նկատմամբ կենտրոնացված և առարկայական ուշադրությամբ: Արտադրության մարդու մասին հոգատարության միջոցով՝ պատասխանատվության ուժեղացման և տնտեսավարման արդյունավետության բարձրացման: Ակտիվացման մեթոդիկան, իհարկե, հարկավոր է ընտրել՝ ելնելով իրական պայմաններից: Բայց ընդհանուրը պետք է լինի բոլոր մակարդակներում՝ հանրապետությունից մինչև առանձին կոլեկտիվը: Խոսքը կուսակցական որոշումների մասին է, որոնք սահմանեին, օրինակ, բնակարանային, պարենային, տրանսպորտային պրոբլեմների լուծման սանիտարակենցաղային պայմանների ստեղծման, սպասարկման, կուլտուրական և այլ բնագավառների զարգացման ուղիներն ու եղանակները:

ՍՄԿԿ Կենտկոմը մեզ կոչում է համարձակ, ինքնուրույն լուծումների: Հասարակ բան չէ՝ լինել համարձակ, ընդունել և իրականացնել ինքնուրույն ընդունած որոշումներ: Հանրապետությունում շատ կան նախաձեռնող, ստեղծագործաբար մտածող ու աշխատող ղեկավարներ: Կարելի է որպես օրինակ վկայակոչել արտադրական միավորումների դիրեկտորներ Է. Պետրոսյանին, Բ. Թումասյանին, Ն. Մուրադյանին, ուրիշ ղեկավարների: Այժմ հատկապես հարկավոր է գնահատել և պաշտպանել նորարարական ոգով համակված մարդկանց, որոնող և համարձակ գործել կարողացող մարդկանց: Հաճախ բազմաքանակ հրահանգները, կանոնադրությունները, պայմանները և հնացած սկզբունքները խանգարում են տնտեսավարներին, նրանց դնում ծանր կացության մեջ: Եվ ահա այդպիսի դեպքերում, այդպիսի իրադրության մեջ չափազանց կարևոր է, թե ինչպիսի դիրք է բռնել կուսակցական կազմակերպությունը: Կարողանալ ժամանակին նկատել օգտակար ձեռնարկումները,

պաշտպանել նաակտիվորեն աջակցել, իսկ անհրաժեշտության դեպքում և պաշտպանել ինքնուխաձեռնությունը, սոցիալական վերջնական արդյունքին ուղղված ինքնուրույն որոշումը՝ անա թե այսօր ինչը պետք է ներհատուկ լինի յուրաքանչյուր քաղաքական կուսակցական կոմիտեի: Դա, կարելի է համարձակորեն ասել, քաղաքական ղեկավարման հիմնական գործոններից է: Դիրքորոշում, մեկ անգամ ևս դիրքորոշում, հատակ կուսակցական վերաբերմունք կոլեկտիվի, շրջանի, քաղաքի կենսագործունեության հիմնական հարցերին, ընդ որում գործնական վերաբերմունք, որը չի սահմանափակվում զրույցներով, զեկուցումներով և ցուցադրական ագիտացիայով, այլև դրսևորվում է համապատասխան քաղաքական որոշումներում և արդյունավետ կազմակերպչական աշխատանքում:

ՍՄԿԿ XXVII համագումարից հետո կատարված աշխատանքի մեկ տարին ցույց տվեց, որ վերակառուցման պրոցեսը դեռևս ոչ լրիվ չափով է ընդգրկել մեր կյանքի բոլոր կողմերը: Տնտեսական և սոցիալական ոլորտի զարգացման արագացման նկատմամբ նոր մոտեցումները ոչ ամենուրեք են իրենց համար ճանապարհ հարթում այնպես, ինչպես պահանջում է իրադրությունը: Տնտեսական և կուլտուրական շինարարության առանձին ուղղություններում մենք չենք հասել նկատելի արագացման: Դա վերաբերում է թողարկվող արտադրանքի որակի, ինքնարժեքի, հասարակական սեկտորում գյուղատնտեսական արտադրության ցուցանիշներին: Արմատական բեկում տեղի չի ունեցել նաև բացասական երևույթների դեմ մղվող պայքարում:

Դեռևս շատ կուսակցական կոմիտեներ, ղեկավար կադրեր չեն հասկացել, չեն յուրացրել և կոնկրետորեն որոշել իրենց դիրքորոշումը, վերաբերմունքը արագացման, վերակառուցման նկատմամբ: Առանձին ղեկավարներ նախկինի պես ոչ քննադատաբար են գնահատում իրենց գործունեությունը, իրենց կազմակերպության, աշխատանքային կոլեկտիվի գործունեության արդյունքները: Իրենց հասցեին արված դիտողությունը հաճախ հիվանդագին են ընդունում:

Ղեկավար կադրերի հիմնական կազմը մեզ մոտ առաջադրվել և ձևավորվել է զարգացման էքստենսիվ գործոնների ազդեցության պայմաններում, երբ էկոնոմիկայի զարգացման համեմատաբար բարձր տեմպերն ապահովվում էին առանց անհրաժեշտ կազմակերպչական և քաղաքական աշխատանքի: Դա անհամեմատ դյուրին ուղի էր, բայց բնավ չէր նպաստում սուբյեկտիվ գործոնների մոբիլիզացմանը, կուսակցական կազմակերպություններում աշխատանքի համապատասխան մեթոդների մշակմանը: Եվ այդպիսի ընդհանուր մոտեցումը դեռևս իրեն զգացնել է տալիս: 1986 թ. հանրապետության 67 ձեռնարկություններ ու միավորումներ չկատարեցին աշխատանքի արտադրողականության աճի, իսկ 107 աշխատանքային կոլեկտիվներ՝ արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանները, տալով 67,8 մլն ռուբլու գերածախս:

Կամ վերցնենք գործերի վիճակը կապիտալ շինարարությունում: Կուսակցությունը, ինչպես հայտնի է, դատապարտում է կապիտալ ներդրումների բաշխման մնացորդային սկզբունքը: Սակայն տեղերում պրակտիկ աշխատանքի վերլուծությունը ցույց է տալիս, որ կուսակցական կոմիտեները դեռևս շեշտակիորեն չեն շրջվել դեպի այդ հարցերը: Շատ ձեռնարկություններում, կոլեկտիվ ու պետական տնտեսություններում մինչև օրս չկան բնակարանային պրոբլեմի լուծման, հասարակական սննդի, կենցաղային ծառայության բարելավման, արտադրությունում անհրաժեշտ սանիտարակենցաղային պայմանների ստեղծման հստակ ծրագրեր: Այդ բացթողումը հատկապես նկատելի է սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության մեջ: Ցավոք, 1986 թ. հանրապետությունում բնակելի տների, մանկական նախադպրոցական հիմնարկությունների, հիվանդանոցների շինարարության մեջ չեն իրացվել 6,5 մլն ռուբլու կապիտալ ներդրումներ:

Եթե խոսենք կուսակցական աշխատանքում գլխավոր ուղղության ընտրության մասին, ապա գիտատեխնիկական առաջընթացը և սոցիալական ոլորտը այսօր այն օղակներն են, որոնց կառչելով հնարավոր կլինի «դուրս քաշել» արագացման ողջ պրոբլեմը:

Սոցիալ-տնտեսական զարգացման արագացման խնդիրների իրականացման գործում առաջատար դերը պատկանում է կուսակցության քաղկոմներին, շրջկոմներին, սկզբնական կազմակերպություններին: Հենց այստեղ է այժմ,



ինչպես նշեց ընկեր Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում իր զեկուցման մեջ, ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների իրականացման համար պայքարի գլխավոր ասպարեզը: Այսօր սկզբնական կուսակցական կազմակերպությունների հետ տարվող աշխատանքի ժամանակակից ձևերի և մեթոդների քննադատական վերլուծությունը, գնահատականը և ընտրությունը ձեռք են բերում հատուկ նշանակություն: Անցած տարի սկզբնական կուսակցական կազմակերպություններում տեղի ունեցած հաշվետու-ընտրական ժողովները ցույց տվեցին, որ ՍՄԿԿ XXVII համագումարից հետո նշանակալիորեն աճել է կոմունիստների ակտիվությունը, բարձրացել պատասխանատվությունը: Հարկավոր է և՛ ուժեղացնել պահանջկոտությունը սկզբնական կուսկազմակերպությունների նկատմամբ, և՛ միաժամանակ ուշադիր, զգայուն վերաբերվել ու աջակցել վերակառուցման պայմաններում նրանց նոր նախաձեռնություններին, աշխատանքի փորձի ծիլերին: Ցավոք, ոչ ամենուրեք է զգացվում շեշտադրման տեղափոխումը սկզբնական կուսակցական կազմակերպությունների ղեկավարման ուժեղացման կողմը: Այսպես, կուսակցության առանձին քաղկոմներում և շրջկոմներում սկզբնական կազմակերպությունների աշխատանքի վերաբերյալ հաշվետվությունները դեռևս չեն գերազանցում քննարկված բոլոր հարցերի 8—12 տոկոսը:

Վերակառուցման ուղղությամբ ողջ կազմակերպչական գործունեության միջուկը կադրերի ընտրությունն է, տեղաբաշխումը և դաստիարակությունը: Միայն կադրերի հետ տարվող խորապես մտածված, կշռադատված և սկզբունքային աշխատանքն է ունակ ապահովելու մեր ընդհանուր գործի հաջողությունը ինչպես էկոնոմիկայում, այնպես էլ սոցիալական զարգացման ասպարեզում: Հանրապետությունում կառավարման, էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի բոլոր ճյուղերում կան բարձրորակ, ստեղծագործաբար մտածող, նախաձեռնող կադրեր: Կուսակցական և սովետական մարմինների ղեկավարների մոտ 70 տոկոսը ժողովրդական տնտեսության մասնագետ է: Ղեկավար աշխատանքում համարձակորեն առաջ են քաշվում երիտասարդները, կանայք: Հանրապետական կենտրոնական մարմիններում ու տեղերում մեծ և բազմակողմանի աշխատանք է ծավալվում իրական, գործուն ռեզերվի ստեղծման նպատակով: Պրակտիկայում առավել ամուր են մուտք գործում աշխատողների գործնական և բարոյական-քաղաքական որակների ստուգման նոր ձևերը, ինչպիսիք են ղեկավարների, մասնագետների ատեստացիան, ռեզերվի ձևավորման և օգտագործման հրապարակայնությունը, բնութագրերի քննարկումը կոմունիստների ժողովներում և կուսակցական կոմիտեներում: Պահանջկոտության ուժեղացման հետ միասին հանրապետությունում տեղի է ունենում կադրերի նորացման պրոցես: Ղեկավար պաշտոններում ավելացել է 40 տարեկանից ցածր անձանց թիվը, ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում ավելի շատ մասնագետներ են ներգրավվել: Կադրերի հետ տարվող աշխատանքում գլխավոր ուշադրությունը նվիրվում է նրանց մոտ վերակառուցման մեջ իրենց տեղը որոշելու հմտության մշակմանը: Դա առանձնապես կարևոր է, քանի որ վերջին ժամանակներս կուսակցական կոմիտեների ապարատը համալրվել է շատ նոր աշխատողներով, որոնք չունեն կուսակցական ու քաղաքական կրթություն, իսկ դա բացասաբար է անդրադառնում նրանց աշխատանքի ոճի վրա՝ հաճախ թույլ չտալով հաշվետվությունների և ինֆորմացիաների չոր թվերից այն կողմ տեսնելու կոնկրետ մարդուն:

ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում համակողմանիորեն հիմնավորվեց կադրային քաղաքականության մեջ արմատացած ստերեոտիպերի վճռական վերացման, ղեկավարների, ժողովրդական տնտեսության մասնագետների, բոլոր մակարդակների կադրերի պատրաստման, առաջքաշման և ամրապնդման՝ ժամանակի պահանջներին համապատասխանող շարժուն համակարգի ստեղծման կենսական խնդիրը: Համագումարից հետո անցած ժամանակաշրջանում ամենադժվարինը դարձավ վերակառուցման կատեգորիաների խոր ըմբռնման և պրակտիկ իրականացման նպատակով ղեկավար կադրերի հոգեբանական վերակառուցման, աշխատանքի ոճի որակական փոփոխման, մտածողության և գործունեության ողջ կոմպլեքսի բարեշրջման

նեության հետևողական արմատավորումը դարձել են վերակառուցման խնդիրների հաջող լուծման, աշխատանքի նոր ոճի հաստատման ուղղակի պայմանը, ոճ, որը մենք բոլորս պարտավոր ենք սովորել: Ավելի դեմոկրատական և, որպես դրա արդյունք, ավելի սուր և օգտավետ են դարձել մամուլի ելույթները: Ուղղակի դեմոկրատիայի կիրառման վերաբերյալ ՍՄԿԿ XXVII համագումարի սկզբունքային դրույթի իրականացմանն է կոչված պետական ձեռնարկության մասին օրենքը: Աշխատանք է կատարվում ներկուսակցական կյանքի, սովետական ընտրական համակարգի դեմոկրատական սկզբունքների կատարելագործման և ամրապնդման նպատակով: Դեմոկրատիայի ու կարգապահության, իրավունքների և պարտականությունների, ինքնուրույնության և պատասխանատվության օրգանական զուգակցումը պետք է դառնա հասարակական-քաղաքական կյանքի նորմ բոլոր մակարդակներում: Եվ դրան պարտավոր են առաջին հերթին հասնել կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները, մեր բոլոր կադրերը՝ ցույց տալով քաղաքական հասունության իսկական օրինակներ:

Վերակառուցումն սկսվել է, վերակառուցումը ծավալվում է, բայց ոչ ամեն տեղ հստակ, ամեն տեղ ակտիվ: Վերջերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմը քննարկեց վերակառուցման ընթացքը կուսակցության Հոկտեմբերյանի շրջկոմում: Նշելով մի քանի դրական տեղաշարժերը՝ Կենտկոմի բյուրոն շրջանի ղեկավարության ուշադրությունը հրավիրեց հնացած «հիվանդության» այնպիսի դրսևորումների վրա, ինչպիսիք են ուժերը խորհրդակցությունների հրավիրման վրա ծախսելը, մեծ թվով որոշումների ընդունումը և այլն: Շատ աշխատողներ վերակառուցումը դեռևս ընկալում են որպես վերադաս մարմինների գործ, իսկ կուսշրջկոմը չի ձգտում այն բանին, որպեսզի սկզբնական կուսկազմակերպությունները հասկանան գործերի վիճակի համար պատասխանատվության ողջ ծանրությունը, ունենան սկզբունքային կուսակցական դիրքորոշում: Չի մշակվել շրջանի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման կազմակերպչական և կուսակցական ապահովման կոնկրետ ծրագիր: Պատահական չէ, որ տնտեսական ցուցանիշների աճը չի կարելի համարել ինտենսիվ:

Հարկ է ասել, որ այդպիսի թերացումներն ու թերությունները դեռևս բնորոշ են մեր շատ կուսակցական կոմիտեների, քաղաքային ու շրջանային սովետների գործկոմների: Արտադրական և հասարակական կյանքի փաստերը խոսում են աշխատավորների աճող ակտիվության, որակապես նոր արդյունքների ձեռքբերմանը արդյունավետորեն մասնակցելու նրանց ձգտման մասին: Իսկ ահա կուսակցական կոմիտեները, մյուս մարմինները ոչ միշտ են պատրաստ լինում դրան: Դեռևս խանգարում են իներցիան, ղեկավարման սովորական դարձած մեթոդները: Ի միջի այլոց, վերակառուցման մեջ չկան պատրաստի դեղատոմսեր: Գլխավորը վճռական շրջադարձն է դեպի մարդը, աշխատավորը, քաղաքացին:

Վերակառուցման բազմաբնույթ աշխատանքի արդյունավետությունը ուղղակի կապի մեջ է գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի արմատական բարելավման հետ: Վերջին տարիներին, հատկապես Հայաստանի կուսակցական կազմակերպության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշումից հետո՝ 1984—1986 թվականներին, մեզ մոտ ակտիվացավ գաղափարախոսական գործունեությունը կոնկրետ խնդիրների հետ սերտորեն շաղկապելու, ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումի և XXVII համագումարի պահանջների լույսի ներքո նրա վերակառուցման նպատակով տարվող աշխատանքը: Միջոցներ են ձեռնարկվում որոշումներում նշված թերությունները վերացնելու համար: Կան դրական արդյունքներ. կադրերով ամրապնդվել են շատ գաղափարախոսական տեղամասեր և օղակներ, մարդկանց հետ տարվող աշխատանքը ձեռք է բերում առավել կոնկրետ ու բովանդակալից բնույթ, դրան ակտիվորեն են սկսել մասնակցել ղեկավար կադրերը: Այժմ ավելի, քան երբևէ, կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները, գաղափարախոսական հիմնարկությունները ձգտում են դրսևորում՝ հասնելու որակական բեկման քաղաքական-դաստիարակչական աշխատանքի



բոլոր ուղղություններում՝ ցուցադրական ագիտացիայի կատարելագործումից մինչև մամուլի ելույթները, վերակառուցման էության խոր ըմբռնման, իսկական գիտական աշխարհայացքի ձևավորման ու ամրապնդման գործուն միջոցառումների իրականացումը, տեսական խնդիրների, հասարակության սոցիալ-կուլտուրական և տնտեսական զարգացման պրակտիկ հարցերի լուծման մոտեցումների հոգեբանական վերաիմաստավորումը:

Դաստիարակչական աշխատանքի իրական վիճակը միաժամանակ վկայում է, որ այդ ոլորտի վերակառուցումն առայժմ ընթանում է ոչ բավարար ակտիվությամբ ու նպատակասլացությամբ: Դեռևս կենսունակ է ֆորմալիզմը: Կյանքից կտրվածությունը հաճախ քողարկվում է ընդհանուր դատողություններով, իսկ գաղափարախոսական ներգործությունը՝ անցկացված միջոցառումների մասին ձևական նշումներով: Մեզ մոտ դեռևս շատ են բացասական երևույթները, որոնց դեմ պայքարը դանդաղ է ծավալվում: Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1986 թ. հոկտեմբերյան պլենումում կուսակցական ակտիվի, գաղափարախոսական աշխատողների ուշադրությունը հրավիրվեց այն բանի վրա, որ խոսքը ոչ թե գաղափարադաստիարակչական աշխատանքի մակերեսային «բարելավման» մասին է, այլ արմատական ու խոր վերակառուցման, գաղափարախոսական գործունեության նոր ոճի հաստատման, նրա նպատակաուղղվածության, թերությունների հաղթահարման, դատարկաբանությունից և խրատատվությունից հրաժարվելու մասին, այն մասին, որ գաղափարական գործունեությունը մոտեցվի կյանքին, մարդուն, որ այն անպայմանորեն ծառայի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման պրոբլեմների լուծմանը, աշխատավորների համախմբման և մոբիլիզացման խնդրին: Հատկապես կարևոր է աշխատանքի ուժեղացումը այնպիսի առանցքային ուղղություններում, ինչպիսին աշխատավորների ինտերնացիոնալիստական և հայրենասիրական դաստիարակությունն է՝ հաշվի առնելով հասարակական և տնտեսական ողջ կյանքի ինտերնացիոնալացման ակտիվ պրոցեսը: Մեր հանրապետությունում մեկ համերաշխ ընտանիքում ապրում և աշխատում են հայերը, ռուսները, ադրբեջանցիները, քրդերը, մյուս ազգությունների ներկայացուցիչները: Հանրապետության աշխատավորների ինտերնացիոնալիզմը, մեր մեծ բազմազգ Հայրենիքի նկատմամբ սիրո զգացումը, սոցիալիզմի նվաճումները բազմապատկելու ձգտումը դրսևորվում են կենսագործունեության բոլոր ոլորտներում՝ արտադրությունում և կենցաղում, առօրյա կյանքում ու տոնահանդեսներում: Կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների սրբազան պարտքն է՝ հետագայում ևս անդուլ աշխատել այն ուղղությամբ, որ հայրենասիրությունը օրգանապես ձուլվի ինտերնացիոնալիզմին, որ ինտերնացիոնալիստական համոզմունքները առավել ամրակայվեն մարդկանց, հատկապես երիտասարդության գիտակցության և հոգեբանության մեջ:

Վերակառուցման, հրապարակայնության և դեմոկրատիզմի լայն զարգացման պայմաններում գաղափարախոսական աշխատանքը դառնում է գլխավոր լծակներից մեկը, որի օգնությամբ կուսակցական կազմակերպությունները կարող են և պարտավոր են հասնել որակական խոր վերափոխումների մարդկանց մտածողության մեջ, կենսադիրքում, վերջին հաշվով, ապահովել արագացման ստրատեգիայի իրականացումը:

Եթե ամբողջության մեջ արժեքավորելու լինենք հանրապետությունում կատարվող աշխատանքը, ապա կարելի է ասել, որ վերակառուցումը այնպիսի մի միջոցառում չէ, որը կարելի լինի տեղնուտեղը գնահատել և համակողմանիորեն քննարկել: Վերակառուցումը իրողություն է, որը մենք իրագործում ենք ամենօրյա աշխատանքով: Այն ծավալվում է ամբողջ ճակատով, ընթանում ոչ միայն լայնությամբ, այլև թափանցում է մեր կյանքի խոր շերտերը: Սակայն խոսել նրա ընթացքից, ընդգրկումից և արդյունքներից մեր անբավարարվածության մասին՝ կարելի է ու հարկավոր: Որովհետև ենթադրվում է անել շատ ավելին, քան արված է: Որովհետև կյանքը մեր առջև դրել է այնպիսի բարդ հարցեր, որոնցից շատերին մենք առայժմ չենք կարողանում բա-

*վարար պատասխան տալ։ Հեռհամագումարյան ժամանակաշրջանում համբապետության կուսակցական կազմակերպությունների գլխավոր նվաճումն այն է, որ պրակտիկորեն ղեկավարման և կառավարման բոլոր մակարդակներում ուժեղանում է ձեռքբերումներով չհանգստանալու տրամադրությունը, մեծանում է սոցիալ-քաղաքական ռեալ իրավիճակը անկանխակալ գնահատելու, հասունացած հարցերն ու պրոբլեմները սրությամբ դնելու և լուծելու կարողությունը։*

*Սովետական հասարակության տնտեսական, սոցիալական և հոգևոր ոլորտներում սկսված վերափոխումները անշեղորեն ծավալվում և խորանում են։ Դրանց նպաստում են մեր երկրի կոմունիստների, բոլոր աշխատավորների կողմից ՍՄԿԿ լենինյան ներքին և արտաքին քաղաքականության ջերմ պաշտպանությունը, տասներկուերորդ հնգամյակի պլանները հաջողությամբ կատարելու, մեծ Հոկտեմբերի 70-ամյակը արժանավայել դիմավորելու համար լայնորեն ծավալված հայրենասիրական շարժումը։ Կուսակցական համագումարի առաջադրած խնդիրների լուծումը յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր աշխատավորի նախաձեռնողական, ակտիվ մասնակցությունը ոչ թե դեկլարատիվ, այլ պրակտիկ, կենսական անհրաժեշտություն է։ Եվ հարկավոր է գործել այնպես, որ ամենօրյա աշխատանքով նպաստենք նորի, առաջավորի հաստատմանը, անզիջում պայքար մղենք քարացածության և հնամոլության, աշխատանքի իր դարն ապրած պատկերացումների ու մեթոդների դեմ։ Այդ պայքարում մեզ համար նշանաբան են լենինյան խոսքերը. «Մենք պետք է հիշենք, որ այսօրվա տրամադրությունից հարկավոր է օգտվել՝ դրանով մեր աշխատանքը տևականորեն համակելու համար...» (ԵԼԺ, հ. 42, էջ 6)։*

---



# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄԵԽԱՆԻԶՄԻ ՀԱՄԱԿԱՐՈՒՑՄԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

**Ա. ՄԽԻԹԱՐՅԱՆ**
**Տնտեսագիտության դոկտոր**

ՄԵՐ ԵՐԿՐԻ՝ ՎԻԹԽԱՐԻ ՉԱՓԵՐԻ ՀԱՍԱԾ գիտատեխնիկական և արտադրական պոտենցիալը վկայում է սոցիալիստական հասարակարգի արտադրողական ուժերի անընդհատ և օրինաչափ աճի մասին։ Սակայն վերջիններս հանդիսանում են հասարակական արտադրության զարգացման անհրաժեշտ, բայց ոչ բավարար պայմանը։ Արտադրողական ուժերի որոշակի մակարդակը պահանջում է համապատասխան արտադրական հարաբերություններ։ Եվ միայն արտադրողական ուժերի բնույթին ու մակարդակին արտադրական հարաբերությունների համապատասխանության՝ մարքսյան օրենքի պահանջների պահպանմամբ կարելի է հասնել հասարակական աշխատանքի իրական բարձր արդյունքների, առանց որոնց հնարավոր չէ ապահովել սոցիալիստական հասարակության անդամների անընդհատ աճող նյութական ու հոգևոր պահանջմունքների բավարարումը։

Դրա հետ մեկտեղ, վերջին ժամանակներում տնտեսավարման և հատկապես կառավարման բնագավառում մեր գործողությունները ամենևին էլ լրիվ չէին համապատասխանում այդ օրենքի պահանջներին։ Դա պայմանավորված էր նրանով, որ մի շարք տարիների ընթացքում տեղ էին գտել սոցիալ-տնտեսական զարգացման օբյեկտիվ իրողությունների թերագնահատում, նրա մակարդակի և ուղղվածության անհամապատասխանություն՝ տնտեսավարման հաստատված ձևերի ու կառավարման մեթոդների հետ, որոնք, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, հիմնականում էկոնոմիկայի էքստենսիվ զարգացման արդյունք են։ Տնտեսավարման ու կառավարման մեթոդները աստիճանաբար հնացել են, կորցրել իրենց խթանիչ դերը, իսկ ինչ-որ տեղ էլ՝ վերածվել արգելակի։ Արտադրական հարաբերությունների հետագա կատարելագործման և արտադրողական ուժերի զարգացման համար նոր ասպարեզ բացելու նպատակով համագումարը խնդիր դրեց փոխել սոցիալիստական արտադրահարաբերությունների էական կողմի՝ տնտեսական մեխանիզմի ուղղվածությունը, նրան տալով հակածախսողական բնույթ, գիտատեխնիկական առաջադիմության հիման վրա բարձրացնել նրա արդյունավետությունը։ Կուսակցության այդ պահանջը առավել ևս վերաբերում է մեր հանրապետությանը, որի մասին առանձնահատուկ նշեց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը ՍՄԿԿ XXVII համագումարի արդյունքներին և նրա որոշումների կատարման ուղղությամբ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրներին նվիրված՝ ՀԿԿ Կենտկոմի պլենումում։ Այստեղ մասնավորապես ասված է. «Հանրապետության էկոնոմիկան առայժմ դանդաղ է փոխադրվում զարգացման ինտենսիվ մեթոդների։ Ժողովրդական տնտեսության մեջ պահանջվող ակտիվությամբ չեն ներդրվում գիտատեխնիկական առաջադիմության նվաճումները։ Ամենուրեք չէ, որ լիովին են օգտագործվում առկա արտադրատեխնիկական պոտենցիալը և բոլոր տեսակի ռեսուրսները, միշտ չէ, որ հետևողական աշխատանք է կատարվում աշխատանքի արտադրողականությունն ու արտադրանքի որակը բարձրացնելու ուղղությամբ։ Մեզանում դեռևս շատ են ոչ փութաջան տնտեսավարման, իսկ երբեմն էլ ուղղակի անտնտեսվարության փաստերը»։

Այսօր ժողովրդական տնտեսության առջև խնդիր է ծառացել նոր հնարավորություններ բացահայտել արտադրաեղանակի երկու անբաժանելի կողմերի՝ արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների միջև ներքին պատճառական կապի և փոխկախվածության ապահովման պահանջների և գիտակցական օգտագործման հաշվառման համար: Ընդ որում, պրոբլեմի լուծման անհրաժեշտությունն անհետաձգելի է, քանի որ վերը նշված համապատասխանության ինքնաբեր արտադրության պատրանքները բացարձակապես անհիմն են:

Էկոնոմիկայում որակական տեղաշարժերի իրականացումը, ինտենսիվ աճի ուղու վրա նրա փոխադրման ապահովումը, մեր ամբողջ արտադրությունը հասարակական պահանջմունքներին ենթարկելը հաստատակամորեն թելադրում են այդ պահանջներին համապատասխանող տնտեսական մեխանիզմի մշակման և գործադրման անհրաժեշտությունը: Այդպիսի մեխանիզմի գործունեությունը մեծապես պայմանավորված է նրա կառուցվածքում առհասարակ սոցիալիզմին և մասնավորապես նրա արդի փուլին բնորոշ հիմնարար հատկանիշների և նախադրյալների հաշվառման աստիճանով, որն ակտիվորեն է նպաստում սոցիալիստական հասարակարգի սոցիալ-տնտեսական զարգացմանը: Նկատի է առնվում, որ տնտեսական մեխանիզմը կոչված է առավելագույնս նպաստելու գլոբալ և լոկալ սոցիալ-տնտեսական շահերի զուգակցմանը, գիտատեխնիկական առաջադիմության արագացմանը, արտադրության ինտենսիվացմանն ու արդյունավետության բարձրացմանը, հասարակական բարիքների նկատմամբ խնայողական վերաբերմունքի մշակմանը, վատնողականության կանխմանը, կազմակերպական-տնտեսական և սոցիալական ռեզերվների բացահայտման և օգտագործման հարցում շահագրգռվածությանը:

Այդպիսի մոտեցումը հնարավոր է ծախսերի ծավալային գնահատման՝ սպառողականորեն արմատավորված սկզբունքից հրաժարվելու դեպքում, այսինքն՝ մեխանիզմի վերակողմնորոշումը դեպի արտադրական գործունեության որակական բնութագրերը: Մյուս պայմանը ամեն մի կոլեկտիվի, յուրաքանչյուր աշխատավորի շահագրգռվածության և նյութական պատասխանատվության բարձրացումն է՝ համաժողովրդական հարստության ավելացման գործում նրանց իրական ներդրման համար: Եվ, վերջապես, դա արտադրական կոլեկտիվների խթանման ու խրախուսման համահավասարեցման միտումից վերջնականապես հրաժարվելն է:

Տնտեսական մեխանիզմի կառուցվածքում պետք է իր արտացոլումը գտնի ստրատեգիական խնդիրների լուծման գործում կենտրոնացված հիմունքների հետագա զարգացման և դրանք ձեռնարկությունների իրավունքների, նրանց ինքնուրույնության իրական ընդլայնման հետ զուգակցելու վերաբերյալ կուսակցության պահանջը: Մեխանիզմը պետք է նպատակաուղղված լինի պլանային և պայմանագրային կարգապահության անձեռնմխելիությանը: Եվ, վերջապես, այն պետք է լինի պարզ ու մատչելի՝ ենթակա սիստեմատիկ ու օպերատիվ վերահսկման:

Այս պահանջները հնարավոր է իրականացնել միայն գործող մեխանիզմի արմատական վերակառուցման պայմաններում:

Իսկ ինչպիսի՞ն է առաջարկվող մեխանիզմի մոդելը: Իրականացված լայնամասշտաբ տնտեսափորձի և տնտեսավարման նոր մեթոդների կիրառման ընթացքում կառավարման սկզբնական օղակի հիմնական գնահատող ցուցանիշների քանակը կրճատվեց մինչև հինգի: Դա պատճառաբանվում էր ձեռնարկությունների «ձեռքերը ազատ արձակելու», նրանց նախաձեռնությունը և ձեռներեցությունը խթանելու անհրաժեշտությամբ: Չնայած իրականացված տնտեսափորձի դրական արդյունքներին, մեր կարծիքով, անհրաժեշտություն է զգացվում կրկին վերանայել գնահատող ցուցանիշների և՛ բնույթը, և՛ քանակը: Մենք համոզված ենք, որ ցուցանիշների կազմի առավել ռացիոնալ ընտրության դեպքում տնտեսափորձի արդյունքները, անկասկած, ավելի մեծ կլինեին: Բնական է, որ գնահատող ցուցանիշների ընտրությունը պետք է հիմնվի այն պահանջի վրա, թե սոցիալիստական շինարարության տվյալ փուլում արտադրության սկզբնական օղակի գործունեության որ ասպեկտների կարգավորումն է հասարակությունը համարում առաջնային:

ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումում, ապա և կուսակցության XXVII համագումարում առանձնակի սրությամբ ընդգծվեց հասարակական հարաբերությունների, նախ և առաջ տնտեսական հարաբերությունների կատարելագործման անհրաժեշտությունը: Վերջիններս, ըստ Ֆ. Էնգելսի, դրսևորվում են որպես շահեր, որոնք արտադրության կատարելագործման իրական շարժիչն են հանդիսանում՝ անկախ սոցիալ-տնտեսական ֆորմացիայից: Արտադրամիջոցների համաժողովրդական սեփականությունը և սոցիալիստական արտադրական հարաբերությունները պայմանավորում են շահերի նոր տնտեսական հիմքերը և դրանք համապատասխանեցնում սոցիալիստական արտադրության նպատակներին: Այստեղ, անշուշտ, առաջնայինը համաժողովրդական շահերի և առանձին անհատների շահերի միասնության ապահովումն է՝ առաջինների գերադաս դերի պայմաններում: Նրանց միջև կապող օղակը կոլեկտիվ շահերն են, որոնք ունեն առանձնահատուկ բնույթ և հատուկ են միայն սոցիալիստական կարգերին:



Վ. Ի. Լենինը մշակեց սոցիալիստական արտադրության պայմաններում նյութական շահերի տնտեսական կատեգորիայի գործնական օգտագործման հիմունքները, ապացուցեց անձնական նյութական շահագրգռվածության սկզբունքների կիրառման օբյեկտիվ անհրաժեշտությունը (այն պայմաններում, երբ աշխատանքը դեռևս չի դարձել մարդկանց առաջին կենսական պահանջմունք) և հիմնավորեց տնտեսավարման մեջ դրանց իրացման դրույթները: Սոցիալիստական պետությունը, ըստ ամենայնի պաշտպանելով աշխատավորների անձնական սոցիալ-տնտեսական շահերը, պարտավոր է առաջին հերթին կառավարել համաժողովրդական շահերի ապահովումը: Սակայն դա տնտեսական անշեղ զարգացման անհրաժեշտ, բայց ոչ բավարար պայմանն է: Յուրաքանչյուր արտադրական կոլեկտիվ իր գործունեության ընթացքում նպատակ է դնում ստեղծել երկու կարգի արդյունքներ՝ հասարակության համար և իրեն համար: Սակայն ցավոք, հաճախ, գործող տնտեսական մեխանիզմի թողտվությամբ, հասարակության և առանձին կոլեկտիվների տնտեսական շահերը ոչ միայն չեն համընկնում, այլև հակադրվում են միմյանց. ստացվում է այնպես, որ այն, ինչ ձեռնտու է կոլեկտիվին՝ շահավետ չէ հասարակությանը: Ուստի տնտեսական մեխանիզմը, իր ֆունկցիաները կատարելիս, հետապնդում է երկակի նպատակ՝ ըստ ամենայնի ապահովել համաժողովրդական շահերը և ոչ միայն արտադրական կոլեկտիվին ու նրա անդամներին նպատակամղել հասարակական ու կոլեկտիվ շահերի առավելագույն զուգակցմանը, այլև ամեն կերպ խոչընդոտել նեղ գերատեսչական ու տեղայնական միտումներին և հասարակական շահերից խուսափելու «սողանցքեր որոնելու» դրսևորումներին: Այս հիմնարար սկզբունքներն էլ պետք է կանխորոշեն կառավարման սկզբնական օղակի գնահատող հիմնական ցուցանիշների կազմի ընտրությունը: Մյուս պահանջներն ու նախադրյալները ածանցյալ են: «Այստեղ մեզ չպետք է հետ կանգնեցնեն հնացած պատկերացումները, առավել ևս՝ նախապաշարմունքները: Եթե, օրինակ, անհրաժեշտ է և արդարացված ինչ-որ դիրեկտիվ ցուցանիշների փոխարեն կիրառել տնտեսական նորմատիվներ, ապա դա նշանակում է ոչ թե նահանջ պլանային ղեկավարման սկզբունքներից, այլ նրա մեթոդների ու ձևերի փոփոխում միայն» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 54):

Էկոնոմիկայի առաջընթաց շարժումն ապահովող՝ վերը նշված սկզբունքները պետք է իրենց արտացոլումը գտնեն արտադրական գործունեության հիմնական գնահատող ցուցանիշների մեջ: Այլ կերպ ասած, դրանց մեջ պետք է ընդգրկել տնտեսական մեխանիզմի կառուցվածքին առաջադրվող բոլոր կարևորագույն պահանջները:

Ըստ այդ տեսակետի, կառավարման սկզբնական օղակի գնահատող հիմնական ցուցանիշների թիվը հարկ է կրճատել մինչև երկուսի: Հասկանալի է, որ ցուցանիշների առավելագույն նվազեցումն ամենևին էլ չի նշանակում կառավարման ապակենտրոնացում: Պլանավորման կենտրոնացված հիմունքները առաջիկայում ևս պետք է զարգանան, առավելապես պետական պայմանագրային պարտավորությունների կատարման մասով: Դա հիմնականում վերաբերում է միջազգային ու ներքին պայմանագրային պարտավորությունների և միութենական ու հանրապետական նպատակային կոմպլեքսային ծրագրերի համաձայն թողարկվող արտադրանքին, ինչպես նաև պետական բյուջեի հետ ունեցած փոխհարաբերություններին:

Տեղին է նշել, որ այստեղ հանդես է գալիս միայն մեկ համադիր ցուցանիշ՝ պետական պայմանագրային պարտավորությունները, իսկ մյուսները այդ ընդհանուր ցուցանիշի առանձին տարրերի և ասպեկտների իրացման համար առաջադրանքներ են:

Արտադրության կառավարման համակարգում միշտ էլ կիրառվել է պարտավորությունների կատարման աստիճանի գնահատականը, որը հետագա զարգացում է ստացել «Տնտեսավարման նոր մեթոդների լայն տարածման և գիտատեխնիկական առաջադիմության արագացման վրա դրանց ներգործությունն ուժեղացնելու մասին»

կուսակցության և կառավարության 1985 թ. օգոստոսի որոշման մեջ: Առավել մանրամասն վերլուծության կարիք է զգում երկրորդ գնահատող ցուցանիշը, որը կոչված է նյութականացնելու տնտեսական մեխանիզմին առաջադրվող պահանջների մեծ մասը:

Գիտատեխնիկական առաջադիմությունը և արտադրության ինտենսիվացումը հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման նյութական հիմքն են, կարևոր միջոցը: Այս բոլոր երեք տնտեսագիտական կատեգորիաները գտնվում են դիալեկտիկական փոխկապակցվածության մեջ և փոխադարձաբար պայմանավորված են միմյանցով: Գիտատեխնիկական առաջադիմությունը հանգեցնում է արտադրության ինտենսիվացման և, որպես արդյունք՝ արտադրության արդյունավետության բարձրացման: Էկոնոմիկայի արդյունավետ գործառնությունը, իր հերթին, իրական նախադրյալներ է ստեղծում և նպաստում է գիտության ու տեխնիկայի առավել լայն զարգացմանը, և արտադրության մեջ դրանց նվաճումների նյութականացմանը: Քանի որ ԳՏԱ-ն և արտադրության արդյունավետությունը կոչված են և հանգեցնում են սպառողական միավոր արդյունքի վրա արտադրական ռեսուրսների ծախսումների կրճատմանը, ուստի սոցիալիստական էկոնոմիկայի նպատակներին հասնելու համար հասարակությունը պարտավոր է կառավարել ռեսուրսների տեսակարար ծախսերի և արտադրվող սպառողական արժեքի կամ օգտակար արդյունքի հարաբերակցությունը: Եթե սոցիալիստական շինարարության վաղ փուլերում, տնտեսագիտության թերագնահատման և անբավարար մշակվածության հետևանքով, ինչպես նաև որոշ այլ օբյեկտիվ հանգամանքների բերումով, երկրի էկոնոմիկայի գործունեության արդյունքները գնահատվում էին ծավալային, ծախսումային ցուցանիշներով, ապա մեր օրերում դա կտրականապես անընդունելի է: Որքան էլ կատարելագործվեն ծավալային-արժեքային ցուցանիշները և նրանց չափանիշները (տխրահռչակ «համախառն» արդյունքը, ապրանքային արտադրանքը, նորմատիվ զուտ ցուցանիշը և այլն), դրանք ի վիճակի չեն ստույգ բնութագրելու արտադրական կոլեկտիվի, ճյուղի, ժողովրդական տնտեսության միագումար աշխատանքային գործունեության արդյունքները, ապահովել սոցիալիստական էկոնոմիկայի առաջընթաց զարգացման հիմնարար պայմանը՝ համաժողովրդական, կոլեկտիվ և անձնական շահերի զուգակցումը: Եվ քանի որ աշխատանքի բարձր արդյունքների հասնելու գործում հիմնական դերը պատկանում է գիտատեխնիկական առաջընթացին, ապա ժողովրդական տնտեսության մեջ նրա նվաճումների նյութականացման կառավարման նկատմամբ պետք է ունենալ բոլորովին նոր մոտեցում: Ընդ որում կառավարման սկզբնական օղակի համար պարտադիր է արտադրության պլանի և նոր տեխնիկայի պլանի օրգանական փոխկապակցվածության պահանջների իրականացումը: Երկրի արտադրական և գիտատեխնիկական պոտենցիալը սոցիալիզմի էկոնոմիկան հասցրել է որակական այնպիսի նոր վիճակի, երբ քանակական պարամետրերը մղվում են երկրորդ պլան, իրենց տեղը զիջելով տնտեսական աճի որակական գործոններին: Այդ կապակցությամբ, բառափոխելով Կ. Մարքսի հայտնի դրույթը, կարելի է ասել, որ, ի տարբերություն նախորդ փուլերի, արտադրողական ուժերի զարգացման արդի ժամանակաշրջանում պետք է կառավարել ոչ թե այն, ինչ արտադրվում է, այլ այն, թե ինչպես է արտադրվում, աշխատանքի ինչպիսի միջոցներով: Կուսակցությունն այսօր տնտեսագիտության առջև խնդիր է դրել գիտականորեն վերակողմնորոշել պլանային ցուցանիշների համակարգը, ուժեղացնել դրանց ուղղվածությունը դեպի ժողովրդատնտեսական վերջնական արդյունքները, բարձրացնել աշխատանքային, նյութական և ֆինանսական ռեսուրսների օգտագործման արդյունավետությունն ու արտադրանքի որակը, դրա նորացման մասշտաբներն արտահայտող ցուցանիշների դերն ու նշանակությունը:

Առավել նպատակահարմար է տնտեսական տեսության և պրակտիկայի զարգացման արդի փուլում որպես կառավարման սկզբնական օղակի գործունեության հիմնական գնահատիչ ցուցանիշ օգտագործել միագումար ծախսերի արդյունավետության աստիճանը, որը կարող է դառնալ ներգործող, կարգավորող և, որ ամենակարևորն է, վերջնական միավոր արտադրանքի վրա կատարվող արտադրական ծախսերը նվազագույնի հասցնելու խթանող գործոն:

Միագումար ծախսերի արդյունավետության աստիճանը որոշելիս մեզ օգնում է ժամանակի տնտեսման մարքսյան օրենքը: Ընդ որում ժամանակի տնտեսումը՝ որպես հասարակական առաջադիմության չափանիշ, նա վերագրել է կոլեկտիվ արտադրությանը: Ուստի այժմ, երբ սոցիալիստական արտադրական հարաբերություն-



ները առավել հասուն ձևեր են ընդունել, առավել հրատապ ու անհրաժեշտ է նշված օրենքի՝ որպես սոցիալիստական վերարտադրության արդյունավետության բարձրացման շարժիչ ուժի, պահանջները հաշվի առնելը: Դեռ ավելին, այդ օրենքի արտահայտած կապը դուրս է գալիս արտադրական հարաբերությունների շրջանակից և խորությամբ թափանցում է արտադրողական ուժերի գործողության ոլորտը: Ժամանակի տնտեսումը հանդես է գալիս որպես միմյանց հետ փոխգործողության մեջ գտնվող երկու գործոնների՝ գիտատեխնիկական և սոցիալ-տնտեսական առաջադիմության ֆունկցիա:

Արտադրության տեսակարար ծախսերի կրճատման բնագավառում մենք ունենք չօգտագործված վիթխարի ռեզերվներ: Դրա հաստատումն է մասնավորապես մեր արդյունաբերության մեջ նյութական ռեսուրսների տեսակարար ծախսումը՝ համանման ցուցանիշի համաշխարհային միջին մակարդակի համեմատությամբ: Այսպես, կլորացված հաշվարկներով, մեր երկրին բաժին է ընկնում հումքի և էներգիայի սկզբնական տեսակների արդյունահանման 30 տոկոսը, մինչդեռ արդյունաբերական արտադրանքի ծավալի 20 տոկոսը:

Ընդ որում էկոնոմիկայի մեջ որակական տեղաշարժի սուր անհրաժեշտության դեպքում, որը զգացվեց, օրինակ, Հայրենական մեծ պատերազմի տարիներին, միավոր արտադրանքի վրա նյութական ծախսումների էական տնտեսումը դառնում է հնարավոր և միանգամայն ռեալ: Այսպես, 1944 թվականին, նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, ռազմական և քաղաքացիական մեքենաշինության արտադրանքի 1,6 անգամ աճի դիմաց սև մետաղների ռեսուրսները կազմում էին 1940 թվականի մակարդակի միայն 60 տոկոսը: Արդի պայմաններում այդպիսի անհրաժեշտությունն առավել ևս անվիճելի է: Դրա իրագործման հարցում կոչված է ներգործուն դեր խաղալ տնտեսավարման մեխանիզմը:

Ուստի հենց արտադրության տեսակարար ծախսումներն են կոչված դառնալու կառավարման բոլոր մակարդակներում հասարակական աշխատանքի արդյունավետության գնահատման կրողներ: Կառավարման սկզբնական օղակի (հատկապես արդյունաբերության վերամշակող ճյուղերի) համար, որպես աշխատաժամանակի տնտեսման չափանիշի համարժեք, աշխատանքի միագումար ծախսումների արդյունավետության չափման կոմպլեքսային ցուցանիշ կարող է հանդիսանալ արտադրության արդյունավետության դինամիկան: Այսպիսի ցուցանիշը բնութագրում է աշխատանքի (կենդանի և առարկայացված) միագումար ծախսումների տեսակարար տնտեսումը, այսինքն՝ արտացոլում է քննարկվող ժամանակամիջոցում (բազիսայինի համեմատությամբ) արտադրության միագումար ռեսուրսատարության փոփոխությունները: Այն որոշելու համար արտադրանքի (աշխատանքի) վրա կատարված ծախսերի միագումար տնտեսումը հարաբերվում է արտադրանքի գումարային ծախսումներին: Ի տարբերություն մեզ մոտ արմատավորված պրակտիկայի, երբ արդյունքները հարաբերվում են ծախսերին, արտադրության արդյունքներն առաջարկվող ցուցանիշներով գնահատվում են որակապես նոր կատեգորիայով՝ արտադրական միագումար ծախսերի տնտեսմամբ:

Արտադրության տեսակարար ծախսերի տնտեսման ցուցանիշի միջոցով կարելի է գնահատել և համադրել ցանկացած արդյունաբերական օբյեկտի գործունեության հարաբերական արդյունավետությունը, անկախ այդ օբյեկտի մասշտաբներից, թողարկվող արտադրանքի առանձնահատկություններից, տեխնիկական զինվածության աստիճանից, ծախսերի կառուցվածքից:

Եթե արդյունավետությունը (բայց ոչ արդյունքը) անհրաժեշտ է հաստատել վերադասի կողմից, ապա պլանային առաջադրանքները կատարելու ուղիների ու միջոցների ընտրությունը պետք է վերապահել ձեռնարկության տնօրինությանը: Դրանով իսկ էական քայլ կկատարվի վերջինիս տնտեսական ինքնուրույնությունն ընդլայնելու, տեխնիկական վերազինման, արտադրության կատարելագործման, պլանավորման գործում նրա դերը բարձրացնելու վերաբերյալ կուսակցության առաջադրած խնդիրների իրացման գործում:

Արդյունավետության վերաբերյալ առաջադրանքը, որը չի պարունակում որևէ վերապահում, ցուցում, սահմանափակում կամ պարտադրող հանձնարարական, ձեռնարկությանը դրդում է ինքնուրույնաբար լուծելու բազմաթիվ անհայտներով խնդիրները:

Ձեռնարկության ձեռքբազատված ղեկավարությունն արդեն ինքը, առանց վերադասի հետ համաձայնեցնելու, պետք է որոշի, թե ինչպես արտադրել (ժամանակի ընթացքում՝ նաև ինչ արտադրել), ինչպես իրականացնել արտադրության և ռեսուրսների օգտագործման կառուցվածքային տեղաշարժերը, ինչ քանակի և կազմի արդյունաբերական-արտադրական անձնակազմ ունենալ և այլն: Այդ դեպքում ձեռնարկությունները կարագացնեն սարքավորումների պարկի նորացումը և արտադրության տեխնիկական վերազինումը, կմշակեն ու կներդնեն արտադրության և աշխատանքի կազմակերպման նոր առաջավոր ձևեր, առավել գործնականորեն ձեռնամուխ կլինեն ռեզերվների բացահայտմանը, դրանց արդյունավետ օգտագործմանը, պատնեշ կդրվի վատնողականությանը, ռեսուրսների շռայլմանը: Ստեղծագործական նախաձեռնությունը, սոցիալիստական գործարարությունը և ձեռներեցությունը, որոնք կաշկանդված էին վերևից պարտադրվող մանր խնամակալությամբ, այժմ ամբողջ թափով կծավալվեն խորությամբ և լայնությամբ:

Արտադրական գործունեության արդյունավետության դինամիկան որպես հիմնական գնահատող ցուցանիշ կիրառելը կոչված է կոլեկտիվներին խթանել՝ արագորեն կատարելու անցումը ինտենսիվ ուղու վրա, արտադրությունը կազմակերպելու բացառապես ԳՏԱ-ի նորագույն նվաճումների լայն ներդրման հիման վրա: Այս եղանակով գիտության, տեխնիկայի, տեխնոլոգիայի և արտադրության պլանավորման օրգանական զուգակցման խնդրի լուծումը (այսինքն՝ գործող տնտեսական մեխանիզմի վերը նշված արատների վերացումը) կուժեղացնի արտադրական կոլեկտիվների ներքին խթանները, որով և կծառայի որպես գիտատեխնիկական առաջընթացի արագացման դրդիչ գործոն: Արդեն բարդություններ չեն առաջանա նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի կիրառման համար: Տնտեսական նոր մեխանիզմը հնարավորություն կտա «ներդրում» տերմինը փոխարինել հատկապես «կիրառումով», քանզի այժմ «ներդրումը» որոշ հեղինակներ իրավացիորեն մեկնաբանում են որպես ուժային ներգործություն, որն անհրաժեշտ է՝ դիմադրությունը հաղթահարելու համար: Տվյալ դեպքում ձեռնարկությունները պարզապես շահագրգռված կլինեն տեխնիկական պրոգրեսի հարցում և ոչ մի դիմադրություն հաղթահարելու հարկ չի լինի:

Եթե նոր տեխնիկայի, տեխնոլոգիայի, առաջադիմական կազմակերպական ձևերի կիրառման խնդրի լուծումը քիչ թե շատ համոզիչ է, ապա նոր արտադրանքի յուրացման և թողարկման գործում կոլեկտիվների շահագրգռվածության հարցը կարծեք թե բաց է մնում: Սակայն դա միայն առաջին հայացքից: Նոր տնտեսական մեխանիզմի գործողության դեպքում ուժի մեջ են մտնում տնտեսական հարաբերությունները. սպառողը չի պատվիրի և վերցնի բարոյապես հնացած տեխնիկան, որը չի ապահովում արտադրական ռեսուրսների տնտեսման պլանային առաջադրանքի կատարումը: Իսկ նոր արտադրանք թողարկողը, արդեն չանհանգստանալով ծավալային, արժեքային ցուցանիշների նվազման փաստով, սիրահոժար ձեռնամուխ կլինի այնպիսի արտադրանքի թողարկմանը, որն ավելի լայն պահանջարկ ունի:

Այս պրոբլեմի լուծման գործում պակաս կարևոր դեր չեն խաղում նաև ներգործման այլ միջոցներ: ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1985 թ. օգոստոսի վերը նշված որոշմամբ ստեղծվել է խրախուսման միասնական ֆոնդ, որի զգալի մասն ուղղված է գիտատեխնիկական առաջադիմության խթանմանը: Ստեղծվում է նաև գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինման և վերակառուցման ֆոնդը, որը նույնպես կոչված է էապես խթանելու գիտատեխնիկական առաջադիմությունը:

Հիմնական գնահատող ցուցանիշները, անկասկած, պետք է լինեն նաև ֆոնդագոյացնող: Այդ սկզբունքը, բացի տնտեսական նկատառումներից, նպաստում է Վ. Ի. Լենինի առաջադրած այն պահանջի իրականացմանը, որ աշխատավորները պարզ, հստակ ու մատչելի ձևով պատկերացնեն նյութական խթանման չափերի կախվածությունն իրենց աշխատանքային ներդրումից: Հարց է ծագում, իսկ այս համակարգում ինչպե՞ս է գործելու մյուս հիմնական գնահատող ցուցանիշը: Քանի որ պլանը օրենք է և այն չի կարելի խախտել, ապա կոլեկտիվը կարող է խրախուսվել միայն պայմանագրային պարտավորությունները 100 տոկոսով կատարելու դեպքում: Իսկ պարգևատրել պետք է ոչ թե պարտավորությունները կատարելու համար, այլ աշխատանքի որակական արդյունքները գերազանցելու համար: Ընդ որում խրախուսման չափը պետք է անմիջականորեն կախված լինի կոլեկտիվի աշխատանքի արդյունավետության աստիճանից և սահմանվի նորմատիվներով: Դեռ ավելին, ձեռնարկության (միավորման) ղեկավար աշխատողների պատասխանատվության բարձրացմանը կնպաստի այնպիսի կարգ սահմանելը, ըստ որի նրանց աշխատավարձի լրիվ չափը երաշխավորվում է միայն ձեռնարկության կողմից պայմանագրային պարտավորությունների 100 տոկոսով կատարման դեպքում (այսպիսի կարգ վաղուց գործում է մի քանի սոցիալիստական երկրներում): Այդ ցուցանիշը չկատարելու դեպքում աշխատավարձի չափը պակասեցվում է, այսինքն՝ սանկցիաներ են կիրառվում արտադրակից ձեռնարկությունների և հասարակության առջև իրենց պարտականությունը չկատարելու համար:



Այս պրոբլեմը առավել հրատապ է մեր հանրապետության համար, որտեղ մեծ թվով միավորումներ ու ձեռնարկություններ սիստեմատիկաբար խախտում են իրենց պայմանագրային պարտավորությունները, ինչպես նաև նպատակային գիտատեխնիկական ծրագրերի առաջադրանքների կատարումը, ուստի նպատակահարմար է հանրապետական ենթակայության առանձին ձեռնարկություններում անցկացնել տնտեսափորձ: Այդ նպատակով անհրաժեշտություն կզգացվի պետպլանի և հանրապետության տնտեսագիտական ինստիտուտներից մեկի համատեղ ուժերով մանրակրկիտ պրակտիկ մշակում կատարել:

Մեր խորին համոզմամբ տնտեսական մեխանիզմի համակառուցման շարադրված կամ ցանկացած այլ մոդելը պետք է ամբողջությամբ արտացոլի տնտեսական գործունեության կառավարման հիմնական ֆունկցիաներին առաջադրվող արդի հասունացած պահանջները: Առանց դրա դժվար կլինի լուծել սոցիալ-տնտեսական զարգացման արագացման և արտադրողական ուժերի բնույթին ու զարգացման մակարդակին արտադրական հարաբերությունների համապատասխանության ապահովման խնդիրը:

---

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԳՈՐԾՈՆԸ

**Վ. ՄԱՆՈՒԿՅԱՆ**

ՄԱՐԴԿՈՒԹՅՈՒՆԸ ԹԵՎԱԿՈԽԵԼ Է գիտատեխնիկական հեղաշրջումների ժամանակաշրջանը, որը կապված է միջուկային էներգիայի տիրապետման, տիեզերքի յուրացման, արտադրության ավտոմատացման, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիաների ստեղծման և գիտատեխնիկական մյուս խոշորագույն հայտնագործությունների հետ: Որակական փոփոխություններ են կատարվում հասարակության կյանքի բոլոր ոլորտներում, բուռն զարգացում է ապրում հիմնարար և կիրառական գիտությունների ողջ համալիրը: Գիտության չտեսնըված վերելքը, որն ուղեկցվում է այն անմիջական արտադրողական ուժի վերածվելով, գիտական գիտելիքների խոր և բազմակողմանի ինտեգրացիայի արդյունք է: Գիտությունների սերտ փոխգործողությունը և փոխներթափանցումը հնարավորություն են ընձեռում առավել կենտրոնացված և նպատակասլաց օգտագործել նրանց անող հզորությունը, վիթխարի պոտենցիալ հնարավորությունները:

Գիտությունների ինտեգրացման հարցը ներկայումս դասվում է մարքս-լենինյան տեսության առավել արդիական ու հրատապ պրոբլեմների շարքը: Դրա պատճառն ամենից առաջ այն է, որ գիտական, տեխնիկական ու տեխնոլոգիական հետազոտությունների անող տարանջատումը սրում է խզումը, մի կողմից, տարասեռ գիտելիքների համահավաք ամբողջության ու ռացիոնալ գործողության հնտություններ և, մյուս կողմից, հասարակական սիստեմների ու պրոցեսների կազմակերպման ու կառավարման այն հնարավորությունների միջև, որոնք զարգանում են ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում:

Գիտությունների ինտեգրացման՝ մեր կարծիքով ամենից քիչ հետազոտված պրոբլեմներից մեկը կապված է գիտությունների միջև առկա բուն իսկ խզման միջգիտակարգային նկարագրության հնարավորության հետ: Հենց այդպիսի նկարագրությունն ու համապատասխան միջգիտակարգային լեզուն էլ (հնարավոր է անգամ նաև տեսությունը) կարող են գործնական քայլ դառնալ խզման բուն իրավիճակն ընկալելու ճանապարհին, որն իր հերթին չի կարող այլ կերպ հանդես գալ, քան մեթոդաբանորեն հիմնավորված պրակտիկայի ձևով: Այն ներառում է գործունեությունների ու դրանց ծառայեցվող սինթետիկ փոխհամաձայնեցված գիտելիքների համալիրը:

Գիտությունների կոմպլեքսային զարգացման խնդիրը հատկապես հրատապ է դառնում արդի ժամանակաշրջանում, երբ մեր երկիրը թևակոխում է նոր սահմանագիծ: ՍՄԿԿ XXVII համագումարը բացահայտեց սովետական հասարակարգի զարգացման նոր փուլի էությունը, որը պահանջում է սոցիալ-տնտեսական օրգանիզմի շատ օղակների արմատական վերակառուցում: Այստեղ կարևորվում է այն հանգամանքը, որ վերակառուցումը նաև իր իսկ մարդու, դեպի գործը նրա ունեցած վերաբերմունքի վերակառուցումն է, նրա գիտակցության բարձրացումը ոչ թե սոսկ հանրահայտ ճշմարտություններ սերտելու, այլ մասնագիտական հմտությունները խորացնելու, լավատեղյակությունը, բանիմացությունը կատարելագործելու առումով, ավելացնելով նաև դրանց նախաձեռնությունն ու պատասխանատվությունը: Այդ խնդիրների հումանիտար ասպեկտին համագումարում լուրջ ուշադրություն է դարձվել, իսկ հետո դրանք առանձնակի քննության առարկա են դարձել հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների համամիութենական խորհրդակցությունում: Խոսքն այն մասին է, որ սովետական հասարակագիտության կողմնորոշումը՝ մինիստրությունններից ու գերատեսչություններից մինչև բարձրագույն դպրոցի, պրոֆտեխնիկական ուսումնարանի և հանրակրթական դպրոցի ուսումնադաստիարակչական պրոցեսը, ուղղված լինի սոցիալիզմի կատարելագործման պրակտիկայի վերլուծությանը, այն գործնական պրոբլեմների լուծմանը, որոնք կապված են գիտատեխնիկական գործունեությունն ապահովող միջոցների ստեղծման հետ: Այդ առումով ինֆորմատիկայի և հաշվողական տեխնիկայի ժամանակակից դասընթացները միջգիտակարգային մոտեցման որոշակի տիպար են հանդիսանում առաջադրված խնդիրների լուծման համար:

Սակայն դեռևս պրոբլեմային է մնում այդ դասընթացների կապը ինֆորմացիոն համակարգի հումանիտար ասպեկտների հետ, որոնք ոչ միայն կիբեռնետիկական, այլև հոգեբանական, մանկավարժական, գաղափարախոսական բնույթի քննարկումներ են հրագործում:

ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ նշվում է, որ «ժամանակակից պրոբլեմների բարդ, կոմպլեքսային բնույթը պահանջում է խորացնել հասարակական, բնական ու տեխնիկական գիտությունների ինտեգրացումը: Պետք է ավելի լայն զարգացում ստանան գիտության կազմակերպման այնպիսի ձևեր, որոնք ապահովում են հրատապ պրոբլեմների գիտական միջճյուղային հետազոտությունը, գիտական կադրերի անհրաժեշտ շարժունությունը, գիտական հիմնարկների կառուցվածքի ճկունությունը, հետազոտությունների ու մշակումների արդյունավետությունը»: Այդ հեռանկարը սերտորեն կապված է գիտական հետազոտությունները դեպի հասարակական արտադրության կարիքները կտրուկ կերպով շրջելու անհրաժեշտության հետ, որն ընդգծվեց կուսակցության XXVII համագումարում:

«Վերջին ժամանակներս նախատեսված են գիտահետազոտական հիմնարկների աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու կարևոր միջոցառումներ... Վերջերս որոշում ընդունվեց ստեղծել միջճյուղային գիտատեխնիկական կոմպլեքսներ, որոնց մեջ ընդգրկված են գլխադաս խոշոր ինստիտուտներ, այդ թվում ակադեմիական ինստիտուտներ, նախագծակոնստրուկտորական կազմակերպություններ և փորձաարդյունաբերական արտադրություններ» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 39):

Ակնհայտ է, որ այդ խնդիրները կարող են լուծվել միայն կոմպլեքսային կազմակառուցվածքների գոյության հնարավորություններին և դրանց իրացումներին համապատասխան ըմբռնում մշակելու հիման վրա, որը ենթադրում է մի այնպիսի կարևոր խնդրի առաջնահերթ լուծում, ինչպիսին է հասարակական, բնական ու տեխնիկական գիտությունների կապերի բազմակողմանի վերլուծությունը:

Բոլոր նշված ու իբրև ժողովրդական տնտեսության ինտենսիվացման գծով հատկապես կարևորվող միջոցառումները ամրապնդվեցին համագումարում Ն. Ի. Ռիժկովի «ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների մասին» զեկուցման մեջ: Այստեղ ասվում է, որ գիտատեխնիկական առաջադիմությունն արագացնելու համար անհրաժեշտ է առաջանցիկ տեմպերով գիտության սեկտոր ներդնել արդյունաբերության մեջ, համարձակ կերպով նրա կազմի մեջ մտցնել ճյուղային գիտահետազոտական ինստիտուտներ: Հարկավոր է ավելի արագ կատարել գիտաարտադրական միավորումներ կազմակերպելու ուղղությամբ աշխատանքը:

Առաջադրված այս վիթխարի խնդիրները հատուկ պատասխանատվություն են դնում նաև սովետական հասարակագետների վրա: Համագումարի կոչը՝ կենտրոնացնել հումանիտար հետազոտությունները ժամանակակից հասարակական պրոցեսի վրա, առնչվում է էկոնոմիկային, քաղաքականությանն ու մշակույթին՝ դրանց սիստեմային փոխազդեցության մեջ: Այդ հետազոտությունները զուգակցելով հասարակական զարգացման գործնական կարիքներին, պետք է հաշվի առնվի նաև գիտությունների փոխադարձ կապերի պրոբլեմը: Այստեղ ամենից առաջ առանձնանում է իր իսկ գիտատեխնիկական հեղափոխության հումանիտար ուղղվածությունը սոցիալիզմի պայմաններում: «Երբ մենք ավտոմատացում ենք ներդնում,— նշել է ակադեմիկոս Ա. Պ. Ալեքսանդրովը,— ապա մեր երկրի էկոնոմիկան ավելի արագ է զարգանում, բարձրանում է ժողովրդի բարեկեցությունը: Մենք կարող ենք ավելի լայն ծավալել մեր արդյունաբերական բազան՝ մարդկանց ավտոմատացված ձեռնարկություններից ազատելու շնորհիվ»:

Լայն սոցիալական պրոբլեմների լուծման նկատմամբ միջգիտակարգային կոմպլեքսային մոտեցման հումանիտար կողմը բխում է կոմունիստական շինարարության

Անհրաժեշտ է անդրադառնալ նաև արդի շրջանում մեր երկրում գիտատեխնիկական առաջադիմության առանձնահատկություններին և, ամենից առաջ, ինֆորմացիոն ու էլեկտրոնային հաշվիչ համակարգերի նկատմամբ տնտեսության սոցիալիստական սիստեմի կողմնորոշմանը: ՍՄԿԿ XXVII համագումարին տրված Քաղաքական զեկուցման մեջ նշվեց գիտատեխնիկական զարգացման այդ ոլորտի առնչված լինելը մեր հասարակարգի հումանիստական սկզբունքի հետ: Բանն այն է, որ սոցիալիստական հասարակարգի տնտեսական ու սոցիալական զարգացման ցանկացած բնագավառ ենթադրում է մարդու բարոյական գիտակցության, հասարակության նկատմամբ նրա բարոյագիտական հայացքների, ինչպես նաև կոմունիզմի կառուցման մեջ իր գործունեության որոշակի ուղղությունների ընտրություն կատարելու անհրաժեշտության նկատմամբ հայացքների համապատասխան զարգացում: Հետևաբար կուսակցության ծրագրի և գիտատեխնիկական առաջադիմության արագացման վերաբերյալ ՍՄԿԿ XXVII համագումարի պատմական որոշումների իրականացման ուղիները ենթադրում են մի մոտեցում, որը հիմնվում է այդ պրոցեսի աշխարհայացքային ու մեթոդաբանական ասպեկտների միասնության վրա, մի բան, որը ակնառու կերպով ի հայտ է գալիս ժողովրդական տնտեսության ինֆորմացիոն և կոմպյուտերային ապահովվածության ուղղությամբ մեր երկրում ծավալված շարժման մեջ: Դա երևան է գալիս մասնավորապես այն բանում, որ այստեղ սկզբից ևեթ տեխնիկական հարցերը կապված են հոգեբանական և մանկավարժական խնդիրների հետ և առնչվում են ոչ միայն ԷՀՄ արտադրող արդյունաբերությանը, ինֆորմացիոն համակարգեր մշակող գիտական կոլեկտիվներին, այլև միջնակարգ և բարձրագույն դպրոցներն ու պրոֆտեխուսումնարաններն ընդգրկող լայն ցանցին: Դրանում է կայանում գիտությունների միասնությանը կոմպլեքսային մոտեցման իրական ու գործնական արտահայտությունը, որը վկայում է կուսակցության սոցիալ-տնտեսական քաղաքականության ելակետային սկզբունքների հստակ տեսական ու գործնական հիմնավորվածության մասին: Ակնհայտ է, որ այդ քաղաքականությունը կյանքում պետք է իրագործեն մարդիկ: Հումանիտար, բնագիտական և տեխնիկական գործունեության միջգիտակարգային պատկերն էլ հենց կոչված է անհրաժեշտ միջոց ծառայելու ոչ միայն ժողովրդական տնտեսությունը ժամանակակից տեխնիկական միջոցներով հագեցնելուն ուղղված պրակտիկ գործունեությունն իրականացնելուն, այլև այդ գործունեությունն իրականացնող սուբյեկտներին հոգեբանորեն վերափոխելու նպատակներին: Դա օրինաչափ հետևություն է գիտությունների փոխադարձ կապի մասին հարցադրման և այդ կապի գործնական իրականացման համար այն հասարակության մեջ, որտեղ հաղթահարված է աշխատանքի հակամարտ օտարվածությունը: Այստեղից հետևում է այն եզրակացությունը, որ հասարակական, բնական և տեխնիկական գիտությունների համագործակցության հարցը չի կարող լուծվել սկզբնական ընդհանուր խնդրի լուծումից դուրս: Խոսքն այն մասին է, որպեսզի ինտեգրացվեն գիտությունների ինտեգրացվածության արդեն գոյություն ունեցող ձևերը, որոնք ի հայտ են գալիս ինչպես իր սոցիոլոգիական և հոգեբանական ապահովումը պահանջող գիտատեխնիկական կոլեկտիվների իրական գործունեության, այնպես էլ տեսական մոդելների ու մշակումների մակարդակով: Այդ բանին պետք է հատուկ ուշադրություն դարձնել, քանի որ հաճախ մեր գրականության մեջ գիտությունների փոխադարձ կապի վերաբերյալ պրոբլեմի քննարկումը կարծես սկիզբ է առնում միևնույն զրոյից, թե իբր խոսքը մի ինչ-որ նախապես անհամատեղի վերաբերյալ է:

Գիտությունների փոխադարձ կապի վերաբերյալ խնդրի այսպիսի շրջադարձը թույլ է տալիս բացահայտել քննարկվող պրոբլեմի նոր ասպեկտներ, որը պահանջում է տեսական վերլուծության հատուկ միջոցներ: Հավանորեն, խոսքը կարող է վերաբերվել գիտությունների ինտեգրացման և գործունեության բուն իսկ ձևերի նկատմամբ կոմպլեքսային մոտեցմանը, որը պետք է սկսել ոչ թե վերացական կամ տեսական հարցերից, այլ տնտեսության սոցիալիստական սիստեմի շրջանակներում իրոք գոյություն ունեցող ինտեգրացման ձևերի էմպիրիկ վերլուծությունից:

---

# ԿՈԼԵԿՏԻՎ ԿԱՊԱԼԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՍՊԵԿՏՆԵՐԸ

**Գ. ԴԱՎԹՅԱՆ**
**Տնտեսագիտության թեկնածու, դոցենտ**

ՍՄԿԿ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐՆ ԸՆԴԳԾԵՑ, որ պարենային ծրագրի կենսագործման կարևոր պայմանը գյուղատնտեսական արտադրության զարգացման տեմպերի արագացումն է: Սրան է ուղղված կուսակցության ժամանակակից ագրարային քաղաքականությունը, որը ձևակերպված է ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումի որոշումներում, ՍՍՀՄ պարենային ծրագրում: Դրանց ընդունումից հետո քիչ բան չի արվել: Գյուղատնտեսական մթերքների գնման գների բարձրացումը (1983 թ. հունվար), բնակլիմայական աննպաստ պայմաններում գտնվող, տնտեսապես թույլ ու ցածր շահութաբերություն ունեցող տնտեսությունների համար գների հավելավճարումների սահմանումը, կոլտնտեսությունների, սովխոզների ու միջտնտեսային ձեռնարկությունների նյութատեխնիկական բազայի զարգացումը, ղեկավար աշխատողների ու մասնագետների աշխատավարձի բարձրացումը, տնտեսական հաշվարկի և ինտենսիվ տեխնոլոգիաների ներդրումը մեծ չափով նպաստեցին գյուղատնտեսական ձեռնարկությունների ֆինանսատնտեսական դրության ամրապնդմանը: Զգալիորեն բարձրացել է հողագործության և անասնապահության մթերատվությունը:

Դրա հետ մեկտեղ կուսակցությունը գտնում է, որ գյուղատնտեսության հետ մնալը դեռևս դանդաղ է հաղթահարվում, որ ագրարային հատվածում հարկավոր է վճռական բեկում, որպեսզի արդեն տասներկուերորդ հնգամյակում նկատելիորեն բարելավվի պարենի մատակարարումը, ապահովվի մեկ շնչին ընկնող մսի, կաթի, բանջարեղենի ու պտուղների սպառման զգալի հավելում: Նախատեսվում է ավելի քան կրկնապատկել գյուղատնտեսական արտադրության աճի տեմպերը: Այդ նպատակով մշակվել են ագրոարդյունաբերական համալիրի բոլոր ճյուղերի արդյունավետության բարձրացման մասշտաբային միջոցառումներ: Դրանց էությունը կայանում է նրանում, որ գյուղում փոխվի սոցիալ-տնտեսական վիճակը, ամենուրեք կիրառվեն տնտեսավարման տնտեսագիտական մեթոդները, պայմաններ ստեղծվեն արտադրության ավելի խոր ինտենսիվացման, մթերքների երաշխավորված արտադրության, կոլտնտեսությունների ու սովխոզների ինքնուրույնության ընդլայնման և իրենց գործունեության արդյունքների նկատմամբ նրանց պատասխանատվության բարձրացման համար:

Կուսակցությունը խնդիր է դնում, որ յուրաքանչյուր կոլտնտեսություն, սովխոզ և միջտնտեսային ձեռնարկություն հետևողական աշխատանք տանի արտադրությունն ինտենսիվացնելու, առաջադիմական տեխնոլոգիաներ ներդնելու և գյուղատնտեսական արտադրությունն արդյունաբերական հիմքերի վրա դնելու համար:

Աշխատավորական կոլեկտիվների տնտեսական շահագրգռության բարձրացման, ագրոարդյունաբերական համալիրի բոլոր օղակների հստակ, փոխկապակցված աշխատանքի ապահովման նպատակով ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդն անհրաժեշտ են համարել իրագործել տնտեսավարման, տնտեսական մեխանիզմի կատարելագործման միջոցառումների համալիր, լայնորեն ներդնել առաջա-

դիմական նորմատիվների հիման վրա պլանավորման ու տնտեսական խթանման նոր մեթոդները, ընդլայնել կոլտնտեսությունների, սովխոզների, միջտնտեսային ձեռնարկությունների, ագրոարդյունաբերական համալիրի մյուս ձեռնարկությունների և կազմակերպությունների իրավունքները տնտեսական հարցերի լուծման գործում, ուժեղացնել աշխատավորական կոլեկտիվների և կառավարման բոլոր օղակների շահագրգռությունն ու պատասխանատվությունը արտադրության ինտենսիֆիկացման, գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների լայն օգտագործման, վերջնական բարձր արդյունքների ապահովման համար:

Գյուղատնտեսական արտադրանքի հետագա ավելացման, որակի և արդյունավետության բարձրացման ուղղությամբ իրականացվող միջոցառումների շարքում կուսակցությունը կարևոր նշանակություն է տալիս աշխատանքի կազմակերպման ու վարձատրության նոր ձևերի և տնտեսական հաշվարկի մասսայական ներդրմանը:

Կոլեկտիվ կապալը, որպես մեքենավար-տրակտորիստների, դաշտավարների և անասնապահների աշխատանքի կազմակերպման առավել կատարելագործված ձև, Միության առանձին շրջաններում սկսել են ներդնել 70-ական թվականների կեսերից: ՍՄԿԿ Կենտկոմի «Կոլտնտեսային ու սովխոզային արտադրության մեջ կոլեկտիվ կապալի ներդրման ուղղությամբ կազմակերպչական աշխատանքն ուժեղացնելու մասին» որոշումից հետո (1983 թ.) այդ աշխատանքը ծավալվեց նաև մեր հանրապետությունում:

Կոլեկտիվ կապալի ներդրման հաջողությունը պայմանավորված է կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավար աշխատողների ու մասնագետների ուսուցմամբ, նրանց լավ նախապատրաստմամբ, ագրոնոմիական, ինժեներական, պլանային, տնտեսագիտական և հաշվապահական ծառայությունների գործունեության վերակառուցմամբ, կուսակցական կազմակերպությունների կազմակերպական ու քաղաքական աշխատանքով: Ակնհայտ են կապալի և տնտհաշվարկային մեթոդի կիրառման առավելությունները, մինչդեռ հանրապետության շատ շրջաններում խիստ դանդաղ տեմպերով են ներդրվում կոլեկտիվ կապալը, տնտեսական հաշվարկը և ինտենսիվ տեխնոլոգիաները: Այստեղ իրենց դերն են խաղում տնտեսությունների ղեկավար աշխատողների ու մասնագետների անվճռական, հաճախ սպասողական դիրքավորումը, իսկ երբեմն էլ նրանցից շատերի պահպանողականությունը, այդ հարցում նրանց ոչ բավարար ձեռնհասությունը: 1985 թ. տվյալներով հանրապետության գյուղատնտեսական արտադրության մեջ կոլեկտիվ կապալով աշխատել են 1 259 բրիգադ և օղակ, որոնք ընդգրկել են գյուղի աշխատավորների միայն 1/6-ը:

Կոլեկտիվ կապալը դժվարությամբ է ներդրվում անասնապահության մեջ. այս ճյուղում կապալով էր աշխատում ընդամենը 2 842 անասնապահ: Նրանց ամրացված է կովերի գլխաքանակի 2,6 տոկոսը, խոշոր եղջերավոր անասունների մատղաշի 3,4 տոկոսը, խոզերի 17,2 տոկոսը, ոչխարների՝ 8,2 տոկոսը: Նման վիճակը չէր կարող խիստ անհանգստություն չպատճառել հանրապետության կուսակցական ու սովետական ղեկավար մարմիններին: Պետք էր սկսել կադրերի ուսուցումից: ՀԿԿ Կենտկոմի որոշմամբ 1986 թվականի սկզբներին հանրապետությունում հրավիրվեց 3 զոնալ խորհրդակցություն (առաջավոր տնտեսությունների բազայի վրա), որոնց մասնակցում էին ագրոարդյունաբերական համալիրի մեջ մտնող ձեռնարկությունների ղեկավար աշխատողներ, մասնագետներ, գիտական աշխատողներ և բարձրագույն ուսումնական հաստատությունների տնտեսագետ դասախոսներ: Գիտական որակավորում ունեցող տնտեսագետ մասնագետները ամրացվեցին շրջաններին՝ տեղերում անհրաժեշտ մեթոդական օգնություն ցույց տալու, ղեկավար աշխատողների (հատկապես միջին օղակի ղեկավարների) ու մասնագետների ուսուցումը կազմակերպելու այն հաշվով, որ արտադրության հրամանատարական կազմը լավ պատկերացնի կապալի և տնտհաշվարկի էությունն ու սկզբունքները, համոզվի դրանց համատեղ կիրառման առավելությունների մեջ: Կատարված կազմակերպչական աշխատանքի շնորհիվ այդ բնագավառում կարճ ժամանակում նկատելի դրական տեղաշարժեր կատարվեցին: Ծուտով բուսաբուծության մեջ բրիգադների արդեն կեսից ավելին աշխատում էր կապալով: Նրանք մշակել են վարելահողի 35,3 տոկոսը: Անասնաբուծության մեջ կապալով են աշխատում ֆերմաների 42,1 տոկոսը, որոնք ընդգրկում են աշխատողների ավելի քան 35 տոկոսը: Նրանց ամրացված է կովերի գլխաքանակի 27,4, բտվող գլխաքանակի՝ 33,3, խոզերի՝ 36,2, ոչխարների՝ 58,6,



թռչունների՝ 61,5 տոկոսը: Անասնաբուծության մեջ տարածում է ստանում ընտանեկան և անձնական կապալը:

Կոլեկտիվ կապալի և տնտեսական հաշվարկի կիրառման լավ փորձ են կուտակել Նաիրիի, Էջմիածնի, Աշտարակի, Արարատի, Իջևանի, Սիսիանի և ուրիշ շրջաններ: Նաիրիի շրջանի Նոր Գեղիի սովխոզ-տեխնիկումում արդեն 1984 թ. պտղաբուծության բնագավառում գործում էին տնտհաշվարկի սկզբունքով աշխատող կապալային երեք բրիգադ և երեք օղակ: Անցած տարիների աշխատանքի արդյունքները հաստատեցին աշխատանքի կազմակերպման ու տնտեսավարման նոր ձևի ակնհայտ առավելությունները: Եթե նախորդ հինգ տարում տնտեսության այգիների միջին բերքատվությունը 28—40 ցենտներից չէր անցել, ապա կապալային բրիգադներում և օղակներում այդ ցուցանիշը հասավ 87—105 ցենտների: Կապալով աշխատող 5 բրիգադում մեկ ցենտներ պտղի ինքնարժեքը կազմեց 12 ռուբլի 60 կոպեկ, այն դեպքում, երբ պլանը 28 ռուբլի 24 կոպեկ է: Միայն պտղաբուծությունից ստացված օգուտը կազմեց կես միլիոն ռուբլի: Մեծ չափով ավելացան նյութական խրախուսման ֆոնդը, աշխատողների վաստակը: Ձեռքի աշխատանքներ կատարողների ամսական միջին աշխատավարձն անցավ 246 ռուբլուց, իսկ տրակտորիստ-մեքենավարներինը՝ 375-ից: Այժմ տնտեսության բոլոր բուսաբուծական ստորաբաժանումներն աշխատում են կապալային-տնտհաշվարկային մեթոդով:

Աշխատանքի լավ ցուցանիշներ ունեն Էջմիածնի շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները: Կուսակցության շրջանային կոմիտեն, շրջանային ագրոարդյունաբերական միավորման խորհուրդը Հայկական գյուղատնտեսական ինստիտուտի տնտեսագետ-մասնագետների անմիջական մասնակցությամբ սկսեց կադրերի ուսուցումից, այդ ուղղությամբ ծավալվեց պլանավորված աշխատանք, կոնկրետ օրինակով ցույց տրվեցին կապալի և տնտեսական հաշվարկի առավելությունները, նոր թափ ստացավ կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը:

Ուժեղացվեց կուսակցական ազդեցությունը այդ գործում, յուրաքանչյուր բրիգադում ու ֆերմայում բարձրացվեց կազմակերպչական ու դաստիարակչական աշխատանքի մակարդակը, լրջորեն հոգ տարվեց ինչպես տնտեսական աշխատանքի գաղափարախոսական, այնպես էլ գաղափարախոսական աշխատանքի տնտեսական ապահովման մասին, կոնկրետ օրինակներով ցույց տրվեցին կապալի ու ներտնտեսային հաշվարկի առավելությունները:

Բրիգադներում, օղակներում ստեղծվել են կուսակցական խմբեր, հաստատվել են կուսկազմակերպիչներ: Ըստ ամենայնի կարևորելով տնտեսավարման նոր և առաջավոր մեթոդների համակողմանի արմատավորումը, կուսակցության շրջանային կոմիտեի նախաձեռնությամբ կոլեկտիվ կապալի ու տնտեսական հաշվարկի գծով գյուղատնտեսական ինստիտուտի Ոսկեհատի ուսումնափորձնական բազային տնտեսությունում կազմակերպվեց շրջանի բոլոր 44 տնտեսությունների ղեկավարների, մասնագետների, բրիգադավարների ու ֆերմայի վարիչների որակավորման բարձրացումը: Կատարված աշխատանքի արդյունքն է, որ 1986 թ. շրջանում գյուղատնտեսական ձեռնարկությունների 289 արտադրական ստորաբաժանումներից կապալով ու ներտնտեսային հաշվարկով աշխատում էր 254-ը կամ 88 տոկոսը: Անասնապահական 65 ֆերմաներից 51-ը աշխատում են տնտեսավարման այդ առաջադիմական մեթոդով: Ոսկեհատը պատահական չէ, որ վերածվել է բազային տնտեսության: Արդեն երրորդ տարին է, ինչ տնտեսությունն ամբողջովին անցել է կոլեկտիվ կապալի ու տնտեսական հաշվարկի: Այստեղ գյուղատնտեսության համախառն արտադրանքը անցած հնգամյակում, նախորդի համեմատությամբ, աճեց երեք անգամ: Կրկնակի բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը և բանվորների միջին աշխատավարձը:

Զգալիորեն բարձրացել է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը: Այսպես, հիմնական ապրանքային կուլտուրայի՝ խաղողի այգիների միջին բերքատվությունը 1971—75 թթ. կազմել է 15 ցենտներ, 1976—80 թթ.՝ 31, իսկ 1981—85 թթ.՝ 90 ցենտներ:

Առանձին բրիգադներ հասել են ավելի բարձր ցուցանիշների: № 4 բրիգադը, որը առաջինը ներդրեց կապալը և ներտնտեսային հաշվարկը, հեկտարից ապահովում է մինչև 280 ցենտներ խաղողի ստացումը: Դրական պետք է համարել այն, որ այդ ցուցանիշները ձեռք են բերվել միայն ինտենսիվ գործոնների հաշվին: Նկատելի են հաջողությունները անասնաբուծական մթերքների արտադրության ավելաց-

ման գործում: Յուրաքանչյուր կովի կաթնատվությունն անցել է 3400 կիլոգրամի սահմանագիծը: Կաթի արտադրությունը մեկ տարվա ընթացքում ավելացավ 20 տոկոսով: Աշխատանք է տարվում պետությանը վաճառվող խոշոր եղջերավոր անասունների միջին կենդանի քաշը 400 կիլոգրամի հասցնելու համար:

Այդ հաջողությունները հետևանք են այն բանի, որ տնտեսությունը սեփական արտադրության հաշվին ստեղծել է կերի կայուն բազա: Բարելավվել է տոհմային գործը, կառուցվել է տիպային կովանոց, որտեղ աշխատատար բոլոր գործողությունները մեքենայացված են: Կերախոհանոցում վերամշակվում և սննդարար տարրերով հարստացվում են կոշտ կերերը: Ներդրված են կապալը, ներտնտեսային հաշվարկը, անասնապահների վարձատրությունը և նյութական խրախուսումը կատարվում են վերջնական արդյունքից ելնելով: Պետք է նկատել, որ տարիներ շարունակ ետ մնացող այս տնտեսությունը բռնել է վերելքի ուղի, որովհետև տնտեսության ղեկի մոտ կանգնեցին բանիմաց, նախաձեռնող, քաղաքականապես հասուն կադրեր: Սովխոզի դիրեկտորը, տնտեսական գիտությունների թեկնածու Ս. Ղարիբյանը, գործն սկսեց մարդկանցից, լուծվեցին սոցիալական կարևոր հարցեր, որոնք մինչ այդ մղված էին հետին պլան: Վերակառուցվեց մշակույթի տունը, կառուցվեցին կուլտուր-կենցաղային նոր օբյեկտներ, բնակելի նոր տներ, անասնապահի տուն, հեռախոսային կայան, կոյուղի, ջրամատակարարման ցանց, ասֆալտապատվեցին գյուղի փողոցները և դաշտամիջյան գլխավոր ճանապարհները, փողոցները լուսավորվեցին էլեկտրական լամպերով: Վերափոխվեց, գեղեցկացավ գյուղը, կազմակերպվեց աշխատավոր գյուղացու կուլտուրական հանգիստը:

Տնտեսությունում նպատակասլաց ու արդյունավետ են օգտագործվում նյութական խրախուսման ֆոնդի միջոցները: Արդեն երկու տարի է, ինչ այդ ֆոնդի միջոցների հաշվին բանվորները դաշտում ընդմիջման ժամին անվճար տաք ճաշ են ստանում, տասնյակ ընտանիքների երեխաների մանկապարտեզի վարձ է վճարվում, լավագույն աշխատողներից շատերը կինոդիտման են հաճախում անվճար: Այդ ֆոնդի հաշվին պարբերաբար կազմակերպվում են աշխատանքի վետերանների մեծարման երեկոներ, երգի, բերքի և ծաղկի տոներ, «Ոսկե աշուն» տոնախմբությունը:

Պլանային առաջադրանքները, սոցիալիստական պարտավորությունները կատարելու շնորհիվ բանվորներն անվճար ստացել են իրենց արտադրած գյուղատնտեսական մթերքների 10—15 տոկոսը, անասնապահները, կթվորներն ու հորթապահները՝ մեկական հորթ: Գյուղատնտեսական աշխատանքների լավ կազմակերպման և աշխատաժամանակի արդյունավետ օգտագործման շնորհիվ տնտեսությունը 1985 թ. անցավ հնգօրյա աշխատանքային շաբաթի:

Սակայն շատ տեղերում կապալի չնախապատրաստված, ձևական ներդրման հետևանքով աշխատանքի արտադրողականությունը բարձրանում է աննշան չափով, իսկ վարձատրությունը աճում է բարձր տեմպերով, նույնիսկ գերազանցելով աշխատանքի արտադրողականության մակարդակը, այսինքն՝ ստացվում է օրինաչափության հակառակ պատկերը: Կապալի ներդրումը պահանջում է հիմնավորված ձևով սահմանել բրիգադների, ֆերմաների և մյուս ստորաբաժանումների տարեկան տնտհաշվարկային առաջադրանքները, մշակվող կուլտուրաների բերքատվության, անասունների մթերատվության սանդղակները, առաջադիմական աճող վարձաչափերը: Այս դեպքում աշխատանքի և դրա վարձատրության միջև ստեղծվում է ուղղակի կապ, վարձատրությունը կատարվում է վերջնական արդյունքների համար, բացառվում է աշխատանքի արտադրողականության և վարձատրության աճի միջև անցանկալի անհամամասնությունը, հետևապես վարձատրությունն, իրոք, նպաստում է աշխատանքի արդյունավետության բարձրացմանը:

Արտադրական նշանակության հետ մեկտեղ, կոլեկտիվ կապալն ունի նաև սոցիալ-հոգեբանական իմաստ: Նկատելիորեն փոխվում է մարդկանց վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ. ավելի ցայտուն են դրսևորվում մարդկանց այնպիսի լավագույն հատկանիշները, ինչպիսիք են ընկերական անշահախնդիր փոխօգնությունը, միաձույլ կոլեկտիվի ստեղծումը, կոլեկտիվ մտածողության ու վերահսկողության իրականացումը: Հանրապետության տարբեր շրջաններից կարելի է բերել բազմաթիվ օրինակներ, երբ կոլտնտեսություններն ու սովխոզներն առավելագույն վերջնական արդյունք են ապահովում այն դեպքում, երբ կոլեկտիվ կապալը, տնտհաշվարկը և ինտենսիվ տեխնոլոգիաները կիրառվում են համատեղ, որովհետև դրանք փոխա-



դարձաբար լրացնում են միմյանց և ուղղված են մեկ ընդհանուր նպատակի՝ հողատարածության միավորի հաշվով առավելագույն քանակությամբ արտադրանքի ապահովմանը, միավոր արտադրանքի հաշվով նվազագույն աշխատանքային և նյութադրամական ծախսումներ կատարելուն:

Տնտհաշվարկի բացակայության դեպքում նույնիսկ կապալով աշխատող բրիգադի, մեքենայացված ջոկատի, օղակի անդամները, ջանք չխնայելով առավել շատ արտադրանք ստանալու համար, պատշաճ ուշադրություն չեն դարձնում վառելանյութերի, քսանյութերի, կերերի, պարարտանյութերի, թունաքիմիկատների, պահեստամասերի, էլեկտրաէներգիայի խնայողության, ուղղակի և ընդհանուր արտադրական (նյութային) ծախսերի կրճատման, հետևապես արտադրանքի ինքնարժեքի իջեցման վրա: Հաշվենկատ տնտեսավարության շահերը պահանջում են, որ արտադրանքը թողարկվի էժան, ոչ միայն ապահովվի տնտեսությունների սոսկ ինքնարդարացումը, այլև ստացվի շահույթ, որի հաշվին իրականացվեն հետագա ընդլայնված վերարտադրությունը և աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացումը:

ՍՄԿԿ XXVII համագումարում ընդգծվեց, որ այժմ էապես բարձրանում է տընտեսական հաշվարկի դերը: Անցյալի փորձը ցույց է տվել, որ հատուցելիության սկզբունքների անտեսումը, աշխատանքների արդյունքների համար նյութական շահագրգռվածության ու պատասխանատվության խախտումը խիստ բացասաբար են անդրադարձել կոլտնտեսությունների ու սովխոզների ֆինանսատնտեսական դրության վրա: Իսկական տնտեսական հաշվարկը, վերջնական արդյունքներից ձեռնարկությունների եկամուտների կախվածությունը պետք է նորմ դառնան ագրոարդյունաբերական համալիրի բոլոր օղակների և առաջին հերթին՝ կոլտնտեսությունների ու սովխոզների համար:

Ինչպես ամեն մի մեծ գործում, այստեղ նույնպես խիստ կարևոր է մարդկային գործոնի դերը: Ուստի անհրաժեշտ է գյուղում չթուլացող ուշադրություն նվիրել սոցիալական պրոբլեմների լուծմանը, բարձրացնել դաշտում և ֆերմայում աշխատող մարդկանց ինչպես նյութական, այնպես էլ բարոյական շահագրգռվածությունը: Չէ որ առաջադիմության գլխավոր շարժիչը եղել է և կմնա մարդը: Անհրաժեշտ է ուժեղացնել յուրաքանչյուրի աշխատանքի վարձատրության կախումը վերջնական արդյունքների մեջ նրա անձնական ներդրումից, հետևողական աշխատանք կատարել բանվորների ու կոլտնտեսականների արտադրական որակավորման բարձրացման ուղղությամբ: Առանձնակի նշանակություն ունի տնտեսությունների ղեկավար կադրերի, հատկապես միջին օղակի և մասնագետների որակավորման բարձրացման գործը: Օրակարգի հարց է տնտեսություններում ատեստացիաների անցկացումը:

Կոլտնտեսություններում, սովխոզներում և միջտնտեսային ձեռնարկություններում տնտեսավարման տնտեսագիտական մեթոդների, իսկական տնտհաշվարկի, կոլեկտիվ կապալի ու ակորդային համակարգի, ինչպես նաև ինտենսիվ տեխնոլոգիաների ներդրման համար կարևոր նշանակություն ունի գյուղում տնտեսագիտական աշխատանքի մակարդակի ըստ ամենայնի բարձրացումը: Ուստի անհրաժեշտ է, որ ղեկավարները հոգ տանեն բազային կրթություն ունեցող կադրեր ունենալու և արտադրության զարգացման գործում նրանց դերն ու պատասխանատվությունը բարձրացնելու մասին: Այսօր, քան երբևէ, մեծ է գյուղի տնտեսագիտական ծառայության դերը: Տնտեսագետ կադրերը ղեկավար աշխատողների ու մասնագետների հետ պետք է մարդկանց մեջ ձևավորեն տնտեսագիտական մտածողություն, նրանց զինեն տնտեսական հաշվարկի, կոլեկտիվ կապալի, աշխատանքի վարձատրության ակորդապարգևատրային համակարգի և ինտենսիվ տեխնոլոգիաների էության ու հիմնական սկզբունքների իմացությամբ:

ՍՄԿԿ Կենտկոմի Քաղաքական զեկուցման մեջ ընկ. Մ. Ս. Գորբաչովը նշեց, որ «այսօր գյուղատնտեսությանը, ինչպես երբեք, հարկավոր են այնպիսի մարդիկ, որոնք շահագրգռված լինեն աշխատելու ակտիվորեն, պրոֆեսիոնալ բարձր վարպետությամբ, նորարարական ջիղով»:

Հաշվի առնելով, որ կոլեկտիվ կապալը և տնտեսական հաշվարկը գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման կարևորագույն գործոններ են, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը 1986 թ. մարտի 20-ի «Երկրի ագրոարդյունաբերական համալիրի տնտեսավարման տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման մասին» որոշմամբ ՍՍՀՄ պետագրոարդի

և նրա տեղական մարմինների առջև խնդիր են դրել կարճ ժամանակամիջոցում կազմակերպել գյուղատնտեսական, վերամշակող և մյուս ձեռնարկությունների բոլոր արտադրական ստորաբաժանումների փոխադրումը կոլեկտիվ կապալի ու տնտեսական հաշվարկի պայմաններին:

Աշխատանքի արտադրողականության բարձրացման, աշխատանքի կազմակերպման ու վարձատրության առաջադիմական ձևերի և տնտեսավարման տնտեսագիտական մեթոդների ներդրմանն է ուղղված «Գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը աշխատանքի կազմակերպման ռացիոնալ ձևերի ու տնտհաշվարկի ներդրման հիման վրա բարձրացնելու անհետաձգելի միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1986 թ. դեկտեմբերին ընդունած որոշումը: Որոշման մեջ նշված է, որ ներկայումս գյուղում ստեղծված արտադրական-տնտեսական իրադրությունը, հողագործության և անասնաբուծության համալրողմանի ինտենսիվացումը բարենպաստ նախադրյալներ են ստեղծել վճռականորեն և ամենուրեք տնտեսավարման նոր մեթոդների անցնելու, գյուղի աշխատավորների արտադրական ակտիվությունը զարգացնելու համար: Վերջին տարիների պրակտիկան ցույց է տալիս, որ դա ամենից լավ իրացվում է արտադրության բոլոր մակարդակներում լիովին տընտհաշվարկային հարաբերությունների անցնելիս, կոլեկտիվ կապալ և ինտենսիվ տեխնոլոգիաներ ներդնելիս: ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն կուսակցական, սովետական մարմինների, ագրոարդյունաբերական համալիրի, ինչպես նաև տնտեսությունների ղեկավարներին պարտավորեցրել է արմատապես բարելավել գյուղատնտեսական արտադրության բոլոր օղակներում տնտհաշվարկն ու կոլեկտիվ կապալը ինտենսիվ տեխնոլոգիաների զուգակցմամբ լայնորեն ներդնելու կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը, կոնկրետ միջոցառումներ մշակել բոլոր հիմնական արտադրական ստորաբաժանումները տնտհաշվարկի ու կոլեկտիվ կապալի փոխադրելու համար, այդ նպատակով ստեղծելով անհրաժեշտ օբյեկտիվ նախադրյալներ:

---

# ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԳՈՐԾՈՆՆԵՐԸ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

**Ս. ԴԱԼԼԱՔՅԱՆ**
**Ինժեներ**
**Ռ. ՊԵՏՐՈՍՅԱՆ**
**Տնտեսագիտության թեկնածու**

ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ արդի փուլում բնորոշը սոցիալիստական էկոնոմիկայի փոխադրումն է զարգացման ինտենսիվ ուղու վրա, գիտատեխնիկական առաջադիմության տեմպերի արագացումը: Այդ դրույթն իր արտացոլումը գտավ ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան (1985 թ.) պլենումի որոշումներում: ՍՄԿԿ XXVII համագումարն ամբողջ որոշակիությամբ հաստատեց այդ դրույթի ճշմարտացիությունը և ընդգծեց, որ տեխնիկական առաջադիմության գլխավոր ուղին մեքենաշինության և նրա առաջնային ուղղությունների, հատկապես՝ հաստոցաշինության, սարքաշինության, հաշվողական տեխնիկայի, էլեկտրոնիկայի, էլեկտրատեխնիկայի զարգացումն է: Երբ խոսում ենք այդ մասին, ապա նկատի ունենք նաև կառավարման, պլանավորման, կառուցվածքային քաղաքականության, տնտեսական մարմինների գործունեության ձևերի ու մեթոդների բարելավման անհրաժեշտությունը, ինչ որ տեղ էլ վերակառուցումը: Նախատեսվում է ուժեղացնել աշխատավարձի խթանող դերը գիտատեխնիկական առաջադիմության արագացման գործում, բարձրացնել մասնագետների շահագրգռվածությունը՝ աշխատանքները կատարելու փոքր թվաքանակով: Գիտատեխնիկական առաջադիմության արագացման համար մեծ նշանակություն են ձեռք բերում արտադրության նյութատարության նվազեցման խնդիրները: Ժողովրդական տնտեսության զարգացման արդի պայմաններում, երբ կուտակվել է հսկայական տնտեսական պոտենցիալ, և ամեն տարի հասարակական արտադրության մեջ են ընդգրկվում վիթխարի քանակությամբ նյութատեխնիկական ռեսուրսներ, դրանց արդյունավետ օգտագործումը կուսակցության տնտեսական քաղաքականության կարևոր խնդիրներից է:

ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների պահանջների լույսի ներքո առավել հրատապություն է ստանում առանց էական ծախսերի արտադրության մասշտաբների աճի և արտադրանքի որակի բարձրացման ներքին ռեզերվների բացահայտման գիտական հետազոտությունների և ուղղությունների մշակումը. այսինքն՝ այն հետազոտությունները, որոնք ուղղված են ամբողջ երկրի և առանձին միավորումների ու ձեռնարկությունների արտադրական պոտենցիալի օգտագործման բարելավմանը, կառավարման ավտոմատացված համակարգերի հետագա զարգացմանը և կիրառմանը:

Միաժամանակ, տեսանելի հեռանկարում, արտադրության գործընթացի սկըզբունքային առանձնահատկությունները հազիվ թե թույլ տան անցնելու ավտոմատացված արտադրության: Յուրաքանչյուր արտադրական պրոցեսի և, մասնավորապես, ավտոմատացման դիսկրետ միջոցների (ԱԴՄ) հիմքում ընկած է էրգատիկ արտադրական պրոցեսը, որն իր մեջ ներառում է տեխնոլոգիական և հսկող անձնակազմը, որոնք համատեղ գործում են լայն դասի ավտոմատ, կիսաավտոմատ հարմարանքների, գործիքների և տեխնոլոգիական սարքավորումների հետ:

Բարձր մակարդակների և, որ կարևոր է, որակի ապահովումը, նրա կայունությունը, ԱԴՄ արտադրության պայմաններում, հնարավոր է, երբ անցնում է կատար-

վում ավտոմատացված ճկուն արտադրական համակարգերի (ԱՃԱՀ): Սակայն, եթե արտադրության ավտոմատացումը, ԱԴՄ տարրային բազան արդեն ներկայումս իրողություն է դարձել, ապա հավաքման պրոցեսները դեռևս մնում են էրգատիկ, այսինքն՝ կախված են համակարգում աշխատող մարդկանցից: Այդ փաստը, որն առաջիկա 10—15 տարում լրիվ չափով չի տեղայնացվելու, արտադրական պրոցեսների վրա ունենալու է էական ազդեցություն, որը կարող է հասկացվել երկակի իմաստով: Առաջին, պրոցեսի էրգատիկ ազդեցությունը արտադրանքի որակի վրա կարող է լինել բացասական, քանի որ սուբյեկտիվ գործոններն օժտված են տարբերակայնության բարձր մակարդակներով և չեն կարող բավականին ճշգրիտ կանխատեսվել, որպեսզի ձևավորվի արտադրության կառավարման համապատասխան համակարգ: Երկրորդ, պրոցեսի էրգատիկության ազդեցությունը արտադրանքի որակի վրա կարող է դրական լինել, քանի որ բավականին բարձր պրոֆեսիոնալությամբ աշխատող և ճիշտ ընտրված կառավարման ներգործություններն ընդունակ են բացահայտելու աշխատանքի արտադրողականության և արտադրանքի որակի բարձրացման էական ռեզերվները՝ առանց արտադրության տեխնոլոգիայի փոփոխության: Նման մոտեցումը ձեռքի աշխատանքից ԱՃԱՀ առավել ընդունելի է, քանի որ հնարավորություն է ընձեռում կատարելագործել արտադրությունը և, ազատելով կարողությունները, թույլ տալ անցնելու ԱՃԱՀ-ի առանց արտադրանքի թողարկման կրճատման և նրա որակի իջեցման՝ հաջորդաբար, ըստ ենթահամակարգերի:

Այսպիսով, էրգատիկ համակարգերում տեխնիկական հարմարանքների լայն շրջանակի հետ միասին աշխատում է մարդ-օպերատորը: Ավտոմատացումը, մարդուն դուրս մղելով անմիջական միջավայրի (օբյեկտի) վրա ներգործելու հնարավորությունից, համակարգի հիերարխիայի ավելի բարձր մակարդակներում երբեմն նրա վրա է դնում շատ էական ծանրաբեռնվածություն: Այստեղ ամբողջ էրգատիկ համակարգի օպտիմալ կառուցման հետ կապված՝ ծագում են մի շարք հարցեր:

Մարդ-օպերատորի մասնակցությունը համակարգին կանխորոշում է սոցիալ-հոգեբանական բնույթի որոշակի գործոնների առկայությունը, որոնց հաշվառումը և վերլուծությունը անհրաժեշտ են համակարգի օպտիմալ կառուցվածքի ստեղծման համար: Սոցիալ-հոգեբանական գործոնների հաշվառման ու վերլուծության արդյունքների հիմնավորումը և ճիշտ օգտագործումը կարող են առանց բուն տեխնոլոգիական սխեմայի վերակառուցման հանգեցնել աշխատանքի արտադրողականության ու որակի զգալի բարձրացման: Վերջին հանգամանքը խիստ էական է, քանի որ շատ դեպքերում արտադրության կազմակերպման և արտադրանքի որակի կառավարման օբյեկտ է համարվում կարգավորված տեխնոլոգիական սխեմայով արտադրությունը, որը կոնկրետ արտադրական իրադրությունում ծայրահեղորեն անցանկալի է խախտել: Այս տեսանկյունից մարդ-օպերատորի գործունեության սոցիալ-հոգեբանական գործոնների հաշվառման և վերլուծության բնագավառում ռեզերվները բավականին մեծ են և հեռանկարային: Այդ դրույթը մատնանշվեց ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան (1985 թ.) պլենումի կողմից առաջ քաշված կարևոր սոցիալ-տնտեսական խնդիրների շարքում, որտեղ նշվեց. «Համեմատաբար արագ հատույց կարելի է ստանալ, եթե գործողության մեջ դրվեն կազմակերպական-տնտեսական ու սոցիալական ռեզերվները և, առաջին հերթին, ակտիվացվի մարդկային գործոնը, հասնենք այն բանին, որ յուրաքանչյուրն իր տեղում աշխատի բարեխղճորեն և լիակատար հատույցով»:

Սակայն արտադրության պրակտիկայում սոցիալ-հոգեբանական գործոնները անբավարար են բացահայտված, առավել ևս, անբավարար են օգտագործվում, թեև կան բավականին մշակված տեսություններ, որոնց օգնությամբ, սոցիալ-հոգեբանական գործոնների միջոցով, լուծվում են աշխատանքային գործունեության խթանման, որակի և արտադրության արդյունավետության կառավարման մասնակի խնդիրներ: Ըստ որում այդ մշակումները սիստեմավորված և հասցված չեն մինչև ստանդարտ լուծումների և, այնպիսի մակարդակի, որի դեպքում նրանք կկարողանան կիրառվել բազմազան արտադրական համակարգերում:

Տնտեսագիտության կարևոր խնդիրն է նշված մշակումները հասցնել մինչև ստանդարտ լուծումների մակարդակի՝ մշակելով արտադրական պրոցեսներում նրանց օգտագործման կոնկրետ հանձնարարականներ:

Համակարգի պարամետրերի և ցուցանիշների որոշման ժամանակ կարևոր դեր է պատկանում ժամանակակից և հեռանկարային հետազոտությունների կարևոր մե-



խանիզմներից մեկին՝ մոդելավորմանը: Սակայն համակարգի մոդելավորումը՝ հաշվի առնելով նրանում մարդկանց մասնակցությունը, մշակված է անբավարար ճշտությամբ և, որ գլխավորն է, դեռևս այն զրկված է կիրառման անհրաժեշտ համապարփակությունից: Դա հիմնականում բացատրվում է այն բանով, որ նման տեսակի էրգատիկ համակարգեր ինտենսիվորեն ուսումնասիրվում են ինժեներական հոգեբանության շրջանակներում, սակայն զգալիորեն քիչ չափով արտադրական համակարգերի գործնական ձևավորման շրջանակներում: Իսկ ինչ վերաբերում է արտադրանքի որակի և աշխատանքի արդյունավետության բարձրացման ռեզերվների բացահայտմանը, ապա այս ուղղությամբ էրգատիկ արտադրական համակարգերի ուսումնասիրությունները զարգացել են անբավարար ինտենսիվությամբ: Դա պայմանավորված է օբյեկտիվ պատճառներով՝ ռեալ արտադրական պայմաններում փորձի անցկացման դժվարություններով, բաշխման առանձնահատուկ օրենքներին համաձայն պատահական թվերի առաջացման մշակված ալգորիթմների պակասով և այլն:

Էրգատիկ համակարգերի գործունեության համար զգալի նշանակություն ունեն լարվածության և մոտիվացման հասկացությունները: Համակարգի գործունեության ռեժիմի փոփոխությունը կարող է հանգեցնել լարվածության, այսինքն՝ համակարգի այնպիսի դրության, որը բնութագրվում է գործունեության իրականացումն ապահովող մարդ-օպերատորի օրգանիզմում ֆիզիոլոգիական և հոգեբանական պրոցեսների ինտենսիվությամբ ու որակական յուրօրինակությամբ: Ըստ որում՝ տարբերվում են մարդ-օպերատորի գործառնական լարվածությունը կամ նրա տեսակը՝ տեմպային լարվածությունը, հուզական լարվածությունը և մարդ-օպերատորին ոչ բնորոշ լարվածությունը:

Գործառնական լարվածությունը գործունեության կառուցվածքի հատկություններով (էրգատիկ պրոցեսի գործառույթների ամբողջության իրականացման տարածքային-ժամանակային կազմակերպմամբ) պայմանավորված մարդ-օպերատորի լարվածությունն է: Գործառնական լարվածությունը կարող է ծագել աշխատանքի ոչ արդյունավետ կազմակերպման կամ աշխատատեղի սխալ ընտրության պատճառով: Տեմպային լարվածությունը մարդ-օպերատորի էրգատիկ պրոցեսում գործառույթների կատարման համար նրա տրամադրության տակ գտնվող ժամանակով պայմանավորված լարվածությունն է: Հուզական լարվածությունը մարդ-օպերատորի պատճառաբանությամբ և արդյունքների սուբյեկտիվ գնահատումով ու գործունեության բարդությամբ պայմանավորված լարվածությունն է: Մարդ-օպերատորին ոչ բնորոշ լարվածությունը պայմանավորված է նրա վրա ազդող արտաքին միջավայրի գործոններով և կատարվող գործունեության տևողությամբ: Լարվածության բոլոր տեսակները այս կամ այն կերպ պայմանավորված են էրգատիկ համակարգի գործունեության ռեժիմի փոփոխմամբ կամ արտաքին ներգործությամբ: Այսպես, տեմպային լարվածությունն իր հերթին կարող է պայմանավորել հուզական ոչ-բնորոշ գործառնական և այլ լարվածություններ:

Արտադրանքի պատրաստման լարվածություն ասելով հետագայում պետք է հասկանալ աշխատանքի տեմպի այնպիսի հարաբերակցություն, որի ժամանակ աշխատողը չի փորձարկում հուզական լարվածություն՝ կապված տեխնոլոգիական գործառույթների կատարման ժամանակի պակասությամբ և աշխատանքի տեմպով, որի դեպքում զգացվում է ժամանակի պակաս: Վերջինս օժտված է աշխատանքային գործողությունների կատարման բնույթի վրա ազդելու հատկությամբ: Եթե ժամանակի պակասը ցածր է սահմանայինից, ապա աշխատողն զգում է հուզական լարվածություն, որը դրականորեն է ազդում նրա աշխատանքի արդյունավետության վրա: Ըստ որում աշխատողը կատարում է քիչ սխալներ, աշխատում է ավելի հավաքված, չի կատարում ավելորդ գործողություններ, նրա ուշադրությունը կենտրոնացված է միայն աշխատանքի կատարման վրա: Եթե ժամանակի պակասը հավասար է սահմանայինին կամ գերազանցում է նրան, ապա աշխատողը գործնականում չի հասցնում կատարել աշխատանքային գործողությունները առանց սխալների, որոնք աճում են սահմանայինից հետո ժամանակի պակասության աճի չափից և, վերջապես, վրա է հասնում արտադրական պրոցեսի խափանումը: Եթե ժամանակի պակասը զգալիորեն ցածր է սահմանային մակարդակից, ապա տված թվով աշխատանքային գործառույթների համար առանձնացված ժամանակը ավելի շատ է, քան այն հարկավոր է: Այս դեպքում աշխատանքը դառնում է միապաղաղ, պակաս արդյունավետ, և արտադրական պրոցեսում առաջանում են ժամանակային «պատուհաններ»:

Աշխատանքային պրոցեսի ռացիոնալ պլանավորումը նշանակում է, որ վերջինս ձևավորվում է այն գործառություններից, որոնք կատարվում են որոշակի մակարդակի լարվածությամբ, սակայն տարբերվում են սահմանայինից: Լարվածության սահմանային մակարդակի բուն նշանակությունը որոշվում է փորձնական եղանակով, սակայն ընդունված է հաշվել, որ այն գտնվում է աշխատանքի սովորական տեմպի կրկնապատկման սահմաններում:

Լարվածության ռեզերվ ունենալ նշանակում է աշխատանքային տեմպի բարձրացման ռեզերվի առկայությունը, իսկ դա էլ իր հերթին հնարավորություն է տալիս պլանավորել աշխատանքային պրոցեսների ինտենսիվացումը, որը միշտ տեղի ունի, երբ կիրառվում է աշխատանքի մրցման ռեժիմ, երբ փոփոխվում են արտադրական իրադրությունները և այլն:

Լարվածության փոփոխությունը հանգեցնում է աշխատանքային գործողությունների կառավարման վերակառուցման: Դա նշանակում է, որ աշխատանքի լարվածության աճի պայմաններում փոփոխվում են տեխնոլոգիական գործառությունների որոշակի բնութագրերը, որոնք պետք է հաշվի առնվեն վիճակագրական հաշվարկներում և գնահատումներում:

Ժամանակի պակասությունն անխուսափելիորեն գործողության է կոչում մարդ-օպերատորի մոտիվացմամբ որոշվող նոր գործոններ: Մոտիվացումը հուզածին գործոն է, որը բարելավում է օպերատորի գործունեության քանակական բնութագրերը: Այն կապված է այնպիսի հասկացությունների հետ, ինչպիսին են պատասխանատվությունը կատարվող աշխատանքի և նրա որակի համար: Իր հերթին որակական կատարումը ներառում է արտադրության մեջ մրցության առկայությունը, պրոֆեսիոնալ մակարդակը և նրա կատարելագործման հնարավորությունը, կադրերի հոսունությունը, աշխատանքային կոլեկտիվի կայունությունը, միատարրությունն ու աշխատանքի խթանման տարբեր եղանակները:

Մարդ-օպերատորի վրա տեմպային լարվածության ներգործությունը տարածվում է ոչ միայն էրգատիկ պրոցեսների վրա, այլ նաև տարրական ակտերի վրա, որոնցից կախված է օպերատորական գործողությունների հաջորդականությունը: Այսպես, մինչև ժամանակի պակասության սահմանային վիճակը մոտիվացման գործողությունները հանգեցնում են շարժումների տնտեսման, այսինքն՝ տվյալ գործառության միայն էական տարրական ակտերի կատարման: Վերջիններս իրենց հերթին հանգեցնում են գործառության օպերացիայի ժամանակի նվազմանը և տված ժամանակահատվածում նրա ճիշտ իրականացման հավանականության բարձրացմանը:

Մոտիվացման բարձր մակարդակի դեպքում կազմալուծումը վրա է հասնում ժամանակի ավելի քիչ պակասության դեպքում, որի հաշվին էլ օպերատորական աշխատանքի որակը կարող է նույնիսկ վատանալ: Այս դեպքում տեղի է ունենում, կարծես թե, հուզական լարվածության սահմանային տեղաշարժ:

Արտադրական կազմավորումների գործունեության կայունությունը բնութագրող սոցիալ-հոգեբանական գործոնները կարելի է ներկայացնել հետևյալ անվանացանկի տեսքով. աշխատողի տարակարգը, ընդհանուր ստաժը, ստաժը տվյալ ձեռնարկությունում, տվյալ վայրում, տարիքը, կրթությունը:

Հիշյալ անվանացանկը ավարտուն չէ, և, բնականաբար, կարող է լրացվել, բայց նշված գործոնները բավական են հետազոտությունների անցկացման համար և կազմավորման մոտիվացման ներգործության հնարավորությունները բացահայտելու՝ ենթահամակարգի և դրա կառուցվածքի արդիականացման հանձնարարականներ մշակելու համար:

Քննարկենք փորձերի անցկացման ժամանակ օգտագործվող մոտիվացման տեսակները՝ այն դիտարկելով որպես աշխատանքի և արտադրանքի որակի խթանման գործոն: Ուսումնասիրման համար ընդգրկվել են խթանման գործող տեսակները (աշխատավարձի առաջադիմական-պարգևատրական համակարգը), արտադրամասերի մրցությունը, արտադրամասի սահմաններում մրցման ռեժիմի արմատավորումը, աշխատանքի կազմակերպման բրիգադային մեթոդի ներդրումը, բրիգադի շրջանակներում մրցությունը, կադրային աշխատողներով բրիգադի ձևավորումը:

Նախնական ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ յուրաքանչյուր մոտիվացիոն (արդյունավետ աշխատանքը խթանող) միջոցառմանը կարող է համապա-



տասխանության մեջ դրվել դրա գործակցի արժեքը: Իսկ որքան ցածր է այդ գործակցի արժեքը, այնքան բարձր է միջոցառման մոտիվացման մակարդակը:

Տեխնոլոգիական և հսկման գործառնությունների լարվածության պարզ ավելացումը առանց մոտիվացման փոփոխման հանգեցնում է աստիճանական խափանման (թեև սկզբում կրճատում է գործառությունների կատարման և, համապատասխանաբար, նաև ամբողջ պրոցեսի կատարման տևողությունը), քանի որ ժամանակի անբավարարության գործոնները կապված են մարդու ֆիզիոլոգիական հնարավորությունների հետ: Իսկ երկու պարամետրերի (լարվածությունը և մոտիվացիան միաժամանակ) գնահատումը և կարգավորումը թույլ են տալիս ավելի մեծ սահմաններում փոխել գործառության և ամբողջ պրոցեսի կատարման ժամանակը: Այստեղ առկա են տեխնոլոգիական և հսկման գործառությունների ժամանակային բնութագրերի կրճատման խոշոր ռեզերվներ:

Նշված մեթոդիկան կիրառվել է «Հայէլեկտրաապարատ» արտադրական միավորումում: Անցկացվել է մոտիվացման գործակիցների արժեքների վերլուծություն, որը հնարավորություն տվեց եզրակացություն անելու հսկման և արտադրական գործողությունների մյուս տեսակների արդյունավետության բարձրացման նպատակով մոտիվացման բնութագրերով օժտված սոցիալ-հոգեբանական գործոնների օգտագործման լայն հնարավորությունների մասին: Դա հատկապես կարևոր է աշխատանքային ռեսուրսների սահմանափակության պայմաններում, երբ աճում է հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման ինտենսիվացման դերը: Նման դեպքերում ներքին ռեզերվների (տեխնիկական և կազմակերպական բնագավառներում) բացահայտումն ունի ավելի կարևոր նշանակություն և օժտված է բարձր արդյունավետությամբ, քան թե արտաքին ռեսուրսների օգտագործումը:

Կատարված հետազոտության հիման վրա «Հայէլեկտրաապարատ» միավորումում մշակվել են նոր կոնվեյերի պարամետրերը, որոնք հնարավորություն են տալիս կառավարել նրա ռիթմը և արդյունքում ստեղծել նախադրյալներ աշխատանքի արտադրողականության և թողարկվող արտադրանքի որակի բարձրացման համար: Ընդ որում, օպերատոր-հսկիչների թվաքանակը 10-ից իջեցվել է 6-ի, հսկման սխալները, միջին հաշվով, կրճատվել են 2, հսկման ենթամակարդակի արտադրողականությունը բարձրացել է 3,1 անգամ, նոր կոնվեյերի ռիթմը փոփոխական է (0-ից մինչև 50 մ/րոպե), որը հնարավորություն է տալիս լայն սահմաններում ճշգրտել լարվածության մակարդակները և դրանով իսկ կարգավորել հուզածին գործոնների ազդեցության հետ կապված ցուցանիշները, մոտիվացման մտցնելը թույլ է տալիս նվազեցնել տեխնոլոգիական գործառությունների սխալները և դրանով իսկ կրճատել խոտանը, արտադրանքի պլանային թողարկումն իրացվում է առանց տեխնոլոգիական պրոցեսի փոփոխության:

Դրա հետ մեկտեղ անհրաժեշտ է նշել, որ եթե լարվածության գործոններն ազդում են տվյալ ժամանակահատվածում, ապա պատճառաբանության գործոնները գործում են ավելի երկարատև: Մոտիվացման գործոնները էականորեն ազդում են համակարգի պարամետրերի կայունացման վրա, քանի որ խթանող միջոցառումները միաժամանակ ազդում են բոլոր աշխատողների վրա, բայց հաճախ՝ ոչ նույն չափով: Աշխատողների անհատական հատկանիշներով պայմանավորված ազդեցության այդ անհամաչափությունը կարող է բերել մի բրիգադի ներսում աշխատողների նպատակների բաժանմանը, որն իր հերթին անմիջականորեն դրսևորվում է աշխատանքի արտադրողականության նվազման մեջ: Ուստի, մեր կարծիքով, հատկապես կարևոր է ապահովել աշխատողների պրոֆեսիոնալ համապատասխանությունը (ծայրահեղ դեպքում մի բրիգադի ներսում), որը, բնականաբար, թույլ կտա մոտեցնել նրանց վրա ազդող պատճառական գործոնների ներգործության արդյունքները:

«Հայէլեկտրաապարատ» արտադրական միավորումում մենք կատարել ենք նաև հետևյալ ուսումնասիրությունը: Աշխատողների պրոֆեսիոնալ շահերի համապատասխանությունը բացահայտելու համար քննարկվել են մի քանի բրիգադների աշխատանքների արդյունքները: Համապատասխանության այդ գնահատականն իրականացվել է այնպիսի գործոններով, ինչպիսիք են տարիքը, որակավորումը, կրթությունը, աշխատանքի որակը և այլն: Ըստ որում օգտագործվել է գնահատումների բալային համակարգը՝ կիրառելով համապատասխանության գործակիցները, որոնք

փոփոխվում են 0 մինչև 1: Որքան համապատասխանության գործակիցը մոտ է մեկին, այնքան պրոֆեսիոնալ շահերի տեսակետից համապատասխան է ձևավորվել բրիգադը: Այնուհետև եղած բրիգադների հիման վրա ձևավորվել է նոր կազմով բրիգադ, հաշվի առնելով համապատասխանության պահանջները (նոր բրիգադի համապատասխանության գործակիցը 0,6 բարձրացել է մինչև 0,9): Հին ու նոր կազմով բրիգադի գործունեության համեմատական վերլուծության արդյունքները ցույց են տվել, որ նոր կոնվեյերի վրա արտադրանքի թողարկումը 82 մարդու փոխարեն իրականացվում է 51 մարդուց բաղկացած բրիգադի ուժերով, արտադրանքի պիտանիության գործակիցը աճել է 22,6 տոկոսով, բարձրացել է տեխնոլոգիական գործառնությունների սխալների, ինչպես նաև լարվածության փոփոխության մոտիվացիոն ազդեցությունը:

Սոցիալական գործոնների ակտիվացման արտադրության կառավարման քննարկված մեթոդիկան մշակվել է Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտում՝ ստանդարտացման համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի (ք. Մոսկվա) հետ համատեղ, բարձր արդյունավետությամբ ներդրվել է նաև Արզամասի սարքաշինական արտադրական միավորումում:

Այսպիսով, արդյունաբերական մասշտաբով առաջին անգամ արտադրանքի որակի և արտադրական համակարգի արդյունավետության կառավարման ժամանակ որպես կառավարող ազդանշաններ հրացվել են մոտիվացման գործոնների ճշգրտող ազդեցությունները:

Ինչպես տեսանք, աշխատանքի կազմակերպման վերը շարադրված մեթոդն ունի ոչ միայն արտադրական, այլև հասարակական կարևոր նշանակություն: Այն կիրառելի է ինչպես արդյունաբերության մեջ, այնպես էլ մարդկային գործունեության մյուս բնագավառներում և հնարավորություն է տալիս բացահայտելու մարդու ներքին ռեզերվների պոտենցիալ մեծ ուժը, դրանք ծառայեցնելու ի շահ հասարակության և իրեն՝ անհատի:

Երկրում իրականացվող վերակառուցումը, նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում, շարժման մեջ է դրել հասարակության բոլոր ուժերը: Մարդկային գործոնը դարձել է վճռականը էկոնոմիկայում: Բարձրանում է աշխատավորների ակտիվությունը արտադրության կառավարման ոլորտում, անհրաժեշտ պայմաններ են ստեղծվում, որպեսզի յուրաքանչյուրն իր աշխատատեղում մշտապես հոգա արտադրության կատարելագործման ու ռացիոնալ տնտեսավարման համար:

# ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ՏՈՒՖԸ՝ ՄԵՐ ԲՆԱԿԱՆ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆԸ

**Գ. ՆԻԿՈՂՈՍՅԱՆ**
*ՀՍՍՀ պետպլանի ԷՊԳՀ ինստիտուտի բաժնի վարիչ, տնտեսագիտության թեկնածու*

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆ արդի փուլում պահանջվում է ապահովել երկրի հանքային և հումքային ռեսուրսների պաշարների ավելացման նպատակով տարվող աշխատանքների ընդլայնում: Ընդ որում անհրաժեշտ է ելնել հատկապես անվերականգնելի ռեսուրսների լրիվ և արդյունավետ օգտագործման անհրաժեշտությունից: ՍՄԿԿ XXVII համագումարն ընդգծեց, որ դա գործնականում վերաբերում է բոլոր տեսակի ռեսուրսներին՝ լինի այն անտառ թե հանքանյութ, հող թե ջուր, շինանյութ թե այլ հանածո: Նորովի պետք է մոտենալ նաև ամբողջությամբ վերցված արդյունահանող ճյուղերին, որոնց բաժին է ընկնում կապիտալ ներդրումների գերակշռող մասը: Բայց չէ որ հումքի նկատմամբ պահանջը մշտապես աճում է: Այդ խնդրի հրատապությունը կարևորվում է նրանով, որ խոսքը վերաբերում է անվերականգնելի հարստություններին:

ՍՄԿԿ XXVII համագումարին տրված Քաղաքական զեկուցման մեջ նշվում է, որ նյութական ռեսուրսների տնտեսումն արդի պայմաններում դառնում է արտադրության հետագա զարգացման կարևոր միջոց:

Այնուամենայնիվ, շատ տեղերում վատ է կազմակերպվում երկրորդային նյութերի վերամշակումը, այդ նպատակով չեն ստեղծվում մասնագիտացված արտադրահզորություններ, որի հետևանքով կրկնակի օգտագործման համար պիտանի միլիոնավոր տոննա հումքը դեն է նետվում՝ շարքից հանելով զգալի հողատարածություններ և վնաս հասցնելով շրջակա միջավայրին: Դա վերաբերում է հատկապես տուֆին և մյուս հազվագյուտ շինանյութերին, որոնք դասվում են մեր հանրապետության հիմնական բնական հարստությունների շարքը: Տուֆի հումքի բազայի վրա արդեն մի քանի տասնամյակ է, ինչ գործում է շինանյութերի զարգացած արդյունաբերություն, որն ունի միութենական նշանակություն:

Տուֆը հնագույն ժամանակներից օգտագործվել է որպես շինաքար: Հայաստանի տարածքում պահպանվել են ճարտարապետական և պատմական բազմաթիվ տուֆակերտ հուշարձաններ, կամուրջներ, խաչքարեր, տապանաքարեր, որոնք մեծ հետաքրքրություն են ներկայացնում: Այդ հուշարձանների երկարակեցության մասին են վկայում Էջմիածնի մոնումենտալ մայր տաճարը (301—303 թթ.), Արշակունիների դամբարանը (347 թ.), Գոշավանքը, Զվարթնոցը, Հաղպատը, Օհանավանքը, որոնց տարիքը հաշվվում է դարերով:

Տուֆը հրաբխային ծագում ունեցող ապար է՝ մեկից մինչև քսան մետր շերտերով: Այն աչքի է ընկնում տեխնիկատնտեսական բարձր հատկանիշներով՝ փոքր ծավալային քաշով ու ամրությամբ, ջերմության և ձայնի անթափանցելիությամբ, տեսքով ու գույների մեծ բազմազանությամբ, դյուրին մշակելիությամբ, արդյունահանման և վերամշակման լավագույն հատկություններով:

Տուֆերը սփռված են հանրապետության վեց տնտեսական գոտիներում, սակայն հիմնական հանքավայրերը գտնվում են Շիրակի սարահարթում՝ Արագած լեռան ստորոտին: Դրանց պաշարները մեծ են և արդյունավետ ու կոմպլեքսային արդյունահանման դեպքում մեր հանրապետությունը կարող է դառնալ երեսպատման

նյութերով երկրի խոշոր մատակարարը: Արտադրանքի որոշ մասը կարելի է նաև արտահանել: Այս առնչությամբ զարմանք է հարուցում այն իրողությունը, որ դեռևս մանրակրկիտ հետազոտված չեն Կոշ—Ծամիրամի, Բյուրականի, ինչպես նաև Թալին—Մաստարայի հանքավայրերը: Դրանք չեն կարող յուրացվել նաև առաջիկա տարիներին մերձակա երկաթգծերի բացակայության պատճառով:

Ֆիզիկամեխանիկական և քարաբանական հատկանիշներով մեր տուֆը բաժանվում է հինգ կարգի՝ երևանյան, բյուրականյան, ֆելզիտային, Անիի և Արթիկի: Վերջինիս բազայի վրա գործում է հանրապետության ծանր արդյունաբերության առաջնեկներից մեկը՝ «Արթիկ-տուֆ» ձեռնարկությունը, որը ներկայումս վերակառուցվում և ընդլայնվում է: Արդեն մի քանի տարի է, ինչ այստեղ գործում է հանքավայրերի թափոնները վերամշակող արհեստական խոշոր տուֆաբլոկների գործարան, որը տալիս է 250 հազար խոր. մետր արտադրանք: Ձեռնարկությունը թողարկում է հավաքովի տարրեր, պատի բլոկներ, երեսպատման սալիկներ: Այդ արտադրանքը հիմնականում կիրառություն է գտնում արդյունաբերական, քաղաքային և գյուղական շինարարության մեջ: Այն մեծ պահանջարկ ունի Մոսկվայի, Լենինգրադի, Կիևի, Տաշքենդի և երկրի մյուս քաղաքների շինարարների մոտ: Տուֆի, հրաբխային խարամի, պեմզայի արդյունահանման ու վերամշակման մի շարք հզոր ձեռնարկությունների կառուցման շնորհիվ Արթիկի շրջանը դարձել է հանրապետության զարգացած արդյունաբերական հանգույցներից մեկը:

Մեծ են երևանյան տեսակի հանքաքարի պաշարները: Դրանք հիմնականում տարածված են խոշոր քաղաքների՝ Երևանի, Լենինականի, Հոկտեմբերյանի մերձակայքում, ինչպես նաև Աշտարակի, Էջմիածնի, Ախուրյանի, Սպիտակի, Աբովյանի և այլ շրջաններում, Մայիսյանում, Ջրվեժում, Կարմրաշենում: Ֆելզիտային տուֆերը ամենածանրն են, ունեն գույների մեծ բազմազանություն: Դրանք տարածված են Ազիզբեկովի, Նոյեմբերյանի, Իջևանի, Թումանյանի, Գուգարքի և այլ շրջաններում:

Հայկական ՍՍՀ-ի տուֆը հիմնականում օգտագործվում է մեր հանրապետության, ինչպես նաև ՌՍՖՍՀ-ի, Ուկրաինայի, Հյուսիսային Կովկասի շինարարական ինդուստրիայի կարիքների համար:

Արդի պայմաններում տուֆերի կիրառման ոլորտը հետզհետե մեծանում է: Այն բարձրորակ հումք է ապակե թելի և ապակե բամբակի, բարձր կայունություն ունեցող տեխնիկական քարերի, սիտալների, պենոպլաստի, պենոտուֆի և ժողովրդական տնտեսությանն անհրաժեշտ այլ նյութերի արտադրության համար: Տուֆերի կիրառման բնագավառները հետագայում է՛լ ավելի կընդլայնվեն: Այդ կապակցությամբ ներկայումս առաջարկներ են արվում զգալիորեն ավելացնելու տուֆե իրերի և նյութերի հանույթն ու վերամշակումը՝ առկա ձեռնարկություններն ընդլայնելու և նորերը կառուցելու միջոցով: Դա անհրաժեշտ է, սակայն առավել ուշադրություն պետք է նվիրել հանքավայրերի շահագործման ինտենսիվությունն ուժեղացնելու և արդյունավետությունը բարձրացնելու խնդիրներին: Մինչդեռ քիչ չեն դեպքերը, երբ առանձին հանքամասեր օգտագործվում են ոչ լրիվ, այլ ընտրովի, որը հանգեցնում է այդ անգնահատելի հարստության վատնման ու շռայլման, հողահանդակների զգալի տարածությունների փչացման: Ներկայումս բնական հարստությունների և հողի խելամիտ օգտագործման ու պահպանման պրոբլեմն առավել է սրվել: Այդ նպատակով մի շարք միջոցառումներ են մշակվել: Խնդիրը կարևոր է և դրա լուծումը չպետք է կրի կոմպանիոն բնույթ: Նախատեսվող միջոցառումներն անհրաժեշտ է իրականացնել ոչ թե իրարից անջատ, այլ միայն կոմպլեքսային ձևով:

Հարկ է նշել, որ, չնայած տուֆի արտադրության բուռն զարգացմանը, այն դեռևս մեքենայացման և արդյունավետության բարձր մակարդակի չի հասել: Հանքաքարի վերամշակման հետևանքով գոյանում են մեծ քանակությամբ մանրախիճ, շլամ, խիպար, ավազ, խճաքար, որոնց միայն մի մասն ունի արդյունաբերական օգտագործում: Թափոնների մեծ քանակությունը վկայում է այն մասին, որ տուֆի լեռնային զանգվածի արդյունահանման հորատման-պայթեցման կիսամեքենայացված մեթոդներն ու ձևերը հեռու են կատարյալ լինելուց: Դրանք մեծ չափերով ճաքեր են առաջացնում հանքաքարի վրա: Այդպիսի մեթոդով մեզ մոտ արդյունահանվում է տուֆերի 55 տոկոսը, որը տալիս է ուղիղ ձևերի 40 և կոպիտ ձևերի՝ 50 տոկոս արտադրանք: Հանքավայրերում շատ հաճախ ստացվում է կոպիտ ձևերի արտադրանք՝ մեքենայացված արդյունահանմամբ ստացվող ուղիղ ձևերի փոխարեն, որն իր հերթին թափոնների զանգվածն ավելացնում է ևս 15—20 տոկոսով: Ժամանակն



է, որպեսզի հանքային ռեսուրսները գնահատելիս անպայմանորեն հաշվի առնվեն հանքաքարի արդյունահանման պրոցեսում ստացվող բոլոր թափոնները և դրանց հիման վրա կազմվի կադաստր, որը հնարավորություն կտա օբյեկտիվորեն հաշվառել հումքային ռեսուրսները:

Տուֆի արդյունահանումից ստացվող արդյունաբերական մեծ չափերի հասնող թափոնների ցայտուն օրինակ է տալիս հանրապետության քարամատակարարման առաջատար ձեռնարկություններից մեկը՝ «Արթիկ-տուֆ» արտադրական միավորումը: Իր գոյության շուրջ վեց տասնամյակում այստեղ անընդհատ կուտակվել են թափոնները՝ արհեստականորեն թանկացնելով արտադրանքի ինքնարժեքը, շարքից հանելով զգալի չափերի հողատարածություններ:

Հանրապետության համարյա բոլոր հանքավայրերում լեռնային զանգվածն արդյունահանելիս հողի վերին շերտը հեռացվում է և լցվում արդեն օգտագործված հանքերի փոսերն ու ձորակները: Տուֆի արդյունահանման հետևանքով ամեն տարի հանրապետությունում շարքից դուրս է գալիս 50 հեկտար հողատարածություն, որի շուրջ 20 տոկոսը բաժին է ընկնում Արթիկի շրջանին: Նման իրավիճակի ստեղծումը պարզապես անհանդուրժելի է: Արդյունահանողները պարտավոր են այդ հողերը վերականգնել և ետ վերադարձնել գյուղատնտեսությանը:

Արթիկի տուֆի հանքավայրի շահագործման ամբողջ ժամանակաշրջանում թափոնների ընդհանուր ծավալը արդյունահանված զանգվածի համադրությամբ կազմում է 1:1 և հասնում է 11—12 **մլն** խոր. մետրի: Ամբողջ հանրապետության մասշտաբով տուֆի հանքավայրերի շահագործման հետևանքով տասնամյակների ընթացքում կուտակվել է շուրջ 60 **մլն** խոր. մետր թափոն, որը հանգեցրել է մինչև 5 հազար հեկտար հողատարածության աղտոտման՝ հիմնականում Արթիկի, Անիի, Էջմիածնի, Աշտարակի և այլ շրջաններում:

Հանրապետության արտադրողական ուժերի բուռն զարգացումը, անշուշտ, կպահանջի տուֆի հանույթի և վերամշակման ծավալի մեծացում, հետևաբար կավելանան նաև թափոնները: Այդ կապակցությամբ տուֆի հանույթի, վերամշակման, ինչպես նաև կոմպլեքսային ու արդյունավետ օգտագործման խնդիրը մեծ հրատապություն է ձեռք բերում: Թափոնների օգտագործման պրոֆիլային գիտահետազոտական ինստիտուտներում ընդլայնվում է հանրապետության ընդերքում տարածված տուֆի հանքերի պահպանմանը, ռացիոնալ արդյունահանմանը, թափոնների օգտագործմանը նվիրված հետազոտությունների շրջանակը: Այսպես, «Քար և սիլիկատներ» գիտահետազոտական միավորումում տուֆի թափոններից ստացվել է հղկված սալաքար, որն իր արտաքին տեսքով և որակով չի զիջում բնականին: Փորձը ցույց է տալիս, որ թափոններից պատրաստված մեծ աղյուսներն ավելի կայուն, հարատև ու շահութաբեր են, քան միաձույլ քարերը:

Պատի ու երեսպատման նյութերի լայն տեսականու և բազմերանգ գույների առկայության պայմաններում, մեզանում շենքերը շարունակվում են կառուցվել միակերպ, հիմնականում Արթիկի հանքավայրերի վարդագույն տուֆով:

Հասարակական օգտագործման շենքերը՝ գրադարանները, ակումբները, հանգստյան տները, հիվանդանոցները, կինոթատրոնները, հյուրանոցները, մանկապարտեզները և մյուս շինությունները անհրաժեշտ է կառուցել բազմերանգ և լայն տեսականու շինարարական ու երեսպատման նյութերով՝ հայկական ճարտարապետության ավանդույթների կիրառմամբ: Դա հնարավորություն կտա խուսափել միակերպությունից և միմյանցից տարբերել մեր քաղաքներն ու քաղաքային թաղամասերը:

Հանրապետությունում կապիտալ շինարարության վիթխարի մասշտաբների պայմաններում ճարտարապետները, նախագծողները, շինարարները արդյունաբերական, գյուղատնտեսական, կոմունալ, բնակարանային, կուլտուր-կենցաղային օբյեկտները կառուցելիս հաճախ ելնում են ռոպեական էֆեկտից ու շինարարության էժանությունից և շարունակում են օգտագործել հիմնականում Արթիկի վարդագույն տուֆը: Նրանք երբեմն մոռանում են, որ այդ շինությունները պետք է ծառայեն մի քանի սերունդների և ոչ մեկ հարյուրամյակ:

Վերջին տարիներին շինարարները տուֆը, հատկապես ֆելզիտային, սկսել են օգտագործել շենքերի հարդարման, ներքին երեսպատման համար: Պետք է վերջ տալ արժեքավոր շինանյութի այդ ոչ արդյունավետ օգտագործմանը: Անհրաժեշտ է նաև մշակել և արտադրության մեջ ներդնել շենքերի արտաքին երեսպատման ավելի

քարակ սալաքարերը: Նպատակահարմար է նաև ընդլայնել տեղական նյութերի՝ հատկապես կրաքարերի կիրառումը, որոնցով հարուստ է Հայաստանի ընդերքը: Դա իր հերթին կհանգեցնի շենքերի ու կառույցների և՛ գույների, և՛ ձևերի բազմազանության: Հանրապետության տարածքում տուֆի հումքի հարուստ պաշարների առկայությունն ամենևին էլ չի նշանակում, թե այդ նյութերը կարելի է արդյունահանել և օգտագործել որտեղ և ինչպես պատահի: Դա կարող է հանգեցնել լուրջ հետևանքների մոտակա և, էլ չեմ ասում, ավելի հեռավոր հեռանկարում: Այդ կապակցությամբ ժամանակն է հրաժարվել գրականության մեջ ու մամուլում հաճախ հանդիպող այն տերմինից, թե տուֆի պաշարները «անսպառ» են: Ավելի ճիշտ կլինի օգտագործել առավել ռեալ բնորոշումներ՝ «խոշոր», «մեծ», «նշանակալից». չէ որ բնության մեջ ոչինչ անսպառ չէ:

Ինչպես հայտնի է, միութենական և հանրապետական մի շարք գիտական կենտրոնների հետ մեկտեղ ՀՍՍՀ պետպլանի էկոնոմիկայի և պլանավորման ինստիտուտը մշակել է հանրապետության արտադրողական ուժերի զարգացման և տեղաբաշխման հեռանկարային սխեման:

Վերադաս կազմակերպությունների կողմից հաստատված այդ սխեմայի համաձայն, մինչև 2000 թվականը երեսպատման սալիկների արտահանումը կհասնի 1.500—2.000 հազար քառ. մետրի: Նպատակահարմար է սալիկների այդ բաժինը հատկացնել Արթիկի հանքավայրից, իսկ հանրապետությունում կառուցվող օբյեկտներում, հատկապես հասարակական շենքերի շինարարությունում, օգտագործել երևանյան, բյուրականյան, Անիի և ֆելզիտային տուֆերը, ինչպես նաև կրաքարը:

Հանքաքարերի պահպանման և արդյունավետ օգտագործման հիմնական հարցերից մեկը դրանց պարբերական, ամենամյա վերագնահատումն է: Տուֆի հանքավայրերի նշանակալի մասը հաշվեկշռման է վերցվել 30—35 տարի առաջ: Հանքաքարի վերջին վերագնահատումը կատարվել է 1973 թվականին: Հետագայում, 1978 թ. պահեստային հաշվեկշռից դուրս են գրվել մի քանի հանքավայրեր, որոնք ունեն աննշան պաշարներ, անորակ հումք և մշակման ցածր շահութաբերություն, բայց հաշվի չեն առնվել բնապահպանական, սոցիալական, տնտեսական, աշխարհագրական և էկոլոգիական գործոնները: Այդ կապակցությամբ հանքավայրերի զգալի մասը ներկայումս գործնականում չի կարող շահագործվել: Օրինակ, մինչև 170 միլիոն խոր. մետր պաշարներ ունեցող հանքավայրերից կարող է արդյունահանվել լեռնային զանգվածի միայն 37—40 տոկոսը:

Մեր հանրապետությունում հանքաքարերի մեծ մասը տարածված է գյուղատնտեսական հանդակների (վարելահողեր, բազմամյա տնկարկներ), հանգստյան գոտիների, բնակավայրերի, արդյունաբերական ձեռնարկությունների, պատմական հուշարձանների, գազամուղների, էլեկտրահաղորդման գծերի տարածքում: Հանքային հումքի և երկրաբանական-հետախուզական աշխատանքների էկոնոմիկայի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի կովկասյան լաբորատորիայի կատարած վերջին վերագնահատման հիման վրա տուֆերի շահագործվող հանքապաշարների միայն 34 տոկոսն է ենթակա արդյունաբերական օգտագործման:

Այս ամենը վկայում է այն մասին, որ անգամ արդյունահանման և վերամշակման ներկայիս տեմպերի պահպանմամբ հանրապետության հիմնական հանքավայրերը տուֆով ապահովված են ընդամենը մի քանի տասնամյակ: Ուստի անհրաժեշտ է հրատապ միջոցներ ձեռնարկել հազարամյակների ընթացքում ստեղծված այդ հազվագյուտ հումքի պաշարների պահպանման և արդյունավետ օգտագործման ընպատակով:

---

## Կուսակցական աշխատանքի պրակտիկա

# ՈՉ ՄԻԱՅՆ ԴԻՊԼՈՄՈՎ...

**Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
**ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի երկրորդ քարտուղար**

ԳՅՈՒՂԸ ՃԱՆԱՊԱՐՀՈՒՄ ԷՐ ԻՐ ԵՐԻՏԱՍԱՐԴ նախագահին: Գյուղն անկեղծ հուզված էր: Երկար չէր ղեկավարել նա կոլտնտեսությունը: Չորս տարուց մի քիչ ավելի: Բայց որքա՜ն շատ բան էր փոխվել տնտեսությունում, գյուղում: Արվածը, կատարվածը բոլորի աչքի առաջ էր: Ահա առաջինը սա: Վերջապես լուծվել էր մի հարց, որ երկար տարիներ անլուծելի էր թվում: Հողերի մելիորացման հարցը: Շատ էր ասվում, խոսվում, բայց գործը տեղից չէր շարժվում: Իսկ առորգետնյա ջրերն ուղղակի գրոհում էին դաշտերի, գյուղի վրա: Դեռ հեռվից զգացվում էր նեխված ճահճահոտը, որ տարին բոլոր տարածվում էր շրջապատում: Տնտեսության վարելահողերն աննկատ ճահճակալվում, դուրս էին գալիս շրջանառությունից: Իսկ դրանք շատ չէին. չորս հարյուր հեկտարից մի քիչ ավելի: Դրենաժ էր անցկացվել, բոլոր դաշտերը չորացվել էին: Ախուրյան գետի վրա հզոր պոմպակայան էր կառուցվել, անցկացվել ոռոգման նոր համակարգ: Տեղադրվել էին արհեստական անձրևացման սարքավորումներ: Լրիվ գյուղատնտեսական շրջանառության մեջ էր դրվել մինչև վերջին մետր հողակտորը: Հողը դարձել էր բերրի, բարձրացել էր մշակության կուլտուրան: Այդ ե՞րբ էր եղել, որ Ղարիբջանյանի կոլտնտեսությունում հեկտարից մինչև 50 ցենտներ հացահատիկի բերք ստացվեր: Հիմա ստացվում է: Ե՞րբ էր եղել, որ եգիպտացորենի ցանքերը եղեգնուտի տպավորություն թողնեին ու կանաչ զանգվածի բերքը անցներ 450 ցենտներից: Տնտեսության դաշտավարներն արդեն այդ բնագիծը նվաճել ու անցել են: Ծակնդեղի բերքը, ճիշտ է, համեմատաբար բարձր էր, բայց, համենայնդեպս, ոչ 500—550 ցենտներ: Հեկտարից շուրջ 420 ցենտներ կարտոֆիլ, 120 ցենտներ առվույտ է ստացվում:

Իսկ անասնապահությո՞ւնը: Պարզապես անճանաչելի է դարձել տնտեսության այդ կարևոր ճյուղը ևս: Հին, հարմարությունից զուրկ գոմերի փոխարեն կառուցվել են նոր, տիպային շենքեր: Աշխատանքի ու հանգստի լավ պայմաններ են ստեղծվել անասնապահների համար: Աշխատատար պրոցեսները հիմնականում մեքենայացվել են: Գործում են թեյարան-ճաշարան: Կա հանգստի սենյակ, հեռուստացույց, հեռախոս: Ֆերմայամերձ տարածությունները, որ մի ժամանակ ցեխակոլոլ էին, բարեկարգ են, ծառազարդ: Կերն էլ առատ է ու բազմազան: Անասնապահները, իհարկե, պարտքի տակ չեն մնացել: Մեկ կովի կաթը արդեն հասել է երեք հազարի, մթերվող անասունի քաշը՝ շուրջ 400 կիլոգրամի:

Փոխվել, գեղեցկացել է գյուղը, բարեկարգվել են փողոցները: Ակումբն այնպես է նորոգվել, որ գյուղացիներն ասում են՝ նոր ակումբ ենք կառուցել: Նորակառույց են դպրոցը, մանկապարտեզը, երկուսն էլ՝ հարմարավետ, ժամանակակից, լավ ձևավորված խաղահրապարակներով: Նոր են կառուցվել նաև կենցաղի տունը և վարչական շենքը: Տնտեսությունը հոգ է տարել իր անդամների բնակարանային պայմանների

քարեկարգման մասին: Կառուցվել է 11 առանձնատուն: Գյուղի երիտասարդությունն արդեն ունի իր մարզադաշտը, խաղահրապարակները:

Ո՞վ կարող է ժխտել այն փաստը, որ ընդամենը մի քանի տարի առաջ զգալի թիվ էին կազմում արտագնաց աշխատանքի մեկնողները: Իսկ հիմա՞: Նրանց ոտքը կտրվել է «դրսից»: Շուրջ տարին մարդկանց աշխատանքով բավարարելու նպատակով արդյունաբերական ձեռնարկության մասնաճյուղ է բացվել գյուղում: Ամեն ինչ հիմա, մի խոսքով, տրամադրող է, լիցքավորող: Իսկ առանց լավ տրամադրության, առանց ամենօրյա լիցքի մարդը լավ աշխատել չի կարող: Լավ ապրել չի կարող: Հաջողության ամենամեծ գրավականը, համենայնդեպս, նրա համար եղավ կադրերի ճիշտ տեղաբաշխումը, հնին կառչածներին նոր, ձեռնհաս մասնագետներով փոխարինելը:

Եվ գյուղը հուզված էր: Հուզված էր և ինքը՝ նախագահ Ռուբեն Կարախանյանը: Գուցե ակամա հիշում էր գյուղ գալու առաջին օրը: Ոմանք այնքան էլ լավ չընդունեցին: Ժողովը ձգձգվեց, երկարեց: Կրքեր բորբոքվեցին: Մի երկուսն էլ վեր կացան, գնացին շրջկոմ: Ավելի վերև բողոքեցին՝ «ինչո՞ւ եք դրսից մարդ բերում: Ինչո՞վ է պակաս մեր գյուղի տղան»:

Ճիշտն ասած՝ եղավ նույնիսկ մի պահ, որ նա տատանվեց, ուզեց դիմում գրել, հրաժարվել: Որպես գյուղատնտես կաշխատեմ»: Բայց շուտ հետ կանգնեց այդ մտքից: Շրջկոմում նրան նորից խորհուրդ տվեց՝ կաշխատես, կապացուցես:

Այդ ո՞վ էր ասում, թե նա «դրսի» մարդ է: Այստեղ է ծնվել, դպրոց գնացել: Հիսունական թվականներին էր: Հայրը ղեկավարում էր Ղարիբջանյանի խոշորացված կոլտնտեսությունը: Ահա տարիներ հետո եկել էր փոխարինելու հորը: Մեծամասնությունը կողմ էր, թող մի երկուսն էլ դեմ լինեին: Ի՞նչ կար զարմանալու: Բայց այդ ի՞նչ խոսք էր՝ «դրսի մարդ»: Պարզապես մտքի հասունություն էր պետք: Շրջանը մեր բոլորի մեծ տունն է, և մենք՝ բոլորս, նրա մարդիկ: Դրսի ու ներսի հարց չկա:

Եվ ՀԿԿ Ախուրյանի շրջկոմը ամուր կանգնեց նրա թիկունքին, ում երաշխավորել էր ղեկավարելու շրջանի հետ մնացող տնտեսությունը: Ո՞վ էր նա, որի հետ շրջկոմը հույսեր էր կապում: Հացիկի գյուղատնտեսական տեխնիկումն ավարտելուց հետո աշխատել էր Շիրակի սովխոզում՝ որպես կրտսեր գյուղատնտես: Կարճ ժամանակում աչքի էր ընկել: Իր բարեխղճության և ակտիվության համար արժանացել էր մեծ վստահության: Ընդունվել էր կուսակցության շարքերը: Շուտով առաջ էր քաշվել: Դարձել էր հարևան Հացիկի սովխոզ-տեխնիկումի գլխավոր գյուղատնտեսը: Այստեղ լավ էին դրսևորվել երիտասարդ գյուղատնտեսի մասնագիտական ու կազմակերպչական ունակությունները: Անհրաժեշտություն էր զգացվել նրան նույն աշխատանքին փոխադրել Մայիսյանի տնտեսություն, որտեղ հետ էր մնում երկրագործությունը: Հատկապես ցածր էր հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը: Մայիսյանի կոմունիստները միաժամանակ նրան ընտրեցին սկզբնական կուսկազմակերպության քարտուղար: Աշխատանքին զուգընթաց ձեռք էր բերել բարձրագույն կրթություն: Եվ, շատ չանցած, երաշխավորվել էր ղեկավարելու Ղարիբջանյանի կոլտնտեսությունը:

Լավ տրամադրությամբ էր հրաժեշտ տալիս գյուղին: Գյուղն էլ՝ իրեն:

— Լավ մարդիկ են ղարիբջանյանցիները,— ասում էր նա,— նրանց հետ կարելի է ծանր լուծ քաշել և վստահ լինել, որ չես մնա կես ճանապարհին:

— Ինչո՞ւ եք տանում մեր նախագահին,— միաբերան հարցնում էին մեզ գյուղում,— մեր լավ նախագահին:

Մեկնաբանություններն այստեղ, կարծեմ, ավելորդ են:

Երիտասարդ նախագահը հիմա Մայիսյանի պետական տնտեսությունում երիտասարդ դիրեկտոր է: Զարմանալի զուգադիպություն: Տարիներ առաջ հայրը՝ այժմ արդեն գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Բաբկեն Կարախանյանը, նույնպես Ղարիբջանյանից տեղափոխվել էր Մայիսյան, հետ մնացող տնտեսությունը դուրս բերել առաջավորների շարքը:

Հորը փոխարինում է որդին: Ո՛չ, հայրական ուսերին «նստած» չի եղել նա, ու մենք այնտեղից ցած չենք բերել նրան: Ինքնուրույն ճանապարհ է հարթել երիտասարդ մասնագետը: Սա մեկ: Եվ, երկրորդ: Այնուամենայնիվ, որտեղի՞ց է սկսվում մարդը: Այն գյուղից, այն օջախից, որտեղ ծնվում ու մեծանում է, որտեղ էլ հողին,



ջրին, հայրենի գյուղաշխարհին ամուր կապվելու առաջին դասերն է առնում: Լավ, ուսանելի դասերը:

Ամեն անգամ, օրինակ, երբ Ռ. Կարախանյանը փորձում է գտնել այն լուսավոր կետը, որտեղից սկիզբ առավ իր սերը հողի, ջրի նկատմամբ, լույսը հարազատ տանն է վառվում, դպրոցում: Միշտ դեմը կանգնում է գիտնական հոր կերպարը: Դեռ դպրոցական տարիներին տանը խոսակցությունը հողի շուրջն էր, հոր նախաձեռնած եգիպտացորենի բարձր բերքատու սորտեր աճեցնելու շուրջը: Հիմա առավել ևս: Դպրոցում շուտ զգացին նրա հետաքրքրությունները և խորհուրդ տվեցին ընտրել գյուղատնտեսի մասնագիտությունը:

Այս օրինակը եզակի չէ: Այսօր տնտեսությունների ղեկը հաջողությամբ են վարում նաև Ծաղկասարի պետտնտեսության երիտասարդ դիրեկտոր Հ. Մաթևոսյանն ու Բենիամինի կոլտնտեսության նախագահ Ս. Խաչատրյանը: Նրանց համար նույնպես կյանքի ճիշտ կողմնորոշիչներ ժամանակին տվել են ընտանիքը, դպրոցը:

Եվ ինչո՞ւ զարմանալ, որ կադրերի հետ տարվող աշխատանքը Ախուրյանի շրջանում սկսվում է ընտանիքից, դպրոցից: Մանկավարժական կոլեկտիվները, դպրոցական կուսկազմակերպությունները, նրանց հետ ծնողները,— սա անպայման նշենք,— քիչ ջանքեր չեն գործադրում ճիշտ ուղղություն տալու շրջանավարտների մասնագիտական կողմնորոշմանը: Այդ նպատակը չէ՞ր հետապնդում, արդյոք, 1986 թ. մայիսին շրջանի 21 միջնակարգ դպրոցների բարձրդասարանցիների համար շրջկոմի նախաձեռնությամբ անցկացված «Կուսակցության XXVII համագումարը և արագացման կոնցեպցիան» թեմայով բաց դասը: Իսկ ովքե՞ր վարեցին դասը: Շրջկոմի քարտուղարները, ապարատի մյուս պատասխանատու աշխատողները: Եվ նրանց հետ՝ աշխատանքում հերոսացած մարդիկ: Դա հետաքրքրական էր ու շատ կողմերով՝ ուսանելի, օգտավետ: Պետք էր տեսնել, թե հատկապես կյանք դուրս գալու շեմին կանգնած շրջանավարտները ինչպիսի՜ հետաքրքրությամբ ունկնդրեցին թեման, ինչպես սկսեցին դասը հեղեղել հարցերով: Չէր կարելի չուրախանալ այն բանի համար, որ նրանք գիտակցում էին այն գործի կարևորությունը, որ բաժին է ընկել իրենց նոր սկսվող կյանքի ճանապարհին: Իսկ այդ ճանապարհները տանում են... XXI դար: Պատկերավոր ասած՝ քսանմեկերորդ հարյուրամյակն արդեն դուռ է թակում, արդեն լսելի են նրա ոտնաձայները: Ուրեմն, տրամաբանական է, որ այսօր պետք է մտածել նրանց մասին, ովքեր վաղը փոխարինելու են մեզ, ովքեր կանգնելու են ղեկի մոտ:

Կադրերի ռեզերվ ստեղծելու վերաբերյալ կուսակցության պահանջը մեզ համար գործողության ուղեցույց է: Այդ խնդրի պատշաճ լուծման նպատակով սերտ կապեր ենք հաստատում սկզբնական կուսկազմակերպությունների, հիմնարկությունների և տնտեսությունների ղեկավարների, ուսումնական հաստատությունների հետ: Տեղերում կատարած խոր, բազմակողմանի ուսումնասիրությունների շնորհիվ շրջկոմի, կուսկազմակերպությունների համար հիմա պարզ է, թե շրջանի ժողովրդական տնտեսության մեջ ինչ մասնագետների պակաս կա, որտեղ են գործերն ավելի շատ դրանից տուժում: Պարզ է, օրինակ, այն, որ Ախուրյանը թեև քաղաքամերձ է, սակայն շրջանում դեռևս գյուղատնտեսական մասնագետների կարիք է զգացվում: Նաև միջին օղակի և որակյալ բանվորական կադրերի պակաս կա:

Իսկ ինչպե՞ս է լուծվում այդ խնդիրը, որն այնքա՛ն կարևորվում է երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու համակարգում: Առաջին հերթին մշակել և իրականացնում ենք կոմպլեքսային միջոցառումներ: Դրանցից մեկն այն է, որ դպրոցների աչքի ընկնող շրջանավարտներից, արտադրությունում միջնակարգ կրթությամբ աշխատողներից նպատակային ձևով սովորելու են ուղարկվում հանրապետության բարձրագույն ու միջնակարգ-մասնագիտական ուսումնական հաստատությունները, պրոֆտեխնիկական ուսումնարանները: Ուղարկվում են շրջկոմի գիտությամբ ու նրա միջոցով: Եվ անպայման շրջանին անհրաժեշտ հաստատությունները:

Մենք լավ ենք օգտագործում շրջանին հատկացվող արտամրցութային տեղերը: Այդ նպատակով համատեղ միջոցառումներ ենք մշակել հատկապես Հայկական գյուղատնտեսական և անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտների ռեկտորատների ու կուսկոմիտեների հետ: Ներկայումս բարձրագույն ուսումնական հաստատություններում Ախուրյանի շրջանից սովորում են 363 երիտասարդներ: Միջնակարգ-մասնագիտական կրթություն են ձեռք բերում 350 պատանիներ ու աղջիկներ:

Ընդ որում՝ կեսից ավելի մեր՝ Հացիկի գյուղատնտեսական տեխնիկումում: Ծրջկենտրոնի պրոֆտեխնիկական ուսումնարանում սովորում են շուրջ 600 ախուրյանցիներ:

Ծրջանից բուհեր գործուղվածները, որպես կարգ, թոշակավորվում են տնտեսությունների և հիմնարկ-ձեռնարկությունների հաշվին: Դա երկու դրական կողմ ունի: Նախ՝ խնայվում են պետական միջոցները: Եվ, երկրորդ, հայտնի մրցմարտություն է՝ ով ծախս է անում, նրա սիրտն էլ ցավում է թեկուզ մեկ ռուբլու համար: Ուրեմն և շահագրգռված է լինում, որպեսզի երիտասարդ մասնագետը, բարձրագույն կրթություն ստանալուց հետո, վերադառնա հայրենի գյուղ, հարազատ կոլեկտիվ, որտեղից մեկնել է սովորելու, և աշխատի համապատասխան մասնագիտությամբ:

Ուսանողական նստարանին նստելու առաջին օրվանից ապագա մասնագետը գտնվում է շրջանի կուսակցական, կոմերիտական կազմակերպությունների, տնտեսական մարմինների ուշադրության կենտրոնում: Նրանց հետ ամուր կապ պահպանելու նպատակով ստեղծվել է շրջանային խորհուրդ, որը կոորդինացնում, ավելի արդյունավետ է դարձնում ուսանողների հետ տարվող աշխատանքը: Խորհրդի նախաձեռնությամբ հաճախակի կազմակերպվում են հավաքներ, հանդիպումներ, այլ հետաքրքրական միջոցառումներ:

Երիտասարդ մասնագետի օրվա «աշխարհագրությունը» չի սահմանափակվում տուն—աշխատանք—տուն եռանկյունով: Ծրջկենտրոնում շահագործման է հանձնըվել մասնագետի տունը: Այն ունի բոլոր հարմարությունները. մասնագիտական ու քաղաքական գիտելիքները հարստացնելու գրականություն և հարուստ տեխնիկական միջոցներ, ազատ ժամանակը հաճելիորեն ու հետաքրքիր անցկացնելու պայմաններ:

Եվ մի կարևոր հանգամանք: Մեզ հաջողվել է հասնել այն բանին, որ գյուղատնտեսության ապագա մասնագետների պրակտիկան ու դիպլոմային աշխատանքն անցկացվի հենց մեր շրջանում, մեր տնտեսություններում: Իսկ ո՞րն է դրա կարևորությունը: Ասեմ: Դա մեզ հնարավորություն է ընձեռում ավելի մոտիկից ուսումնասիրելու մեր ապագա մասնագետների ունակությունները, նրանց կազմակերպչական կարողությունները: Ավելի մոտիկից ու լավ ճանաչելու նրանց: Եվ նաև այն, որ տընտեսությունների առանձին պրոբլեմների լուծման նպատակով օգտագործվում են բուհերի համապատասխան ամբիոնների մասնագետների ուժերը:

Այդպես պահպանվում, ամրանում է կապի կենդանի երակը, որը ուսանողներին կանչում, բերում է տուն: Իսկ, ինչպես ասում են, տան տղան, տան աղջիկը, բարձրագույն կրթություն ստանալուց և հայրենի գյուղ վերադառնալուց հետո, բնակարանի, տնամերձ հողամասի պրոբլեմ չեն ստեղծում, ինչպես օրինակ, չեն ստեղծել Ջաջուռի, Մայիսյանի պետական, Առափիի կոլեկտիվ տնտեսություններում ներկայումս աշխատող երիտասարդ գյուղատնտեսներ Արշակ Մալխասյանը, Գարեգին Գրիգորյանը, Ալբերտ Այվազյանը: Կամ, ասենք, Ախուրյանի, Գետքի տնտեսագետներ Մանվել և Արտաշ Հարությունյանները, Ծիրակի պետական տնտեսության ինժեներ-մեխանիկ Վարուժան Քոչարյանը:

Ասես հենց հիմա տեսնում եմ շատերի հարցական հայացքը. «Իսկ ի՞նչ է, ձեր շրջան «դրսից» երիտասարդ մասնագետներ չե՞ն գալիս, նրանց նկատմամբ ինչպիսի՞ն է վերաբերմունքը, թե՞ ամեն ինչ անում եք միայն «ձերոնց համար»: Պատասխանեմ այդ հարցին: Մենք նույնպիսի սիրով ու պատրաստակամությամբ ենք ընդունում նաև նրանց, նույնպիսի պայմաններ ստեղծում նաև նրանց համար: Թվե՞ր եք ուզում, փաստե՞ր: Խնդրե՛մ: Վերջին վեց տարում շրջան են եկել և աշխատանքի նշանակվել ավելի քան 180 մասնագետներ: Նրանցից մոտ 50-ը ապահովվել է բնակարանով, 30-ին հատկացվել է տնամերձ հողամաս:

Նման վերաբերմունքը, ինչպես և սպասվում է, ստեղծում է աշխատելու, գործելու լավ տրամադրություն: Բարձրանում է երիտասարդ մասնագետների արտադրական ակտիվությունը: Նրանք ընդգրկվում են նաև հասարակական ակտիվ գործունեության մեջ: Առավել աչքի ընկնողներն արժանանում են մեծ վստահության՝ ընդունվում են ՍՄԿԿ շարքերը: Վերջին վեց տարում, օրինակ, կուսակցության մեջ ընդունվել են 115 գյուղատնտեսության մասնագետներ, ինժեներատեխնիկական աշխատողներ, բժիշկներ, մանկավարժներ, մարդիկ, որոնք համալրում են շրջանի ինտելեկտուալ պոտենցիալը:



Այո՛, կադրերի հետ տարվող աշխատանքը, նրանց ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության հարցերը մշտապես գտնվել ու գտնվում են կուսշրջկոմի, սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում: Այդ հարցում մենք միշտ ստացել ենք Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ամենօրյա օգնությունն ու ղեկավարությունը: Առանց կադրերի հետ տարվող աշխատանքի կատարելագործման, մենք չէինք կարողանա և չենք կարողանա ոչ հաջողությունների հասնել շրջանի տնտեսական և կուլտուրական շինարարության մեջ և ոչ էլ, մանավանդ, ապահովել արտադրության դինամիկ աճ, հաջողությամբ իրականացնել կուսակցության պարենային ծրագիրը:

Մեր կադրերի, կոլտնտեսականների ու բանվոր-ծառայողների անձնվեր աշխատանքի շնորհիվ է, որ Ախուրյանի շրջանը 4—4,5 տարում նվաճեց տասնմեկերորդ հնգամյակի բնագծերը: Տասներորդ անգամ հաղթող ճանաչվեց համամիութենական սոցիալիստական մրցության մեջ և արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին:

Դարձյալ նրանց ուսերին են ընկած կուսակցության XXVII համագումարի պատմական որոշումների անշեղ կենսագործման, տասներկուերորդ հնգամյակի լարված առաջադրանքների հաջող կատարման ծանրությունը, պատասխանատվությունը: Գործին բարձր պատասխանատվությամբ մոտենալու շնորհիվ է, որ շրջանի աշխատավորական կոլեկտիվները ժամկետից շուտ և բարձր ցուցանիշներով կատարեցին նաև նոր հնգամյակի մեկնարկային տարվա առաջադրանքները, և շրջանը նորից համամիութենական դրոշ շահեց:

«Որքան հետևողականորեն ենք կուսակցության հսկայական ստեղծագործական պոտենցիալը ընդգրկում սովետական հասարակության զարգացումն արագացնելու գործում,— նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում,— այնքան զգալի է դառնում **կադրերի նախաձեռնությունն ու պատասխանատվությունը բարձրացնելու անհրաժեշտության, կուսակցականի անաղարտ ու ազնիվ կերպարի համար անդուլ պայքարելու կարևորության մասին ապրիլյան պլենումի հետևության խոր հիմնավորվածությունը** (էջ 115): Ահա ինչու կադրային մեծ ու բազմապլանի աշխատանքում մեզ համար եղել և մնում է հոգատարությունը նյութական արտադրության ոլորտի կադրերի և հատկապես ղեկավար կադրերի նկատմամբ: Ծրջանի կոլեկտիվ և պետական տնտեսությունների ղեկի մոտ այսօր կանգնած են արտադրության հմուտ կազմակերպիչներ, որոնք հաջողությամբ են գործի դնում եղած ռեզերվները, բոլոր միջոցները, հետևողականորեն մեծացնում գյուղատնտեսական մթերքների արտադրության ծավալները, ապահովում պլանային առաջադրանքների ու սոցիալիստական պարտավորությունների կատարումը: Մեր շինարարական կազմակերպությունների, արդյունաբերական ձեռնարկությունների, դպրոցների, առողջապահական հիմնարկների բոլոր ղեկավարներն ունեն բարձրագույն կրթություն և հիմնականում հաջողությամբ են կատարում իրենց պարտականությունները:

Բայց որպես կարևորագույն խնդիր մեզ համար մնում է այն, որ ամեն մի պատասխանատու տեղամասում աշխատի ոչ թե պարզապես դիպլոմ ունեցող, այլ նորի սուր զգացողությամբ օժտված, ուժերի մեծ լարումով աշխատող մարդ: Չէ՞ որ մեր ժամանակը սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, մեծ վերափոխումների ժամանակ է: Վերակառուցվելու ու վերակառուցելու ժամանակ: Մեզ հարկավոր է քաղաքականապես հասուն, լավ պատրաստված ղեկավար, մարդ, ում մոտ բարձր է պատասխանատվության զգացումը գործերի վիճակի համար: Հենց դա է հաստատում շրջանի ամենամեծ տնտեսության՝ Ազատանի կոլտնտեսության վարչության նախագահ Գ. Եսայանի օրինակը: Նա աճել, հասակ է առել այն կոլեկտիվում, որը ղեկավարում է հիմա: Նրա բարոյական նկարագրի բնորոշ հատկանիշներն են՝ գործիմացությունն ու հմտությունը, նորի զգացողությունը, պահանջկոտությունը իր և կոլեկտիվի մյուս անդամների նկատմամբ, կադրերին ճիշտ ընտրելն ու նրանց ուժերը նպատակային գործի դնելը:

Այս տնտեսությունը կադրերի յուրատեսակ դարբնոց է, որտեղ ստեղծված են բոլոր պայմանները երիտասարդ մասնագետների, հատկապես դրսից եկածների արդյունավետ աշխատանքի, աճի, հասունացման համար:

Ծքանշանակիր է և՛ տնտեսությունը, և՛ նրա ղեկավարը: Գ. Եսայանը կուսշրջկոմի բյուրոյի անդամ է: Ինչպես դաշտավարության, այնպես էլ անասնապահության մեջ նա համարձակորեն ներդնում է առաջավոր տեխնոլոգիաներ: Օրինակ՝ շրջա-

նում առաջինը Ազատանում ներդրվեցին հացահատիկի ծրագրավորված բերքի ստացումն ու օղակային կապալը: Այստեղ կառուցվում է ամենամեծ կաթնային համալիրը՝ ութ հարյուր գլխի տարողությամբ: Պայքար է սկսվել մեկ կովից տարեկան 4.000 կիլոգրամ կաթ ստանալու համար: Եվ այդ բոլոր նախաձեռնությունների մեջ տնտեսության ղեկավարը ամուր հենվում է մասնագետների, միջին օղակի կադրերի վրա:

Կադրերի հետ տարվող աշխատանքում կատարողականությունը, կարգապահությունը օրգանապես զուգակցվում են համարձակ նախաձեռնությունների, գործարարության հետ, մեծ նպատակների ձգտման հետ: Այդ իմաստով արժե նշել մեկ այլ մեծ կոլեկտիվի ղեկավարի՝ «Հայջրշին» № 2 տրեստի կառավարիչ Ս. Վարդանյանի օրինակը: Նրա մոտ ուժեղ է կուսակցականության ու պետականության զգացումը: Նրա համար թանկ են ոչ միայն այն ջրաշինարարական խոշոր կազմակերպության շահերը, որը անփոփոխ ղեկավարում է ահա քսան տարի: Պակաս շահագրգիռ վերաբերմունք չունի հարազատ շրջանի մյուս գործերի, տնտեսությունների հոգսերի նկատմամբ: Նա մեկ տասնյակից ավելի նորարարական առաջարկությունների հեղինակ է, որոնց ներդրման շնորհիվ ժամանակին ու բարձր որակով շահագործման են հանձնվել ջրաշինարարական այնպիսի կարևոր օբյեկտներ, ինչպիսիք են Կառնուտի ջրամբարն ու Աջափնյա ջրանցքը, Ախուրյանի արհեստական լիճը: Այդ առաջարկությունները ներդրվել են նաև ներկայումս կառուցվող Կապսի և Գետիկի ջրամբարների շինարարական աշխատանքներում: Նա սիրով, հոգատարությամբ աճեցնում, ավելի պատասխանատու գործերի համար հասունացնում է տասնյակ ինժեներատեխնիկական աշխատողներ, միջին օղակի կադրեր:

Վերջին տասը տարում շրջանում աշխատող բարձրագույն կրթությամբ մասնագետների թիվը կրկնապատկվել է: Դա, իրոք, ուրախալի է: Բայց, ցավոք, բոլոր դիպլոմ ունեցողները չէ, որ լավ մասնագետներ են, առավել ևս՝ հմուտ ղեկավարներ: Ախուրիկի սովխոզի դիրեկտոր Ս. Գրիգորյանը և գլխավոր գյուղատնտես Ս. Սարգսյանը (հիմա երկուսն էլ՝ նախկին) ի վիճակի չեղան պատշաճ հետևություններ անել իրենց աշխատանքում տեղ գտած սխալներն ու վրիպումները վերացնելու առթիվ շրջանի ղեկավար մարմինների զգուշացումներից ու խորհուրդներից, քննադատական դիտողություններից: Հետևանքը եղավ այն, որ տնտեսությունում ձախողվեց պլանների կատարումը: Գրպանում գիտնական-անասնաբույծի դիպլոմ ուներ Քեթիի գյուղսովետի նախկին նախագահը: Թվում էր, թե նրան ոչինչ չէր խանգարում՝ խորամուխ լինելու նաև տնտեսության արտադրական գործունեության մեջ, ավելի մոտիկից զբաղվելու գյուղի սոցիալ-կուլտուրական զարգացման հարցերով: Բայց ո՛չ: Նա չկարողացավ գլուխ հանել գործից, և դեպուտատները մի օր քվե չտվեցին նրան:

Կադրերի և հատկապես ղեկավար կադրերի մոտ պատասխանատվության բարձրացման արդյունավետ մեթոդ է նրանց հաղորդումների և հաշվետվությունների քննարկումը: Միայն 1986 թ. շրջկոմի բյուրոյում իրենց գործունեության մասին հաշվետվություններով հանդես են եկել ավելի քան երեսուն ղեկավար աշխատողներ: Դա մեզ օգնում է ավելի մոտիկից ճանաչելու մեր կադրերի ուժեղ ու թույլ կողմերը, նրանց մասնագիտական ու գաղափարական պատրաստվածությունը: Երրորդ տարին է, որ կուսշրջկոմն ու շրջանային ագրոարդյունաբերական միավորման խորհուրդը տնտեսական տարվա արդյունքներով անցկացնում են տնտեսությունների ղեկավարների, մասնագետների և միջին օղակի կադրերի ստուգարք: Հետևողականորեն կատարվում է համագումարյան այն պահանջը, որ կուսակցության մեջ չկան և չպետք է լինեն վերահսկողությունից դուրս, քննադատության առաջ փակ կազմակերպություններ, չկան և չպետք է լինեն կուսակցական պատասխանատվությունից պատնեշված ղեկավարներ: Կատարած կոպիտ սխալների համար 1985 թ. վեց, իսկ 1986 թ. չորս կոմունիստ ղեկավարների հարց քննարկվել է նախ իրենց սկզբնական կուսկազմակերպություններում, ապա՝ փոխադրվել շրջկոմի բյուրո: Եվ դա լավ միջոց է, որպեսզի ղեկավարը, առավել ևս կոմունիստ ղեկավարը, պատասխանատվություն զգա ոչ միայն նրանց առաջ, ովքեր ղեկավարում են իրեն, այլև նրանց առաջ, ում ինքն է ղեկավարում:

Հայտնի բան է, որ կուսակցական պահանջկոտությունը, կարգապահությունը հենվում են ոչ թե վախի, այլ մարդկանց, կոմունիստների բարձր գիտակցականության վրա: Սակայն դա ընդհանուր ոչինչ չունի այն ներողամիտ, ոչ պահանջկոտ



վերաբերմունքի հետ, որը երբեմն, ցավոք, դրսևորվում է առանձին կուսկազմակերպություններում առանձին կադրերի նկատմամբ: Եթե, օրինակ, ժամանակին կուսակցական պահանջկոտության դիրքերից գնահատվեր Այգաբացի և Ծիրակի տնտեսությունների նախկին ղեկավարներ Հ. Մարտիրոսյանի և Պ. Հուրոյանի, Արևիկի, Կառնուտի, Ղարիբջանյանի, Բայանդուրի գյուղական սովետների դարձյալ նախկին նախագահներ Գ. Սողոյանի, Գ. Սահակյանի, Հ. Գրիգորյանի, Վ. Մխիթարյանի, միջտնտեսային շինարարական ձեռնարկության ղեկավար Լ. Գրիգորյանի գործունեությունը, բարձրացվեր նրանց պատասխանատվությունը, ապա հազիվ թե նրանց նկատմամբ ձեռնարկվեր վերջին միջոցը: Կազմակերպչականը:

Վերջում նորից կադրերի ռեզերվի մասին: Բավական հարուստ են մեր ռեզերվային թղթապանակները: Բայց գործը միայն ցուցակներ ունենալու մեջ չէ: Ռեզերվային կադրերը մշտապես գտնվում են շրջկոմի, կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում: Ամեն անգամ նրանց տրվում են նոր, դժվարին հանձնարարություններ: Դրանով օգնում ենք նրանց՝ քաջատեղյակ լինելու այն կոլեկտիվի, տեղամասի գործերին, որոնք հետագայում ղեկավարելու են: Հատուկ ուշադրություն է նվիրվում նաև նրանց ուսուցման գործի կազմակերպմանը: Ռեզերվում են աճել ու պատասխանատու աշխատանքի անցել կուսշրջկոմի, շրջսովետի գործկոմի ապարատների, շրջանային ագրոարդյունաբերական միավորման, տնտեսությունների, արդյունաբերական ու շինարարական կազմակերպությունների, ուսումնական հաստատությունների շատ աշխատողներ:

Կադրերի հետ մեր ամենօրյա աշխատանքում, որպես ճիշտ կողմնորոշիչ, ունենք ՀԿԿ XXVIII համագումարի այն պահանջը, որ գիտատեխնիկական առաջընթացի արագացման ասպարեզում մեր բոլոր ջանքերը ցանկալի արդյունք չեն տա, եթե մենք մշտապես չմեծացնենք մեր ինտելեկտուալ պոտենցիալը, եթե չունենանք անհրաժեշտ թվով բարձր որակավորման կադրեր՝ թե՛ բանվորական, թե՛ ինժեներական, թե՛ գիտական և այլ կադրեր, իրենց գործի լավ մասնագետներ, պրոֆեսիոնալ բարձր պատասխանատվության մարդիկ, որոնք կարողանան որոնել ու գտնել, ստեղծել ու ստեղծագործել, կիրառել գտածը, նյութականացնել գաղափարը:

---

# ԿԵՆԴԱՆԻ ԿԱՊԸ ԼՍԱՐԱՆԻ ՀԵՏ

Դ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

Առաջին ծանոթությունը պրոպագանդիստ Գրետա Հայրապետյանի հետ կայացավ հետևյալ կարգով: «Շրջանում իրենց գործը սիրող, փորձառու, մարդկանց սրտերը տանող ճիշտ ուղիներ որոնող բազմաթիվ պրոպագանդիստներ, ագիտատորներ, դասախոսներ ունենք,— գրույցի ժամանակ ասաց ՀԿԿ Մեղրու շրջկոմի քարտուղար Սիրուն Սարգսյանը,— նրանցից մեկը ժողկրթության բաժնի տեսուչ Գրետա Հայրապետյանն է: Արժե որ գրվի նրա մասին: Վերջերս կուսշրջկոմի բյուրոն լսեց պրոպագանդիստի հաշվետվությունը, հավանություն տվեց նրա գործունեությանը և սկզբնական կուսկազմակերպություններին հանձնարարեց տարածել նրա աշխատանքի փորձը: Նա պարապմունքը վարում է այնպես, որ այն ընթանա աշխույժ, հետաքրքրություն առաջացնի ունկնդիրների մոտ: Ընդ որում հաշվի է առնում վերջիններիս աշխատանքային և հասարակական գործունեության բնույթը, կրթվածության մակարդակը»:

Այնուհետև նրա մասին ինձ պատմեց Մեղրու պահածոների գործարանի կուսկազմակերպության քարտուղար Նունե Հակոբյանը.

— Վեցերորդ տարին է, ինչ Գրետա Հայրապետյանը ղեկավարում է մեր ձեռնարկությունում գործող մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցը: Ինչպես ասեմ, որ համոզիչ լինի իմ տված գնահատականը: Այն, որ ունկնդիրները յուրաքանչյուր պարապմունքից առաջ անհամբերությամբ սպասում են իրենց պրոպագանդիստին, որ ամբողջ ուսումնական տարվա ընթացքում ոչ մի անհարգելի բացակայություն չի լինում, որ երբեմն պարապմունքը սահմանված ժամանակից երկար է տևում, ոչ ոք չի շտապում տուն գնալ, արդեն ինքնին բնորոշում են Հայրապետյանին: Իսկ մենք բոլորս գիտենք, որ ունկնդիրները հաճախ դժվարությամբ են ներկայանում պարապմունքի, որ, ցավոք, այն հետք չի թողնում, ձևական բնույթ է կրում... Մինչդեռ Հայրապետյանի պարապմունքները կենդանի զրույց են, հարցի անկաշկանդ քննարկում, որտեղ երբեմն դժվար է որոշել՝ ով է ունկնդիրը, ով՝ պարապմունքը վարողը: Եվս մի լրացում. նա կարողանում է մարդկանց ուշադրությունը բևեռել գլխավորի վրա, ընդհանուր պրոբլեմները տեղայնացնել, պարզեցնել, հուշել յուրաքանչյուրի տեղը արծարծվող խնդիրների իրականացման համար մղվող պայքարում:

Գրետա Հայրապետյանը երկար տարիներ եղել է կոմերիտական աշխատող, ուսուցչուհի, միաժամանակ մոտ երկու տասնամյակ է, ինչ ստանձնել է պրոպագանդիստի պատվավոր պարտականությունը: Եվ ահա մանկավարժական գիտելիքներն ու փորձը, մարդկանց, հատկապես երիտասարդության հետ ամենօրյա շփումները, նրանց հոգեբանությանը լավատեղյակ լինելը շատ են օգնում նրան պրոպագանդիստական աշխատանքում: Հմուտ մանկավարժը ձգտում է հետաքրքիր դարձնել մատուցվող նյութը այն հաշվով, որ յուրաքանչյուր պարապմունք օգնի ունկնդիրներին՝ գործնական ճիշտ հետևություններ անելու տեսական դրույթներից, ըմբռնելու ժամանակի հրատապ պահանջները, նպաստելու կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների անթերի լուծմանը: Իր երկարամյա պրոպագանդիստական աշխատանքի փորձի հիման վրա նա հանգել է այն համոզման, որ պարապմունքի հաջողության գրավականը ունկնդիրների հետաքրքրությունը շարժել կարողանալու, ուսումնասիրվող թեմայի հանդեպ նրանց տրամադրելու մեջ է:

Պրոպագանդիստ Գ. Հայրապետյանը երբեք չի բավարարվում ձեռք բերածով, մշտապես հարստացնում է իր տեսական գիտելիքները, ամեն մի պարապմունքի նախապատրաստվում մեծ բարեխղճությամբ: Ավելին, պրոպագանդիստը, որպեսզի



իրազեկ լինի իր ունկնդիրների աշխատանքային առօրյային, հաճախ է զրուցում ձեռնարկության ղեկավարների, կուսկազմակերպության քարտուղարի հետ, վերցնում անհրաժեշտ տվյալներ, տեղեկանում կոլեկտիվի առջև տվյալ շրջանում դրված կարևորագույն խնդիրների, չլուծված պրոբլեմների մասին: Եվ, այսպես, բազմակողմանիորեն նախապատրաստված է մտնում լսարան, ուր նրան սպասում են քաղդպրոցի 15 ունկնդիրները՝ երիտասարդ կոմունիստներ, բանվորներ, արտադրության միջին օղակի հրամանատարներ:

— Պարապմունքները հիմնականում անցկացնում եմ ակտիվ զրույցի ձևով,— պատմում է Գ. Հայրապետյանը,— գրավոր տեքստերից գրեթե չեմ օգտվում, ջանում եմ, որ ամեն մի պարապմունք ոչ միայն բովանդակությամբ, թեմայով, այլև ձևով, ընթացքով չնմանվի նախորդին, ինչ-որ բանով տարբերվի, նոր տարրեր պարունակի: Այդ հարցում ինձ հաճախ օգնում են ունկնդիրներս: Նրանք արտահայտում են հետաքրքրական մտահղացումներ, անում գործին օգնող առաջարկներ:

Դա, իրոք, դժվար է, բայց որոնող մտքի տեր, ձեռք բերվածով երբեք չհանգստացող պրոպագանդիստը կարողանում է հասնել դրան: Օրինակ, նա ունկնդիրներից առանձնացրել է, այսպես կոչված, քաղինֆորմատորներ: Ամեն անգամ նրանցից որևէ մեկը պարապմունքից առաջ, 5—6 րոպեի ընթացքում, հաղորդում է տալիս մեր երկրում և միջազգային կյանքում տեղի ունեցած կարևորագույն իրադարձությունների մասին: Կամ պարապմունքն աշխուժացնելու մեկ այլ միջոց. փոքրիկ արկղի մեջ գցվում են տվյալ թեմային վերաբերող հարցեր: Ունկնդիրները վերցնում են և նրանցից յուրաքանչյուրը պատասխանում է իրեն բաժին ընկած հարցին: Ապա՝ լրացնում են միմյանց: Այս ձևը կիրառվում է հատկապես ամփոփիչ պարապմունքների ընթացքում կամ երբ ավարտվում է առավել կարևոր թեմայի ուսումնասիրումը:

Պրոպագանդիստը կիրառում է պարապմունքները հետաքրքիր դարձնելու և ունկնդիրների ակտիվությունը բարձրացնելու նաև այլ ձևեր, որոնք նպաստում են ձեռնարկության համար կենսական նշանակություն ունեցող և կոլեկտիվի անդամներին հուզող հրատապ հարցերի լուծմանը: Այսպես, գործարանի գլխավոր մեխանիկ Հարություն Պողոսյանը նրա առաջարկով երկու անգամ ունկնդիրներին իրազեկ է պահել ձեռնարկությունում տեխնիկական և տեխնոլոգիական նորույթների ներդրման և դրանց տնտեսական արդյունավետության մասին: Դարձյալ նրա խնդրանքով պարապմունքներից մեկում ՀԿԿ Կենտկոմի 1986 թվականի հոկտեմբերյան պլենումի արդյունքների մասին զեկուցումով հանդես է եկել գործարանի դիրեկտորը:

Ուշագրավ էր անցյալ տարվա մայիսին տեղի ունեցած պարապմունքը: Այստեղ զեկուցումով հանդես եկավ գործարանի նախկին դիրեկտոր, պատերազմի և աշխատանքի վետերան Զավեն Սելիմյանը: Հատկապես երիտասարդ ունկնդիրները ուշադրությամբ էին լսում նրա պատմածը գործարանի անցած ուղու մասին: Նա տեղեկացրեց, որ, լինելով առաջին հնգամյակի ծնունդ, ձեռնարկությունն աստիճանաբար հզորացել է, տեխնիկապես վերազինվել և այժմ տարեկան թողարկում է 5,5 միլիոն պայմանական տուփ պահածո կամ շուրջ տասն անգամ ավելի, քան հիմնադրման առաջին տարիներին: Զ. Սելիմյանն ասաց, որ նվաճումների մեջ կա պահածոյագործների մի քանի սերունդների աշխատանքի վաստակը և պետք է հարստացնել կոլեկտիվի ստեղծած լավագույն ավանդույթները: Դրանցից մեկը սոցիալիստական մրցությունն է Ադրբեջանական ՍՍՀ Օրդուբադի շրջանի և Վրացական ՍՍՀ Զուգդիդիի շրջանի պահածոյագործների հետ: Այդ մրցությունը, իր նպաստը բերելով հարևան ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության հետագա ամրապնդմանը, միաժամանակ զգալիորեն օգնում է երեք կոլեկտիվների առջև ծառացած խնդիրների լուծմանը, պետական պլանների անվերապահ կատարմանը:

Վետերանը ունկնդիրների ուշադրությունը հրավիրեց այն բանի վրա, որ ներկայումս գործարանի հզորությունն արդեն չի բավարարում աճող պահանջներին և նոր ձեռնարկության կառուցումը դարձել է օրակարգի հարց: Դա հնարավորություն կտա ժամանակին վերամշակել կոլեկտիվ ու պետական տնտեսություններում աճեցրած բերքը, որոշակի քայլեր անել պարենային ծրագրով առաջադրված խնդիրների լուծման ճանապարհին:

Ունկնդիրների ակտիվությանը մեծապես նպաստում է նաև ռեֆերատների քննարկումների ձևը: Քաղաքականապես առավել պատրաստված ունկնդիրներին պրոպագանդիստ Գ. Հայրապետյանը նախապես տալիս է ռեֆերատների թեմաներ, գրականության ցանկը, օգնում նրանց՝ նախապատրաստվելու ելույթին: Այդ քննարկումները ևս անցնում են գործարար մթնոլորտում և մեծ հետաքրքրություն առաջացնում

ունկնդիրների շրջանում: Ուշագրավ ռեֆերատներով հանդես են եկել Գրետա Թամրազյանը («Արտադրանքի որակի արմատական բարելավումը համաժողովրդական գործ է»), Լևոն Մկրտչյանը («Մարդկային գործոնի ակտիվացման ուղիները երկրի սոցիալ-տնտեսական զարգացման գործում») և ուրիշներ: Կարևորն այն է, որ ռեֆերատները շոշափում են սեփական ձեռնարկության կոնկրետ խնդիրները և դրանց լուծման ուղիները՝ կուսակցության առաջադրած արագացման և վերակառուցման կուրսի լույսի ներքո:

— Իմ ունկնդիրներից շատերը դպրոցականների ծնողներ են,— ասում է պրոպագանդիստը,— ուստի, պարապմունքների ընթացքում, երբեմն որոշ ժամանակ եմ հատկացնում դպրոցական ռեֆորմի հետ առնչվող կամ մանկավարժական հարցերի պարզաբանմանը:

Թվարկածը սոսկ մի մասն է պրոպագանդիստ Գ. Հայրապետյանի կիրառած այն միջոցների, որոնց շնորհիվ պարապմունքները մեկը մյուսին չեն նմանվում, դառնում են հետաքրքրական, կենդանի, գրավիչ:

Այդ ամենը, ինչ խոսք, լավ է, գովեստի արժանի: Բայց պրոպագանդիստը քաջ գիտակցում է, որ քաղաքական ուսուցման գնահատման հիմնական չափանիշը նրա արդյունավետությունն է, ունկնդիրների աշխատանքային ու հասարակական ակտիվության բարձրացումը, նրանց ակտիվ կենսադիրքի ձևավորումը: Ուսուցումը կյանքի հետ սերտորեն շաղկապելու, տվյալ կոլեկտիվի առջև դրված սոցիալ-տնտեսական զարգացման խնդիրների լուծմանը ծառայեցնելու պահանջը նոր ուժով շեշտվեց կուսակցության XXVII համագումարում, ՍՄԿԿ Կենտկոմի՝ «1986—1987 ուսումնական տարում աշխատավորների քաղաքական և տնտեսագիտական կրթության կազմակերպման մասին» որոշման մեջ:

— Քաղաքական ուսուցման նպատակը այժմ շարադրված է շատ հստակորեն, և դա նկատելիորեն հեշտացնում է մեր գործը,— ասում է Գ. Հայրապետյանը: Պրոպագանդիստները կոչված են ուսումը սերտորեն շաղկապել ՍՄԿԿ XXVII համագումարի առաջադրած խնդիրների գործնական լուծման, պետական պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարման, արտադրության արդյունավետության բարձրացման, աշխատանքային կարգապահության ամրապնդման, մարդկային գործոնի ակտիվացման հետ:

Կուսակցությունը պահանջում է ազատվել ձևամոլությունից, սխոլաստիկայից և վերացականությունից, որոնք թուլացնում են ունկնդիրների հետաքրքրասիրությունն ուսուցման նկատմամբ, նվազեցնում դրա արդյունավետությունը: Ինչպես հայտնի է, ընթացիկ ուսումնական տարում բոլոր օղակներում ուսումնասիրում են ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը: Եվ ահա, յուրաքանչյուր թեմա անցնելուց առաջ պրոպագանդիստն առանձնացնում է առավել կարևոր 1—2 հարց, նախապես լինում գործարանում, զրուցում ղեկավարների հետ, վերցնում անհրաժեշտ տվյալներ և տեսական հարցերը սերտորեն շաղկապում գործարանի կոլեկտիվի առջև ծառացած տնտեսական ու սոցիալական խնդիրների հետ: Պարապմունքների ընթացքում լուրջ խոսակցություն է ծավալվում խնայողության ռեժիմի, հումքի արդյունավետ օգտագործման, արտադրանքի որակի, անտնտեսվարության դեմ պայքար մղելու շուրջը: Ընդ որում, օրինակները բերվում են ձեռնարկությունից:

Ուսումնասիրվող թեմաներից մեկում, օրինակ, շոշափվում էր խնայողության հարցը, և պրոպագանդիստը, համագումարի պահանջները շարադրելուց հետո, նշեց, որ դրա լուծման համար պահանջվում է յուրաքանչյուրի ամենօրյա ակտիվ մասնակցությունը: Այդ միտքը նա շեշտեց մի քանի անգամ, ապա վկայակոչեց գործարանի հետ կապված հետևյալ օրինակը: Աշուն է, այգիներում անեցրած քաղցրահամ բերքը՝ թուզ, նուռ, խաղող, սալոր, բերվում են գործարան՝ վերամշակման: Բեռնաթափման և փոխադրման ընթացքում մրգի մի մասը թափվում է գետին, և օժանդակ բանվորը այն ավլում, լցնում է աղբարկղը: Անփութության պատճառով փչանում է հողի բարիքը, որը աճեցվել է բազմաթիվ մարդկանց ջանքերով:

Զրույց ծավալելով նմանօրինակ փաստերի շուրջը՝ պրոպագանդիստը հարցի լուծումը չի առաջարկում, այլ հարց է տալիս, թե ինչպե՞ս անել, որ վիճակը շտկվի, ի՞նչ ուղիներ կան դրա համար: Եվ ունկնդիրները ակտիվորեն ներգրավվում են զրույցի մեջ, առաջարկներ անում: Իսկ ահա բանվորուհի Ազգուշ Կարապետյանը հանձն է առնում կարգավորել այդ հարցը: Ինչպես հետո պարզվեց, կարգավորեց: Վարպետ Սերյոժա Ղարախանյանը խոսեց թիթեղի թափոնների մի մասը օգտագործելու հնարավորության մասին: «Պատկերացրեք իմ ուրախությունը,— ասում է պրոպագանդիստը,— երբ մի քանի շաբաթ անց Ս. Ղարախանյանը հայտնեց, որ իր առաջարկի հիման վրա տնտեսվում է զգալի քանակությամբ թիթեղ»:

Մեկ ուրիշ օրինակ: Գործարանի տեսակավորման բաժնում զգալի քանակությամբ պտուղ էր թափվում, փչանում: Այդ հարցը շոշափվեց հերթական պարապմունքում և խնդիր դրվեց, որպեսզի այդ բաժնի նկատմամբ, բրիգադավարի հետ միասին, հսկողություն իրականացնեն նաև քաղդպրոցի ունկնդիրներ, էլեկտրիկ Վանիկ Բեգլարյանը և մուրաբայի արտադրամասի հսկիչ Ազգուշ Կարապետյանը: Արդյունքը գոհացուցիչ էր. արդյունավետ ու ամենօրյա հսկողության շնորհիվ կանխվեցին պտղի փչացումները:

Պարապմունքներից մեկն էլ նվիրված էր «Ինտենսիվացումը տնտեսական աճի նոր որակի հիմքն է» թեմային: Եվ, ահա, պրոպագանդիստ Գ. Հայրապետյանը, վկայակոչելով կոմունիստական շինարարության ամենահրատապ ու կյանքում ստուգված փաստերը, կուսակցության առաջադրած արագացման ու վերակառուցման կուրսից բխող պահանջները, ունկնդիրների ուշադրությունը կենտրոնացրեց գործարանի կոլեկտիվի կոնկրետ խնդիրների վրա: Մասնավորապես շոշափվեցին մեքենասարքավորումները արտադրողաբար օգտագործելու, արտադրանքի որակը բարելավելու, տնտհաշվարկն ամրապնդելու հարցերը: Այս թեմայով զրույցը վարելու համար հարկ համարվեց լսել նաև գործարանի դիրեկտոր Լ. Բաբայանի և առաջավոր բանվորուհի Գրետա Թամրազյանի խոսքը: Պարապմունքի թեմայի քննարկման ժամանակ հիմնական շեշտը դրվեց բարձրորակ արտադրանք թողարկելու հնարավորությունների ճիշտ և արդյունավետ օգտագործման վրա: Այսօր արդեն ձեռնարկությունը թողարկում է բարձրորակ պահածոներ:

Պարապմունքներից մեկում, խոսելով այն մասին, թե կուսակցությունը ներկայումս ինչպիսի սրությամբ է դնում աշխատանքային, տեխնոլոգիական կարգապահությունն ամրապնդելու հարցը, այն համարելով արագացման, արտադրանքի որակի բարձրացման կարևոր գործոն՝ պրոպագանդիստը հրապարակեց տվյալներ ձեռնարկությունում այդ բնագավառում գոյություն ունեցող թերությունների վերաբերյալ: Դարձյալ սկսվեց մտքերի աշխույժ փոխանակություն, եղան խելամիտ առաջարկներ, բոլոր ունկնդիրները ակտիվորեն մասնակցեցին հարցի քննարկմանը:

Այսպիսով, սրտաբաց զրույցի, սուր պրոբլեմներն առանց շրջանցելու և հարցի համակողմանի քննարկման միջոցով պրոպագանդիստը ձգտում է կուսակցության համագումարի նյութերը ոչ միայն պարզաբանել, այլև հասնել այն բանին, որ ամեն մի ունկնդիր դառնա նրա առաջադրած նոր խնդիրների լուծման ակտիվ մասնակից: Քաղդպրոցի բոլոր ունկնդիրներն այսօր արտադրության առաջավորներ են, աշխատում են «ոչ մի ետ մնացող քո կողքին» նշանաբանով, պայքարում ընդհանուր վերելքի համար:

Պրոպագանդիստ Գ. Հայրապետյանն աշխատում է անձնական ստեղծագործական պլանով, որտեղ մեծ տեղ է հատկացվում ինչպես տեսական, այնպես էլ պրակտիկ հարցերի պարզաբանմանն ու վերլուծությանը, ունկնդիրների առանձնած պարտավորությունների կատարման ապահովմանը:

Քաղաքական և տնտեսագիտական կրթության կազմակերպման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման համաձայն այժմ ամենուրեք քննարկում են այդ համակարգի հետագա վերակառուցման հարցերը: Այս առումով, ուշադրության արժանի է նաև Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատում ընթացիկ ուսումնական տարում կատարվող փորձը, որի էությունը հանգում է հետևյալին. ձեռնարկության առանձին տեղամասերում մեկ միասնական քաղդպրոցում զուգակցվում է ունկնդիրների և՛ քաղաքական, և՛ տնտեսագիտական ուսուցումը:

— Արտադրական ձեռնարկությունների որոշ օղակներում ուսուցման այդ երկու ձևերի միացումը, իմ կարծիքով, ճիշտ է և ընդօրինակման արժանի,— զրույցի ժամանակ ասաց Գ. Հայրապետյանը,— ուստի ես ևս առաջարկել եմ իմ ղեկավարած քաղդպրոցի ծրագիրը եկող ուսումնական տարում կազմել քաղաքական և տնտեսագիտական ուսուցման թեմաների զուգակցմամբ:

... Պրոպագանդիստ Գրետա Հայրապետյանի հետ վերջին հանդիպումը կայացավ Մեղրու կուսշրջկոմի քաղլուսկաբինետում: Եկել էր իրեն հետաքրքրող գրականությունն ընտրելու, շրջանի էկոնոմիկայի 1986 թվականի ցուցանիշներին ծանոթանալու, այնպես նախապատրաստվելու հերթական պարապմունքին, որ այն դարձյալ ինչ-որ բանով տարբերվի նախորդից:

Կրթություն և դաստիարակություն.

պրոբլեմներ և մտորումներ

# ԱՇԽԱՏԱՆՔԸ ԵՎ ՈՒՍՈՒՄԸ ԱՆԲԱԺԱՆ ԵՆ

**Ռ. ՎԱՐԴԱՆՅԱՆ**
***Ժողովրդական դեպուտատների Երևանի քաղաքային սովետի գործկոմի նախագահի տեղակալ***

ԱԺՈՂ ՍԵՐՆԴԻ ԱՊԱԳԱՅԻ ՀԱՆԴԵՊ խոր մտահոգությամբ են տոգորված կուսակցության XXVII համագումարի որոշումները: Երկրում համագումարի պահանջներով իրականացվող սոցիալ-տնտեսական զարգացման, արագացման ու վերակառուցման կոնցեպցիան թելադրված է նաև այն ամենի գիտակցումով, թե ովքեր են շարունակելու մեծ Հոկտեմբերի գործը գալիք հազարամյակի նախաշեմին, քանզի նրանց վրա են ընկնելու մեր հայրենիքի պատմական առաքելության մեծագույն պատասխանատվությունը, հասարակության համակողմանի առաջադիմության ու խաղաղության ապահովումը: «Ապագան շատ բանով որոշվում է նրանով,— ասաց ընկ. Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ XXVII համագումարին տված Քաղաքական զեկուցման մեջ,— թե մենք այսօր ինչպիսի երիտասարդություն ենք դաստիարակում: Սա ամբողջ կուսակցության, ամբողջ ժողովրդի խնդիրն է: Սա լենինյան կոմերիտմիության ամենակարևոր, արմատական խնդիրն է: Մեր երիտասարդությունը աշխատասեր է, պատրաստ է սխրագործության և ինքնազոհաբերման, նվիրված է սոցիալիզմին: Բայց հենց դա է ավագ սերունդների պարտքը. ամեն ինչ անել, որպեսզի հերթափոխը լինի ավելի խելացի, ավելի ընդունակ, ավելի կրթված, որպեսզի նա արժանավայել կերպով դեպի ապագան տանի մեծ Հոկտեմբերի պատգամած արդարության ու ազատության իդեալների էստաֆետը» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 81—82):

Սովետական երկրի պատմությունը անխզելիորեն կապված է դպրոցի հետ: Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից անմիջապես հետո Վ. Ի. Լենինը պատգամեց դպրոցի վերակառուցման միջոցով վերացնել անգրագիտությունը, ստեղծել նոր կուլտուրա, նոր կենցաղ, նոր հարաբերություններ, մեր հայրենիքի բոլոր ժողովուրդներին դուրս բերել սոցիալիստական կյանքի մայրուղի:

Կրթության ու դաստիարակության ասպարեզում ձեռքբերումները սոցիալիստական հասարակարգի, մեր ապրելակերպի մարդասիրության ու արդարության պերճախոս վկայությունն են: ՍՍՀՄ-ում հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցներում այժմ սովորում է 45 մլն մարդ, 17 մլն երեխաներ ընդգրկված են նախադպրոցական ցանցում: Նրանց տրամադրության տակ դրված են շուրջ 90 հազար արտադպրոցական հիմնարկներ: Ավելի քան մեկ միլիոն երեխաներ պարապում են երաժշտական ու արվեստի դպրոցներում, հինգ ու կես միլիոն պատանիներ ընդգրկված են գեղագիտական ու գեղարվեստական խմբակներում և ստուդիաներում: Պատանի քաղաքացիների հոգևոր աշխարհի ձևավորման ամենաակտիվ միջոցներն են դարձել կինոն, թատերական ու երաժշտական ներկայացումները, գրքերն ու հեռուստատեսային հաղորդումները, թերթերը և հանդեսները:

Կրթական գործի վիթխարի թռիչքի կենդանի առհավատչյան է Սովետական Հայաստանը: Մեծ լուսավորիչը՝ Խաչատուր Աբովյանը, երազում էր ապրել այն ժամանակներում, երբ կարող էր ունենալ թեկուզ 100 աշակերտ: Ներկայումս 1.479 հանրակրթական դպրոցներում կրթություն է ստանում 600 հազարից ավելի աշակերտ, 13 բարձրագույն դպրոցներում, 66 միջնակարգ մասնագիտական հաստատություններում ուսանում են ավելի քան 100 հազար սովորողներ: Հարյուրից ավելի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում մասնագիտական և հանրակրթական կրթություն են ստանում 47 հազար պատանիներ:



ՍՍՀՄ-ում կենսագործվող հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմը իրավամբ վերածվել է համաժողովրդական, համակուսակցական ու համապետական գործի, որի իրականացմամբ պետք է լուծվեն մեր կյանքի արմատական, սկզբունքային շատ խնդիրներ: Ռեֆորմը պահանջում է ըստ ամենայնի զարգացնել ժողովրդական կրթության համակարգը, բարձրացնել նրա բոլոր օղակների գործունեության արդյունավետությունը, կատարելագործել սովորողների աշխատանքային, բարոյական ու գեղագիտական դաստիարակության ձևերն ու մեթոդները: Ռեֆորմի վերջնական նպատակը աճող սերնդին կյանքին նախապատրաստելն է: Կուսակցությունը պահանջում է դպրոցականների մեջ դաստիարակել աշխատասիրություն, հասարակայնորեն օգտակար աշխատանք կատարելու պահանջմունք: Արտադրողական աշխատանքը անհատի ընդհանուր և համակողմանի զարգացման, երիտասարդության մեջ ամուր կոմունիստական համոզմունքների ձևավորման պարտադիր պայմանն է: Դեռևս 1897 թվականին Վ. Ի. Լենինը գրել է. «... չի կարելի պատկերացնել ապագա հասարակության իդեալը առանց ուսուցումը միացնելու երիտասարդ սերնդի արտադրողական աշխատանքի հետ. ո՛չ ուսուցումն ու կրթությունն առանց արտադրողական աշխատանքի, ո՛չ արտադրողական աշխատանքն առանց զուգահեռ ուսուցման ու կրթության չեն կարող դրվել այն բարձրության վրա, որ պահանջում են տեխնիկայի արդի մակարդակը և գիտական իմացության վիճակը» (ԵԼԺ, հ. 2, էջ 606):

Նշելով, որ դպրոցական աշխատանքի վերակառուցման տեմպերն ու խորությունը առայժմ չեն կարող մեզ բավարարել, կուսակցության XXVII համագումարը առաջ քաշեց խնդիր, այն է՝ «... ավելի լրիվ իրականացնել արտադրողական աշխատանքի հետ ուսուցման միավորման լենինյան սկզբունքը, ավելի վճռականորեն ձգտել ուսուցման արդյունավետության բարձրացմանը, ինքնուրույն կյանքին ու աշխատանքին երիտասարդության նախապատրաստության արմատական բարելավմանը, նոր հասարակության գիտակից կառուցողների դաստիարակմանը» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 68): Ի դեպ, ասենք, որ երիտասարդության պրոֆեսիոնալ-աշխատանքային դաստիարակության հարցերը վերջին տարիներին դարձել են մանկավարժների, հոգեբանների, փիլիսոփաների և սոցիոլոգների գիտական հետազոտությունների առարկա: Միաժամանակ այս խնդրի վերաբերյալ ավելի շատ են գիտական, հանրամատչելի, տեղեկատու-ինֆորմացիոն գրքեր հրատարակվում, որոնք հետաքրքրությամբ են ընդունվում ընթերցողների լայն շրջանների կողմից: Ի վերջո, յուրաքանչյուր երիտասարդ պրոֆեսիոնալ կողմնորոշման օգնության կարիք ունի, ընտանիքի, դպրոցի, պետական և հասարակական կազմակերպությունների օգնության կարիք:

Դպրոցականների աշխատանքային դաստիարակության կատարելագործումը կենդանի ստեղծագործական պրոցես է: Ուսումնական հաստատության կամարների տակ տարիների ընթացքում ձևավորվում է հասարակության ապագա անդամի գիտակցությունը, ընդլայնվում են նրա հետաքրքրությունների շրջանակները: Գիտատեխնիկական առաջընթացի ժամանակակից փուլում, երբ էկոնոմիկան զարգանում է ինտենսիվորեն, ավելի է կարևորվում դպրոցի դերը, ընդլայնվում են նրա ազդեցության ոլորտները: Դպրոցը վերածվում է որոշակի հասարակական ընտանիքի, որը պետք է ոչ միայն սոսկ գիտելիքներ տա, այլև ապահովի աճող սերնդի համակողմանի զարգացումը, նրա քաղաքացիական, բարոյական, աշխատանքային կոփվածքը: Հետևաբար, ժողովրդական կրթության կատարելագործման հիմքում ընկած՝ ուսման, աշխատանքի և դաստիարակության դաշինքը պիտի բազմակողմանի հնարավորություններ ստեղծի մասնագիտություն ընտրելու հարցում կողմնորոշվելու համար, նպաստի գիտելիքների նկատմամբ հաստատ վերաբերմունքի մշակմանը, անհատի ձևավորմանն ու ֆիզիկական զարգացմանը: Այս հարցին անդրադառնալով՝ ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը ՀԿԿ XXVIII համագումարում նշեց, որ «Դպրոցի և արտադրության դաշինքը ժամանակի հրամայական պահանջն է և այն պետք է ամրապնդել կուսակցական, սովետական, տնտեսական ու հասարակական կազմակերպությունների համատեղ ջանքերով»:

Մասնագիտություն ընտրելը դժվար, բարդ ու հակասություններով լի պրոցես է: Այդ գործում անհրաժեշտ է հաշվի առնել և՛ սոցիալական միջավայրը, և՛ երիտասարդի հակումները: Մեծ մանկավարժ Կ. Ուշինսկին ասում էր. «Եթե ճիշտ ընտրեք ձեր մասնագիտությունը, ապա երջանկությունը ինքը կգտնի ձեզ»:

Դպրոցականների աշխատանքային դաստիարակության, ուսուցման և մասնագիտական կողմնորոշման հարցերի լուծումը դարձել է իշխանության տեղական մարմինների՝ ժողովրդական դեպուտատների քաղաքային, շրջանային սովետների, ժողկրթբաժինների գործունեության կարևոր բնագավառներից մեկը: Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արդի փուլում, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, տեղական սովետների գործունեության հիմնական ֆունկցիաներից մեկը դպրոցական ռեֆորմի պահանջների գործնական ապահովումն է: Այս ուղղությամբ ժողովրդական դեպուտատների Երևանի քաղաքային, շրջանային սովետների գործկոմները, ժողկրթության մարմինները որոշակի աշխատանք են կատարել: Ռեֆորմը քննարկվել է քաղաքային, շրջանային սովետների նստաշրջաններում, ուր հաստատվել են նրա իրականացման կոմպլեքս միջոցառումներ, ինչպես նաև դպրոցների նյութատեխնիկական բազայի ամրապնդման, աշակերտների աշխատանքային դաստիարակության արմատական բարելավման, ըստ բնակության վայրի անչափահասների շրջանում տարվող աշխատանքների հետագա կատարելագործման, երեխաների ուսուցումը 6 տարեկանից սկսելու հնգամյա ծրագրեր:

Մայրաքաղաքի կրթօջախների, արտադրական, գիտական հաստատությունների գործունեությունը դպրոցի առջև ծառացած խնդիրների լուծման աշխատանքներում կոորդինացնելու, սովորողների կրթության ու դաստիարակության գործում միասնական պետական քաղաքականություն ապահովելու, նրանց աշխատանքային դաստիարակության ու մասնագիտական կողմնորոշման գործնական ղեկավարումն ուժեղացնելու նպատակով Երևանի քաղաքային սովետի և շրջանային սովետների գործկոմներին առընթեր ստեղծվել են ժողովրդական կրթության միջգերատեսչական հանձնաժողովներ: Մշակվել և քաղսովետի նստաշրջանում հաստատվել են հանրակրթական դպրոցների շենքային պայմանների բարելավման, դպրոցաշինության հնգամյա ծրագրերը: Որոշակի աշխատանքներ են կատարվում արտադպրոցական և արտադասարանական հիմնարկների, պիոներների տների, մարզական, երաժշտական դպրոցների, մանկական գրադարանների, ըստ հետաքրքրությունների մանկական տեխնիկական ու գեղարվեստական ակումբների հետագա զարգացման ասպարեզում: Միայն վերջին երկու տարում Երևանի շրջանային սովետների գործկոմները 69 ոչ բնակելի տարածություններ են հատկացրել ըստ բնակության վայրի երեխաների համար տեխնիկական ու մարզական ակումբներ ստեղծելու համար: Ներկայումս այդպիսի 107 խմբակներում ընդգրկված է 11 հազար 460 երեխա: Նախատեսվել է հնգամյակի վերջում այն հասցնել 248-ի, իսկ ընդգրկված երեխաների թիվը՝ շուրջ 72 հազարի: Դրանով իսկ որոշակի նախապայման կստեղծվի ռեֆորմի այն պահանջի իրականացման համար, որի համաձայն յուրաքանչյուր շրջանում ստեղծվելու է արտադպրոցական հիմնարկների համալիր և բոլոր սովորողներն ընդգրկվելու են դասերից հետո տարվող դաստիարակչական աշխատանքի բազմազան մասսայական ու անհատական ձևերի մեջ:

Ամենայն դրվատանքի է արժանի ՀԿԿ Մաշտոցի շրջկոմի և շրջսովետի գործկոմի նախաձեռնությունը՝ շրջանում երեխաների տեխնիկական ստեղծագործության կենտրոն ստեղծելու խնդրում, որը շուտով շահագործման կհանձնվի:

Մասնագիտական կողմնորոշման կոնցեպցիան այսօր դառնում է մանկավարժության ամենակարևոր, ամենագործնական ու, թերևս, ամենաբարդ ուղղությունը: Կուսակցության և կառավարության վերջին ժամանակներս ընդունած փաստաթղթերում նշվում է մասնագիտական կողմնորոշման ամբողջական համակարգի մշակման անհրաժեշտությունը, որն իրենից ներկայացնում է անհատի կենսագործունեության վրա ներազդման սոցիալական լայն շրջանակ: Մասնագիտական կողմնորոշման պրոցեսին մասնակցում են հասարակական կյանքի բազմաթիվ օղակներ ու գործոններ, այն ուղեկցվում է կյանքի իմաստի ակտիվ որոնմամբ: Այս առումով անհրաժեշտ են ոչ միայն կազմակերպական համակարգի մշակում ու կատարելագործում, այլև անհատի գործունեության, նրա հետաքրքրությունների ու հնարավորությունների իրականացում: Սխալ մոտայնություն է, երբ հաճախ անող սերնդի աշխատանքային դաստիարակության և մասնագիտական կողմնորոշման բարելավումն ու կատարելագործումը տարվում են նրան սոսկ աշխատանքային օղակներում ընդգրկելու ուղիով:



Անհրաժեշտ է, որ անհատի թե՛ գիտակցությունը, թե՛ վարքագիծը, թե՛ համոզմունքները ամբողջովին ենթարկված լինեն աշխատանքի ստեղծագործական բերկրանքի ըմբռնմանը, աշխատանքային դաստիարակության իրականացմանը: Իսկ այդ ծավալուն գործունեության առաջին ու հիմնավոր քայլերը կատարվում են դպրոցում, որտեղ ստեղծված են աշխատանքի և ուսման անքակտելիության սկզբունքի իրականացման որոշակի պայմաններ:

Դպրոցում ինչպե՞ս ենք օգտագործում ամբողջ աշակերտությանը հանրօգուտ աշխատանքում ընդգրկելու առկա հնարավորությունները, նրան ինչպե՞ս ենք մասնակից դարձնում դպրոցական շենքի վերանորոգմանը, ուսումնական ու գործնական պարապմունքների, ցուցադրական նյութերի հարստացմանը, կաբինետների, արհեստանոցների կահավորմանը, դպրոցի մուտքը, շրջապատը ծաղիկներով ձևավորելուն ու պահպանելուն և այլն: Փորձը ցույց է տալիս, որ այս ամենը հաջողվում է իրագործել միայն այն պարագայում, երբ դպրոցի գործունեության մեջ արմատավորված է սովորողների աշխատանքի նպատակասլաց ու արդյունավետ կազմակերպման մանկավարժական սկզբունքը:

Երևանի Ն. Վ. Գոգոլի անվան № 35 դպրոցը լավ համբավ է վայելում ոչ միայն մեր հանրապետությունում, այլև նրա սահմաններից դուրս: Նա ուսանելի օրինակ է ցույց տալիս աշակերտությանը հանրօգուտ աշխատանքում ներգրավելու, նրա ուժերը նպատակասլաց օգտագործելու միջոցով ուսումնադաստիարակչական աշխատանքների որակն ու արդյունավետությունը բարձրացնելու գործում: Դպրոցի շեֆ էլեկտրատեխնիկական գործարանը նորագույն հաստոցներով է կահավորել ուսումնական արտադրամասը, որի շնորհիվ ավելի է ամրապնդվել ուսման և աշխատանքի դաշինքը: Տեղին է հիշատակել «Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղություններում» նշված միտքը. «Ինչպես էլ որ դասավորվի դպրոցի շրջանավարտների հետագա ճակատագիրը, աշխատանքային կոփվածքը նրանց անհրաժեշտ է գործունեության ցանկացած ոլորտում»:

Մասնագիտական կողմնորոշումն անհատի գործունեության վրա ներազդման լայն սոցիալական պրոցես է, որին մասնակցում են դպրոցները, պրոֆտեխնիկական ուսումնարանները, բուհերը, արտադրությունը, հասարակական կազմակերպությունները, ընտանիքը, գաղափարադաստիարակչական աշխատանքի մյուս օղակները: Այդ տեսակետից էլ մասնագիտական կողմնորոշումը վերածվում է և՛ գործելակերպի, և՛ դաստիարակության: Իսկ դաստիարակության մասին գիտությունը, ամենից առաջ, գիտություն է մարդուն գեղեցիկ ապրել սովորեցնելու մասին: Հասարակության շահերին ենթարկված մասնագիտական կողմնորոշումով մենք օգնում ենք անհատին՝ լինելու երջանիկ, կյանքը կառուցելու և ապրելու գեղեցիկի օրենքներով:

Խոսելով արդի պայմաններում անող սերնդի մասնագիտական կողմնորոշման համակարգերի մասին՝ անհրաժեշտ է խորությամբ ուսումնասիրել և ներդնել ոչ միայն մեր երկրում, այլև սոցիալիստական ընկերակցության երկրներում գոյություն ունեցող լավագույն փորձը: Այս տեսակետից ուսանելի շատ օրինակներ կան Հունգարական Ժողովրդական Հանրապետությունում: Բուդապեշտում լայն համբավ է ձեռք բերել մասնագիտության ընտրության հարցերով զբաղվող գիտական կոնսուլտացիայի ինստիտուտը: Մասնագիտություն ընտրելու նպատակով ամեն տարի հազարավոր դպրոցականներ են դիմում այնտեղ: Ինստիտուտը յուրահատուկ քննություն է կազմակերպում՝ բացահայտելու դիմողների մտավոր հնարավորությունները, անձնական հակումները, վերաբերմունքը տեխնիկայի նկատմամբ: Այցելուների հետ զբաղվում են հոգեբաններ, բժիշկներ, մանկավարժներ: Ինստիտուտը հարցաթերթիկ-առաջադրանքներ է բաժանում, որից հետո հարցման արդյունքները հայտնում է դիմորդներին՝ որոշելու նրանց հակումները, պարզելու, թե նրանցից լավ բժիշկ, կոնստրուկտոր, փականագործ դուրս կգա՞: Ինստիտուտի 500 աշխատակիցներ հետազոտական աշխատանքներ են կատարում Բուդապեշտի դպրոցներում, զբաղվում աշակերտական տաղանդների բացահայտմամբ և որոշակի հանձնարարականներ մշակում ուսուցիչների համար:

Պատանիների ու աղջիկների մասնագիտական կողմնորոշման գործում հարուստ փորձ է կուտակվել նաև ԳԴՀ-ում: Այնտեղ յուրաքանչյուր ուսումնական տարում, սկսած VI դասարանից, կատարվում է հատուկ ուսումնասիրություն: Սովորողները լրացնում են իրենց բաժանված հարցաթերթիկները՝ նշելով այն մասնագիտությունները, որոնցով կցանկանային կյանք մտնելու ուղեգիր ստանալ: Ուսումնասիրության երկրորդ փուլում հարցման արդյունքները մշակվում են և տրամադրվում

մասնագիտական կողմնորոշման կենտրոններին: Այնուհետև երիտասարդության հակումների վերաբերյալ տվյալները հանձնվում են մանկավարժական կոլեկտիվներին, որոնք էլ ուղղություն են տալիս պատանիներին ու աղջիկներին, կառավարում նրանց գործունեությունը: Մասնագիտական կողմնորոշման ուսանելի շատ օրինակներ կան նաև մեր երկրի տարբեր հանրապետություններում:

ՍՍՀՄ-ում յուրաքանչյուր երիտասարդ թոլոր հնարավորություններն ունի իր նախասիրություններին ու կարողություններին համապատասխան մասնագիտություն ընտրելու: Ներկայումս դպրոցականներին աշխատանքի նախապատրաստելը թելադրվում է արտադրողական ուժերի զարգացման օբյեկտիվ օրինաչափություններով, մեր հասարակարգի կատարելագործման ժամանակակից պահանջներով: Կուսակցական, սովետական մարմինները, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, դպրոցների մանկավարժական կոլեկտիվները արդյունաբերական, գիտական, ուսումնական հաստատությունները վերջին ժամանակներս ակտիվացրել են իրենց ջանքերը աշակերտությանը հասարակական օգտակար աշխատանքի նախապատրաստելու, նրանց մասնագիտորեն ճիշտ կողմնորոշելու խնդրում:

Տասը տարուց ավելի է, ինչ ամուր կապեր են հաստատվել Երևանի Սովետաշենի տրիկոտաժի արտադրական միավորման և № 95 դպրոցի միջև: Միավորումը գլխավորող ֆաբրիկայում ստեղծել է առանձին արտադրամաս, որտեղ աշխատում են աշակերտները, իսկ դպրոցում՝ մասնագիտական կողմնորոշման կաբինետ: Ամեն տարի գրեթե 200 բարձր դասարանցիներ աշխատանքային ուսուցումն անցնում են միավորումում և մասնագիտություն ընտրելու լայն հնարավորություններ ունեն: Ամռան ամիսներին այստեղ գործում է աշխատանքային ջոկատ: Միայն վերջին երկու տարում դպրոցի 150 շրջանավարտներ անմիջապես աշխատանքի են անցել միավորումում: Համանման փորձ է կուտակվել «Հայէլեկտրամեքենա», «Լույս», «Էլեկտրոն» արտադրական միավորումների և ենթաշեֆ դպրոցների միջև: Դպրոցի ռեֆորմի կենսագործման նպատակով մայրաքաղաքի 155 բազային ձեռնարկություններում հնգամյակի վերջում կստեղծվի 9.447 աշխատանքային տեղ՝ 61 հազար աշակերտների համար:

Ուսուցումը արտադրողական աշխատանքի հետ միահյուսելու լավագույն միջոցներից են մեզանում ստեղծված ուսումնաարտադրական կոմբինատները: Միայն Երևանում գործող 6 կոմբինատներում 67 բանվորական մասնագիտությունների է տիրապետում մայրաքաղաքի 110 դպրոցների IX և X դասարանցիների 54 տոկոսը: Սակայն այս նոր օղակը ստեղծել է իր նոր պրոբլեմները: Մինչև այժմ պլանավորող մարմինները չեն որոշել ուսումնաարտադրական կոմբինատների մասնագիտությունները: Դա էլ հաճախ պատճառ է դառնում, որ որակավորում ստացածների մեծ մասը չի աշխատում ըստ իր մասնագիտության: 1985 թվականին Երևանի ուսումնաարտադրական կոմբինատներում որակավորում ստացած 3.681 հոգուց միայն 628-ը աշխատանքի անցավ ըստ մասնագիտության: Հարկ է, որ ուսումնաարտադրական կոմբինատների և բազային ձեռնարկություններում ստեղծվող աշխատանքային տեղերը խստորեն համապատասխանեն ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարային մասնագիտությունների պահանջին:

Անցած ուսումնական տարվանից հանրակրթական դպրոցներում մտցվել է նոր առարկա՝ «Ինֆորմատիկա և հաշվողական տեխնիկայի հիմունքներ»: Այս կապակցությամբ մայրաքաղաքի 27 դպրոցներ դարձել են հենակետային: Սակայն, ճիշտ կլինի, որ այդ առարկայի յուրացման համար հատկացվի շարժական տրանսպորտ՝ հաշվողական մեքենաներով, որը պայմաններ կստեղծի բոլոր դպրոցներում այն բարձր մակարդակով ուսուցանելու համար: Այս գործում պետք է լայնորեն ներգրավվեն ոչ միայն արտադրական ձեռնարկությունները, այլև գիտահետազոտական ինստիտուտները, բարձրագույն դպրոցը:

Այսօր զգալի միջոցառումներ են իրականացվում դպրոցներում ուսումնական, փորձարարական արհեստանոցներ ստեղծելու նպատակով: Ներկայումս Երևանի դպրոցներում գործում են 91 մետաղամշակման, 97 փայտամշակման, 16 ավտոգործի, 195 սպասարկման բնույթի արհեստանոցներ: Լայն թափ է ստացել նաև աշխատանքի և հանգստի ճամբարների, դպրոցական աշխատանքային ջոկատների ստեղծումը: 1985 թվականին մայրաքաղաքի բարձր դասարանցիներին այդ օղակներում ընդգրկելու շնորհիվ կատարվել է շուրջ 3 մլն ռուբլու հանրօգուտ աշխատանք: Հասունացած հարց պետք է համարել աշխատանքային ջոկատների միջոցով դպրոցների վերանորոգման, բակերի բարեկարգման, կանաչապատման աշխատանքների կատարումը: Սա պահանջում է նաև պլանավորող մարմինների և ժողովրդական կրթության աշխատողների անմիջական համագործակցություն: Սովորողներին հանրօգուտ աշխատանքի ներգրավելու ուսանելի փորձ են կուտակել պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանները, մայրաքաղաքի սննդի, սովետական առևտրի, քիմիատեխնոլոգիական տեխնիկումների մանկավարժական կոլեկտիվները:

Աշխատանքում նոր մարդու ձևավորման պրոցեսում լուծվում են թե՛ տնտեսական, թե՛ գաղափարադաստիարակչական վիթխարի խնդիրներ: Աճող սերնդին արտադրության, աշխատանքի մարդկանց հետ կապելու պրոցեսում ճիշտ է զուգորդվում ուսման և աշխատանքի անբաժանելիության խնդիրը: Սովորողները հանրակրթական գիտելիքներից զատ ուսումնառության ընթացքում տիրապետում են որոշակի մասնագիտության: Այդ նպատակով պետք է կանաչ ճանապարհ տրվի այն դպրոցների և արտադրական կազմակերպությունների գործունեությանը, ուր մշակվում ու իրագործվում են աշխատանքի և ուսման կոմպլեքսային միջոցառումներ, սիստեմատիկորեն կազմակերպվում առաջավոր բանվորներին ու մանկավարժներին նվիրված երեկոներ, ցուցահանդեսներ, թեմատիկ միջոցառումներ: Պրակտիկա է դառնում մասնագիտական կողմնորոշման միասնական օրերի անցկացումը: Սահմանված օրվա ընթացքում դպրոցականները լինում են ձեռնարկություններում, ծանոթանում մարդկանց աշխատանքին: Արտադրական կոլեկտիվում նրանք ապրում են բանվոր մարդկանց կյանքով ու գործով, որոշակի հարաբերությունների մեջ մտնում նրանց հետ, որն էլ մեծապես նպաստում է դպրոցականների մասնագիտական կողմնորոշմանը:

Մեր կարծիքով, այս կենսական խնդրի իրականացմանը շատ բանով կօգնի պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների կողմից հանրակրթական դպրոցներում մասնագիտական կողմնորոշման ու աշխատանքային ուսուցման կենտրոնների ստեղծումը: Երևանի 70-ից ավելի թերծանրաբեռնված դպրոցներ լիովին կարող են օգտագործվել ուսումնարանների կողմից՝ դրանցում անհրաժեշտ մասնաճյուղեր, կաբինետներ, արհեստանոցներ կազմակերպելու համար:

Ելնելով ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների, հանրակրթական ու պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի պահանջներից՝ անհրաժեշտ է կատարելագործել կուսակցական, սովետական մարմինների, հասարակական կազմակերպությունների, ընտանիքի, կոլեկտիվների, մասսայական ինֆորմացիայի միջոցների, դպրոցի հետ առնչվող բոլոր օղակների աշխատանքի ձևերն ու մեթոդները, դրանք դարձնել ինտենսիվ՝ սոցիալիստական հասարակարգի ժամանակակից էկոնոմիկայի և հասարակական-քաղաքական կյանքի վերափոխման ամբողջ պրոցեսին համապատասխան:

---

# ՌԵՖՈՐՄԻ ՀԻՄՆԱԴՐՈՒՅԹՆԵՐԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՄԱՆ ՈՒՂԻՈՎ

**Հ. ՄԱԽՉԱՆՅԱՆ**
**Մանկավարժական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

ՇՈՒՐՋ 60 ՏԱՐԻ Է, ԻՆՉ «ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՆԿԱՎԱՐԺ» ամսագիրը կատարում է մեր հանրապետությունում մանկավարժական տեսական մտքի և առաջավոր փորձի պրոպագանդիստի, մանկավարժների խորհրդատուի դժվարին, բայց և շնորհակալ դերը:

Սույն հոդվածում մեր նպատակը չէ վերլուծել ամսագրի խմբագրության երկարամյա աշխատանքը: Փորձենք ընդհանուր գծերով բնութագրել, թե նա, ելնելով ժողովրդական կրթության վերակառուցման վերաբերյալ հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղություններում և ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումներում արծարծված խնդիրներից, ինչպես է կազմակերպում իր աշխատանքը նոր պահանջների ոգով:

Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի ընդունումից հետո (1984 թ.) ամսագրի խմբագրությունը ոչ միայն բացել է նոր բաժին՝ «Ռեֆորմը գործողության մեջ» խորագրով, այլև էապես վերակառուցել իր աշխատանքը: Ռեֆորմի հիմնական ուղղություններին վերաբերող հարցերն իրենց արտացոլումն են գտել Հայկական ՍՍՀ լուսավորության մինիստր Ս. Հախումյանի «Դպրոցի կոչումը» (1984, № 8), մինիստրի առաջին տեղակալ Բ. Ավչյանի «Դպրոցը նորացման ճանապարհին» (1985, № 3), Բ. Բաղդասարյանի «Մանկավարժության խնդիրները հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի իրականացման գործում» (1985, № 2), Վ. Օսիպովի «Միջնակարգ կրթության կատարելագործման մի քանի պրոբլեմներ» (1985, № 10), Ս. Մանուկյանի «Դպրոցական ռեֆորմն ու բուհական մանկավարժության խնդիրները» (1985, № 6), Ա. Մանուկյանի «Դպրոցական ռեֆորմը և ուսուցչի մանկավարժական ինքնակրթության մի քանի հարցեր» (1985, № 10), Գ. Խաչատրյանի «Դպրոցական ռեֆորմը և աճող սերնդի ռազմահայրենասիրական դաստիարակությունը» (1985, № 12), Մ. Գասպարյանի «Դպրոցական ռեֆորմը և սովորողների առաջադիմության բարձրացման հարցերը» (1986, № 5) և այլ հոդվածներում:

Այս կարգի նյութերում մեկնաբանվում են ռեֆորմում առաջ քաշված դրույթները, տեղայնացվում և պարզաբանվում կիրառման կոնկրետ պայմանները, եղանակները, մեթոդներն ու ձևերը, մատնանշվում հեռանկարային անելիքները՝ դպրոցի բոլոր օղակների աշխատանքը ռեֆորմի ոգով վերակառուցելու ուղղությամբ: Ռեֆորմում միջնակարգ կրթության զարգացման հեռանկարները կապվում են առաջավոր փորձի ու տեսական ձեռքբերումների հետ: Այս հանգամանքը ենթադրում է, որ մանկավարժական պրոպագանդայի բոլոր միջոցները, այդ թվում և «Սովետական մանկավարժը» առավելագույն խնամքով պետք է ուսումնասիրեն և վերլուծեն ինչպես անցյալի, այնպես էլ ռեֆորմի ոգով իրենց աշխատանքը վերակառուցող ուսուցիչների առաջավոր փորձը, լայնորեն պրոպագանդեն մանկավարժական գիտությունների տեսական ձեռքբերումները, այն ամենը, ինչ համահնչուն է կյանքի այսօրվա պահանջներին:

Մեր երկիրը ոտք է դրել սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, սոցիալիստական դեմոկրատիան էլ ավելի ընդլայնելու, մի խոսքով հասարակական կյանքի բոլոր բնագավառները արմատական վերակառուցման ենթարկելու ուղին: Դրա իրականացնողը սովետական մարդն է, որի կոմպլեքսային դաստիարակության



և կրթության պրոբլեմն այսօր առանձնահատուկ նշանակություն է ձեռք բերել:

Այս իմաստով «Սովետական մանկավարժ» ամսագրի խմբագրությունը մեծ անելիքներ ունի: Նրա էջերում պետք է գիտական խորությամբ պարզաբանվեն այնպիսի տեսական, մեթոդաբանական հարցեր, ինչպիսիք են մարդկային գործոնի ձևավորման, հասարակական կյանքի տարբեր բնագավառների նորացման հոգեբանամանկավարժական հիմունքները, ուսումնադաստիարակչական աշխատանքում ձևամոլության, դոգմատիզմի և սխեմատիզմի վերացումը: Խմբագրության ուշադրության կենտրոնում պետք է լինեն նաև երկրի սոցիալ-տնտեսական և գիտատեխնիկական զարգացման գործում դպրոցի դերի բացահայտումը, հանրակրթական և պրոֆեսիոնալ կրթության աստիճանական մերձեցման, միավորման պայմաններն ու ուղիները, աճող սերնդի կոմունիստական դաստիարակության և կրթության նկատմամբ կոմպլեքսային մոտեցման սկզբունքներն ու մեթոդները, ուսուցչի, դպրոցի աշխատանքի գնահատման գիտական նոր չափանիշների մշակումը և օրվա այլ հրատապ հարցեր:

Ամսագրում տպագրված հոգեբանամանկավարժական տեսական բնույթի նյութերից արժե հիշատակել հոգեբան Ա. Նալչաջյանի հոդվածները, որոնց մեջ առաջ քաշված տեսական դրույթները արդիական են, բխում են հանրակրթական ու պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի և ՍՄԿԿ XXVII համագումարի որոշումների ոգուց: Դրանք նպաստում են ոչ միայն հոգեբանամանկավարժական գիտությունների զարգացմանը, այլև ժամանակակից դպրոցի վերակառուցման խնդիրների գիտական հիմնավորմանը և գործնական լուծմանը:

Ելնելով մեթոդաբանական ճիշտ դիրքերից՝ հեղինակը տեսական ընդհանրացումներ է անում հոգեբանական գիտության նվաճումները հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի կենսագործմանը ծառայեցնելու նպատակով:

Այսպես, օրինակ, «Հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմը և հոգեբանության խնդիրները» հոդվածում նա այն միտքն է առաջ քաշում, որ ռեֆորմի իրականացման հետ կապված միջոցառումների գիտական հիմքերը ստեղծելիս միշտ պետք է աչքի առաջ ունենալ, թե դրանք ինչ չափով են հաշվի առնում անձի բազմակողմանի զարգացման ու հասունացման սոցիալ-հոգեբանական օրինաչափությունները: Եվ հենց այդ դիրքերից էլ քննարկում է աշակերտի անձը և ապագա քաղաքացու հասարակական իդեալը, ուսուցչի, նրա մանկավարժական տաղանդի, վեց տարեկանից դպրոցում սովորելու խնդրի հոգեբանական կողմերը ու այլ պրոբլեմներ: Հեղինակն անում է ոչ միայն գործնական, այլև տեսական մտահանգումներ, առաջարկում մեթոդական հանձնարարականներ, որոնց նպատակն է իրական օգնություն ցույց տալ դպրոցի ռեֆորմի պահանջների գիտական կենսագործմանը:

Մենք համաձայն չենք հեղինակի այն պնդմանը, որ «մանկավարժությունը ի վիճակի կլինի լուծել իր առջև դրված դժվարին ու հսկայածավալ խնդիրները միայն այն դեպքում, եթե աստիճանաբար ավելի ու ավելի մեծ չափով դառնա կիրառական հոգեբանության բնագավառներից մեկը («Սովետական մանկավարժ» № 7, 1984): Չպետք է մոռանալ, որ մանկավարժության՝ որպես գիտության սոցիալական դերը շատ ավելի լայն է և նա ոչ թե դառնալու է կիրառական հոգեբանության մի ենթաբաժին, այլ ճիշտ հակառակը, հոգեբանության բոլոր ճյուղերի նվաճումները օգտագործելու է կոմունիստական դաստիարակության կարևորագույն խնդիրները լուծելու համար:

Ամսագիրը վերջին երկու տարում աշխատել է վեր հանել հանրապետության հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցների աշխատանքի առաջավոր փորձը: Մեր կարծիքով արժեքավոր և ուսանելի են հատկապես Երևանի № 104 դպրոցի աշխարհագրության ուսուցիչ Ս. Գնունու (1984, № 8) և № 19 դպրոցի մաթեմատիկայի ուսուցիչ Ն. Սահակյանի (1985, № 9) փորձը սովորողների ստեղծագործական մտածողությունը զարգացնելու, № 69 դպրոցի մաթեմատիկայի ուսուցչուհի Ն. Վերտելեցկայայի (1986, № 3) հաղորդակցման դասերը վարպետորեն կիրառելու, Իջևանի № 1 միջնակարգ դպրոցի աշխարհագրության ուսուցիչ-մեթոդիստ Ն. Թամանյանի հայրենագիտական թանգարան կազմակերպելու (1986, № 5), Ապարանի շրջժողկրթբաժնին կից մեթոդկաբինետի վարիչ, պատմության և հասարակագիտության ուսուցիչ Ս. Աբրահամյանի ուսուցման ընթացքում սովորողների մեջ գաղափարական համոզվածություն և կոմունիստական աշխարհայացք ձևավորելու (1985, № 12) և այլ ուսուցիչների առաջավոր փորձը:

Հատկապես խրախուսելի է այն փաստը, որ ամսագիրը առանձնահատուկ ուշադրություն է դարձնում մանկավարժության ոչ միայն գործնական, այլև տեսական միտքը հարստացնող, գիտահետազոտական հակումների տեր մանկավարժների փորձի

լուսաբանմանը: Դրանցից արժե հիշատակել Երևանի № 137 դպրոցի ուսուցիչ-մեթոդիստ, ՀՍՍՀ վաստակավոր ուսուցիչ Լ. Հակոբյանի հոդվածները՝ նվիրված հայ ժողովրդի պատմության հարցերին: Վաստակաշատ մանկավարժը հոդվածներում ներկայացնում է պատմության ուսումնասիրման իրենց փորձը, տարբեր թեմաների ուսուցման վերաբերյալ մեթոդական խելացի հանձնարարականներ տալիս, ցուցաբերում խոր ու բազմակողմանի գիտելիքներ:

Միաժամանակ նշենք, որ խմբագրությունը մեծ անելիքներ ունի պրակտիկ ուսուցիչների ավելի լայն զանգվածներին օգնելու՝ նրանց հրապարակի վրա եղած մանկավարժական արժեքավոր փորձին հաղորդակցելու խնդրում: Այս առնչությամբ ասենք, որ անհրաժեշտ է ընդլայնել ուսուցիչների թղթակցական կապը խմբագրության հետ:

Ամսագրի խմբագրությունը, հատկապես ռեֆորմից հետո, ընդլայնել է աշխատանքային դաստիարակությանը, մասնագիտական կողմնորոշմանը, պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթությանը նվիրված պրոբլեմների քննարկման շրջանակները: Անցած ժամանակաշրջանում նրա համարներում լուսաբանվել են սովորողների աշխատանքային դաստիարակությունը բարելավելու գործոնները (Մ. Մարտիրոսյան, 1984, № 6), հանրապետության դպրոցներում աշխատանքային դաստիարակության առանձնահատկությունները և նրա մեթոդիկայի կատարելագործման ուղիները (Գ. Աղուզումցյան, 1984, № 7), պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանում պրոբլեմային ուսուցման առանձնահատկությունները (Ե. Խաչատրյան, 1984, № 12), պրոֆեսիոնալ-տեխնիկական և միջնակարգ մասնագիտական կրթության հետագա բարելավման ուղիները ՍՄԿԿ որոշումների լույսի տակ (Ժ. Ափինյան, 1985, № 5), միջնակարգ ՊՏՈՒ-ի սովորողի սոցիալական միջավայրի և ուսումնական գործունեության ձևավորման մի քանի առանձնահատկությունները (Գ. Հովհաննիսյան, 1985, № 6), աշխատանքային դաստիարակության նկատմամբ կոմպլեքսային մոտեցում ցուցաբերելու անհրաժեշտությունը (Վ. Գրիգորյան, Բ. Մովսիսյան, 1985, № 8) և այլ հարցեր:

Այս ցանկին կարելի է ավելացնել շուրջ մեկուկես տասնյակից անցնող հոդվածներ ևս, սակայն հարցը միայն քանակը չէ: Հարկ է նշել, որ այս թեմատիկայով հրապարակված որոշ հոդվածներ զուրկ են տեսական և գործնական վերլուծությունից, օգտակար մտահանգումներից և ունեն սոսկ լրագրային ինֆորմացիայի նկարագրական, արձանագրական բնույթ (Գ. Ալեքսանյան, «№ 12 պրոֆտեխուսումնարանի քննությունների փորձից», 1985, № 6, Գ. Զատիկյան, Ծ. Թայիրյան, «Տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների ուսուցման մի քանի առանձնահատկությունների մասին», 1986, № 5 և այլն):

Ամսագիրը պատշաճ ուշադրություն է դարձնում հոգեբանամանկավարժական գիտությունների ընդհանուր բնույթի պրոբլեմների լուսաբանմանը: Այդ կարգի հոդվածները զետեղվում են «Դաստիարակություն և ուսուցում», «Հոգեբանություն», «Բուհական կրթություն», «Դպրոցի և մանկավարժության պատմություն», «Դպրոցական առողջապահություն և հիգիենա» ու այլ բաժիններում: Խմբագրությունն աշխատել է շոշափել հոգեբանամանկավարժական ընդհանուր բնույթի այնպիսի պրոբլեմներ, որոնք ծնվել են կյանքի ու գիտությունների առաջընթացից, մարդկային հարաբերությունների կատարելագործումից, ժամանակի առաջադրած հրատապ պահանջներից, որոնք այնքան հստակորեն իրենց քանաձևումն են գտել հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի հիմնական ուղղություններում:

Քանակով բավական շատ և բազմաբնույթ են այստեղ արծարծված պրոբլեմները: Դրանցից են՝ մայրենի, օտար լեզուների, պատմության, հասարակագիտության, կենսաբանության, քիմիայի, աշխարհագրության ուսուցման, բարոյական, գեղագիտական դաստիարակության, մասնավորապես կերպարվեստի, երգ-երաժշտության, ֆիզկուլտուրայի[1] գծով դասարանական աշխատանքների արդյունավետ կազմակերպմանը, դասի կառուցվածքին, ուսուցվող նյութի բովանդակությանը, կիրառվող մեթոդների ու ձևերի կատարելագործմանը, ուսուցման գործընթացի անհատականացմանը, սովորողների ուսման առաջադիմության ստուգմանը և գնահատմանը, ուսուցվող տարբեր նյութերի ընկալման առանձնահատկություններին, միջառարկայական կապերին, ուսումնական կաբինետների աշխատանքին վերաբերող և ուսում-

1 *Մայրենի, ռուսաց լեզուների, ֆիզմաթ առարկաներին վերաբերող հարցերը լայնորեն լուսաբանվում են «Հայոց լեզուն և գրականությունը դպրոցում», «Ռուսաց լեզուն հայկական դպրոցում» ամսագրերում և «Մաթեմատիկան ու ֆիզիկան դպրոցում» հավելվածում, ուստի և դրանց քննարկումը մեր նպատակադրումից դուրս է:*



նադաստիարակչական բնույթի այլ հարցեր:

Բազմազան և հարուստ է նաև ամսագրում դաստիարակության ընդհանուր ու կոնկրետ խնդիրներին նվիրված թեմատիկան: Դրանում մասնավորապես տեղ են գտել բարձր դասարանցիներին ընտանեկան կյանքին նախապատրաստելու գործում ինքնադաստիարակության դերին (Ս. Դյումինա, 1984, № 8), դաստիարակության ընթացքում անձի ձևավորմանը (Լ. Ջյուբին, 1984, № 9), Լենինի օրինակով երիտասարդներին դաստիարակելուն (Օ. Ղարիբջանյան, Կ. Ավագյան, 1985, № 5), հայ ժողովրդի պատմության ուսուցման ընթացքում ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության և համագործակցության լուսաբանմանը (Ա. Թադևոսյան, 1985, № 5), ընտանիքում երեխայի բարոյական դաստիարակությանը (Լ. Իսահակյան, 1985, № 5), հանրապետությունում գեղագիտական դաստիարակության դրվածքին (Ա. Առաքելյան, 1985, № 4), Պ. Սևակի ստեղծագործության մանկավարժական արժեքին (Լ. Կարապետյան, 1985, № 5), հանրակրթական դպրոցներում սովորողների ինքնադաստիարակչական աշխատանքի կազմակերպմանը (Հ. Թադևոսյան, 1985, № 6), անձի զարգացման հակասություններին (Ա. Բալյան, 1985, № 8), դաստիարակության գործում մայրական ոլորտին (Լ. Թորգոմյան, 1985, № 7), Հայրենական պատերազմի հերոսների օրինակի նշանակությանը (Ա. Հալաջյան, 1986, № 3) վերբերող և այլ հարցեր:

Ընդհանուր բնույթի մանկավարժական պրոբլեմներ շոշափող հոդվածների շարքում իրենց թե՛ տեսական, թե՛ գործնական արժանիքներով աչքի են ընկնում Վ. Հովհաննիսյանի «Ուսուցման բովանդակությունը որպես մանկավարժության հետազոտման առարկա» (1984, № 9), Ջ. Գյուլամիրյանի «Դասարանական ծնողական ժողովների կազմակերպման մի քանի հարցեր» (1984, № 9), Ե. Սարգըսյանի «Դասի կազմակերպման հոգեբանամանկավարժական նախադրյալները» (1985, № 1), Է. Խաչիկյանի «Աշխատող երիտասարդության հանրակրթական ուսուցման բարելավման մի քանի հարցեր» (1985, № 2), Ա. Առուստամյանի «Գնահատականի կրթադաստիարակչական ուժը» (1985, № 10) և այլ հոդվածներ:

Նույնը չի կարելի ասել այն նյութերի մասին, որոնց հատուկ են հակասական եզրակացություններ, ուր բացակայում է պատճառահետևանքային կապերի տրամաբանական ներդաշնակությունը: Բերենք օրինակներ այդպիսի մի հրապարակումից: Տ. Օվչիննիկովայի հոդվածը նվիրված է աշակերտի վարքի դրդապատճառներին (1985, № 10): Հեղինակը մի դեպքում գտնում է, որ «Կարգապահ բարձր բարոյական վարքը պայմանավորված է սոցիալական պահանջմունքներով» (էջ 30), մոռանալով հիշատակել նաև անձնային արժեք ունեցող գործոնները: Հաջորդ էջում նա գրում է. «...դպրոցականի վարքը դետերմինացված է հասարակական հարաբերություններով ու պայմանավորված անձնային հատկանիշներով...» (էջ 31), որը միանգամայն ճիշտ է: Այնուհետև հոդվածագիրը հայտարարում է. «Դպրոցականի բարոյական դաստիարակվածության մակարդակը անմիջականորեն կախված է դրդապատճառի բովանդակությունից» (էջ 31), բայց չէ՞ որ ընդհանուր առմամբ ճիշտ չէ անձնավորության դաստիարակվածության ընդհանուր մակարդակը կախման մեջ դնել տվյալ կոնկրետ դրդապատճառի բովանդակությունից: Շատ դեպքերում ընդհանուր բարձր դաստիարակվածության մակարդակ ունեցող անձինք տարբեր պատճառներով (ֆրուստրացիայի, աֆեկտիվ վիճակներ, ինքնակառավարման մեխանիզմի խաթարում և այլն) տեղիք են տալիս կոնկրետ դրդապատճառով պայմանավորված անհարիր վարվեցողության և ընդհակառակը:

Բերված օրինակները վկայում են, որ հատկապես մարդու հոգեկանի և բարոյական վարքի բնութագրմանը վերաբերող հոդվածներում պետք է խուսափել կատեգորիկ պնդումներից, քարացած դեղատոմսերից ու մեխանիկական մեկնաբանումներից, հարցերի քննարկմանը ցուցաբերել դիալեկտիկական մոտեցում՝ թույլ չտալ հակասական եզրակացություններ:

Հաշվի առնելով անող սերնդի դաստիարակության գործում դպրոցի, ընտանիքի և հասարակայնության համագործակցված աշխատանքի հարանուն դերն ու նշանակությունը, ամսագրի խմբագրությունը 1986 թվականից պարբերաբար նյութեր է տպագրում ծնողների մանկավարժական ինքնակրթության համար: Մնում է ցանկանալ, որ խմբագրությունը այդ աշխատանքը կազմակերպի սիստեմատիկորեն, նպատակաուղղված ձևով ծնողական հասարակայնությանը մանկավարժական համակարգված, խոր ու բազմակողմանի գիտելիքներ հաղորդելու նպատակով:

Ուսումնադաստիարակչական աշխատանքների նկատմամբ կոմպլեքսային մոտեցումը նոր խնդիրներ է առաջադրում

ուսումնական, նախասիրական և արտաուսումնական պարապմունքների, ինչպես նաև դաստիարակչական բոլոր տիպի միջոցառումների բովանդակության, կառուցվածքի ու մեթոդիկայի, դաստիարակության, ուսուցման և զարգացման խնդիրների միասնական լուծման, բոլոր մանկավարժների գաղափարական-քաղաքական, մասնագիտական պատրաստության, մասնավորապես ուսուցման պրոցեսի կազմակերպման տեխնոլոգիայի և մանկավարժական տեխնիկայի առջև: Այդ պահանջները իրենց արտացոլումն են գտել ինչպես դպրոցի ռեֆորմում, այնպես էլ հետագայում ժողովրդական կրթության վերաբերյալ հրապարակված կուսակցական փաստաթղթերում: Ամսագրի խմբագրությունը պետք է հետևի, որ վերոհիշյալ թեմատիկայով տպագրվող նյութերում ուսուցման, դաստիարակության և զարգացման հարցերը մեկնաբանվեն միասնաբար, փոխկապված, որ հեղինակները մասնավոր փաստերը ոչ թե սոսկ նկարագրեն, այլ վերլուծեն, ոչ միայն արձանագրեն, այլև օգտակար տեսական ընդհանրացումներ ու գործնական մտահանգումներ կատարեն: Հարկավոր է խուսափել նաև մեթոդական շաբլոնից, ամեն մի, թեկուզ լավագույն փորձի, կույր ընդօրինակումից, անընդհատ և փորձով չստուգված հանձնարարականներ տալուց:

Ամսագրի խմբագրությունը «Դաստիարակություն և ուսուցում» խորագիրը կրող բաժնում սիստեմատիկաբար տպագրում է մանկավարժության ընդհանուր պրոբլեմներին և տեսական հարցերին նվիրված հոդվածներ: Մեր կարծիքով նպատակահարմար է այդ բաժնի հոդվածները այսուհետ տպագրել «Մանկավարժության ընդհանուր պրոբլեմներ» և «Մանկավարժության տեսություն» կամ «Ուսուցման և դաստիարակության տեսություն» խորագրերի տակ, որով և կշեշտադրվի մանկավարժության այդ երկու ուղղությունների կարևորությունը:

Միանգամայն ճիշտ նկատի առնելով այն հանգամանքը, որ ժամանակակից ուսումնական հաստատություններում աշխատանքի բոլոր բնագավառների գիտական կազմակերպումը պետք է խարսխվի ոչ միայն մանկավարժության, այլև հոգեբանության ընդհանուր հիմնադրույթների վրա, ամսագրի խմբագրությունը պարբերաբար լուսաբանում է ընդհանուր և մանկավարժական հոգեբանության այնպիսի կարևոր հարցեր, ինչպիսիք են մանկավարժական հոգեբանության խնդիրները մանկավարժի հայեցակետից, անձի բարոյական զարգացման փուլերը և հոգեկան հասունության պրոբլեմը, օժտվածության, դաստիարակության և տաղանդի առանձնահատկությունները, մարդկային ընդունակություններին, դպրոցականների տիպաբանությանը, հետաքրքրություններին, անձի հոգեկան վիճակներին, հիշողության և մտածողության պատմական ծագումնաբանությանը, դժվար սովորողների հոգեբանությանն ու մարդու հոգեկանին վերաբերող այլ հարցեր:

Սակայն դրանց բոլորի հեղինակներն էլ ճանաչված հոգեբան-գիտնականներ և դասախոսներ են: Այն տպավորությունն է ընտացվում, որ հանրապետության դպրոցներում չեն գտնվել թեկուզ և մի քանի շարքային ուսուցիչներ, որոնք ռեֆորմի հրապարակումից հետո ի վիճակի լինեին իմաստավորել ու վերլուծել սեփական փորձը:

Ամսագիրը վերջին երկու տարում զգալի ուշադրություն է դարձրել նաև նախադպրոցական, վեց տարեկան և կրտսեր դպրոցական տարիքի երեխաների կրթության ու դաստիարակության հարցերին: Հատկապես հանրակրթական և պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի և բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության վերակառուցման նախագծի հրապարակումից հետո «Սովետական մանկավարժը» ևս կոչված է անդրադառնալու մեր ժողովրդական կրթության համակարգի բոլոր օղակներին՝ սկսած նախադպրոցական ցանցից մինչև բուհական և միջնակարգ մասնագիտական և պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթություն: Միայն կոմպլեքսային մոտեցմամբ է հնարավոր բացահայտել ժողովրդական կրթության բոլոր օղակների փոխադարձ կապն ու պայմանավորվածությունը, նրանց աշխատանքում տեղ գտած թերությունների պատճառահետևանքային կապերը և օգնել այդ աշխատանքի գիտական վերակառուցմանը:

Քննարկվող ժամանակաշրջանում ամսագրում տպագրվել են բուհական մանկավարժության տարբեր հարցերին վերաբերող շուրջ մեկ տասնյակի հասնող հոդվածներ, որոնցում մասնավորապես շոշափվել են դասախոսի մանկավարժական հեղինակությանը (1984, № 12), երիտասարդ գիտնականների դաստիարակությանը (1985, № 3), մանկավարժության պատմության ուսուցումն ակտիվացնելու նպատակով տեղական հայրենագիտական նյութերի օգտագործմանը (1985, № 4), ուսանող երիտասարդության հայացքների և համոզմունքների ձևավորման հարցում ուսանողական կոլեկտիվի դերին (1985, № 5), մանկավարժության դասավանդման ընթացքում տրամաբանական ապացույցների կիրառմանը (1985, № 7), բուհում ուսման առաջադիմության ստուգման ու գնահատման մեթոդների կատարելագործմանը (1985, № 12), մանկավարժական առարկաների դասավանդման պրոֆեսիոնալ ուղղվածության ուժեղացմանը վերաբերող (1986, № 5) և այլ հարցեր:

Ինչպես երևում է վերոհիշյալ թվարկումից, շոշափված թեմատիկան ավելի շատ արտահայտում է դասախոս հեղինակների անձնական նախասիրությունները, այնինչ ցանկալի է, որ ամսագրի խմբագրությունը սերտ կապ հաստատի տարբեր բուհերի պրոֆեսորադասախոսական կազմի հետ և նրանց ակտիվ մասնակցությամբ նախօրոք կազմած նպատակաուղղված պլանի հիման վրա սիստեմատիկորեն լուսաբանի ամենից առաջ բուհի վերակառուցումից բխող հրատապ պրոբլեմները:

Միանգամայն ճիշտ ըմբռնելով ՍՄԿԿ XXVII համագումարի առաջ քաշած հիմնադրույթներն այն մասին, որ մեր հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման հիմնական գործոնը մարդկային, քաղաքացիական բարձր հատկանիշներով օժտված, ընդհանուր և մասնագիտական խոր ու բազմակողմանի գիտելիքներ ունեցող անհատն է, խմբագրությունը բազմազան նյութեր է հրապարակել ուսուցիչների ինքնակրթության վերաբերյալ: Ընդհանրապես XXVII համագումարից հետո ընկած ժամանակամիջոցում ամսագիրը ոչ միայն տպագրել է մի շարք տեսական-մեթոդաբանական բնույթի նյութեր՝ նվիրված ժողովրդական լուսավորության, կրթության ու դպրոցի արդի վիճակին, այլև փորձել է կոնկրետ օրինակներով ցույց տալ, թե ինչպես պետք է գործնական կիրառում գտնեն կուսակցության համաժողովի հիմնադրույթները դպրոցական կյանքի տարբեր բնագավառներում: Այդ իմաստով առանձնահատուկ ուշադրության են արժանի «Օգնություն ուսուցչին», «Ուսուցչի ինքնակրթության համար», «Իրավաբանական կոնսուլտացիա», «Անաղարտ պահենք մայրենին», «Նշանավոր տարելիցներ», «Ճանաչիր հայրենի հուշարձաններն ու հնությունները», «Ճանաչիր քո ժողովրդի պատմության հիշարժան վայրերը» խորագրերը կրող բաժինները, որտեղ տպագրվել են հաղորդումներ ու հրապարակումներ՝ նվիրված գերազանցապես կենսաբանական, հասարակական գիտություններին, գրականության և արվեստի տարբեր ճյուղերին: Չխոսելով այդ հոդվածների որակի մասին, որ մի շարք դեպքերում այնքան էլ բարձր մակարդակի չէ, կուզեինք նշել մի կարևոր հանգամանք: Այս բաժիններում զետեղվող նյութերը նույնպես զուրկ են որոշակի պլանավորումից: Հիմնականում նպատակ ունենալով օգնել մանկավարժների ընդհանուր և մասնագիտական ինքնակրթությանը, այնուամենայնիվ այստեղ հաճախ տպագրվում են այնպիսի նյութեր, որոնք պարզապես օգնություն են դիսերտանտներին: Սա անշուշտ օգտակար է ու անհրաժեշտ, սակայն հարկ է նկատել, որ բաժինների աշխատանքը պետք է նպատակային ձևով պլանավորել և, ամենից առաջ, զետեղել այնպիսի նյութեր, որոնք օգնեն ուսուցչի գաղափարական-քաղաքական, առարկայական ու մեթոդական պատրաստության կատարելագործմանը: Այլապես ցանկացած հոդվածի տպագրություն կարելի է արդարացնել «Ընդհանուր զարգացմանը օգտակար է» նշանաբանով, մի բան, որի համար ամսագրի խմբագրությունն իր սուղ հնարավորությունները շռայլելու իրավունք չունի:

Ամսագիրը պարբերաբար լուսաբանում է հանրապետության վաստակաշատ մանկավարժների առաջավոր փորձը, արժանի ձևով նշում նրանց անբասիր աշխատանքի ու կյանքի հոբելյանական տարելիցները:

Ամփոփենք: «Սովետական մանկավարժ» ամսագիրն ունի գաղափարական-քաղաքական և մասնագիտական ճիշտ դիրքորոշում:

Տարիների ընթացքում նա անշեղորեն բարձրացրել է իր գիտատեսական, մանկավարժական ու մեթոդական մակարդակը, իր շուրջն է համախմբել բանիմաց մասնագետների, թղթակիցների գործունյա ակտիվ, սահմանել հրապարակումների որոշակի թեմատիկա: Ամսագրի խմբագրությունը թղթակցական ակտիվի համագործակցությամբ սիստեմատիկաբար լուսաբանում է կուսակցության քաղաքականությունը ժողովրդական կրթության բնագավառում, օգնում մանկավարժական կոլեկտիվներին իրագործելու դպրոցի և բուհի վերակառուցման ծրագրերը:

Սակայն կյանքը, հասարակական հարաբերությունների զարգացումը, գիտատեխնիկական առաջընթացը նոր պահանջներ են դնում մանկավարժական մամուլի, այդ թվում նաև «Սովետական մանկավարժի» առջև: Այսօր ամենից առաջ վերակառուցման, նորացման ոգին պետք է իր արտացոլումը գտնի խմբագրության գործունեության բոլոր ոլորտներում՝ սկսած աշխատանքի բովանդակությունից, մեթոդներից, հրապարակման պատրաստվող նյութերի ընտրությունից ու մշակումից,

մինչև անհատական աշխատանքը հեղինակների հետ: Ամսագրի բոլոր բաժինները պետք է աշխատեն նպատակային ներդաշնակ պլաններով, որտեղ առավելագույն չափով արտահայտվեն հանրակրթական, պրոֆեսիոնալ դպրոցի և բուհի վերակառուցման բոլոր կարևորագույն խնդիրները, հոգեբանամանկավարժական գիտությունների նվաճումները և առաջավոր փորձը: Դրանով կվերանա նաև լուսաբանվող պրոբլեմների, հարցերի այն որոշ անհամամասնությունը, որ առայժմ նկատվում է ամսագրի աշխատանքում:

Ավելի լայնորեն և վերլուծաբար պետք է լուսաբանել աճող սերնդի գաղափարական, աշխատանքային, բարոյական, գեղագիտական, էկոլոգիական, տնտեսագիտական ու ֆիզիկական դաստիարակության նվիրված հարցերը, մանկավարժության նորույթները: Անշուշտ, ամսագրի գործունեության ոլորտից դուրս չպետք է մնան դպրոցավարությանը, արտադպրոցական ու արտադասարանական աշխատանքներին, գիշերօթիկ, հեռակա, երկարօրյա դպրոցներին և դպրոցի ու բուհի վերակառուցմանը վերաբերող պրոբլեմները:

Հարկավոր է դպրոցների, բուհերի, մանկավարժական գիտահետազոտական հիմնարկների, պրոֆտեխնիկական ուսումնարանների և միջնակարգ մասնագիտական հաստատությունների կոլեկտիվների հետ խմբագրության կապերն ավելի ամրապնդել, թղթակցական ակտիվը համալրել հոգեբանամանկավարժական գիտությունների և առաջավոր փորձի գիտակ ներկայացուցիչներով: Ամսագրում հրապարակվող բոլոր հոդվածները պետք է դիմեն ընթերցողի ոչ միայն մտքին, այլև սրտին, կարողանան ոչ թե պատրաստի, մաշված ճշմարտություններ հրամցնել նրան, այլ համոզել, մղել ինքնուրույն, ստեղծագործական նախաձեռնության ու որոնումների:

Ամսագրի էջերի ռացիոնալ օգտագործման հաշվին հարկ է բացել նոր բաժիններ, որոնք արտացոլեն դպրոցի, մանկավարժության բնագավառի նորացման շունչը, չպետք է խուսափել բանավեճային պրոբլեմներ առաջ քաշելուց, իհարկե, բացառելով անառարկա վիճաբանությունները և տեղ տալով այնպիսի հարցերի, պրոբլեմների քննարկմանը, որի արդյունքը անվերապահորեն կարող է տեսական և իրական օգուտ բերել: Միաժամանակ հարկավոր է ընդլայնել պրակտիկ մանկավարժներին ցույց տրվող օգնությունը, նրանց համար տպագրելով դպրոցին հուզող նյութեր, հաղորդումներ հրապարակել հոգեբանամանկավարժական գիտությունների նորույթներից, լայն տեղ հատկացնել առաջավոր մանկավարժների ուսանելի փորձի լուսաբանմանը:

Հրապարակման արժանի նյութերում, հատկապես գրախոսականներում պետք է խուսափել փաստագրական, նկարագրական ոճից, անառարկա դրվատանքներից, շեշտը դնելով վերլուծական բնութագրումների վրա:

Այստեղ տպագրվող հոդվածների լեզուն և ոճը ընդհանուր առմամբ գոհացուցիչ են, սակայն երբեմն պատահում են անհարիր ձևակերպումներ, ոճական անհարթություններ, օտար տերմինների անհարկի գործածություններ, որոնցից պետք է խուսափել:

Խմբագրությունը հաճախակի է կազմակերպում հանդիպումներ ընթերցողների հետ, սակայն առավել մեծ հրապարակայնություն ապահովելու համար նպատակահարմար է դրանց գրավոր հաշվետվությունները պարբերաբար ներկայացնել ընթերցող լայն հասարակայնությանը:

Կարծում ենք, ամսագրի ընթերցողների ցանկությունները արտահայտած կլինենք, ասելով, որ «Սովետական մանկավարժը» առաջիկայում ևս պատվով կկատարի աճող սերնդի կրթության ու դաստիարակության հրատապ խնդիրների համակողմանի լուսաբանման պատասխանատու ու շնորհակալ գործը:



# ԸՆԴԴԵՄ ԴԱՇՆԱԿՑԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԻ ՆԵՆԳԱՓՈԽՈՒՄՆԵՐԻ

**Ս. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**
**Պատմական գիտությունների թեկնածու**

Կուսակցության XXVII համագումարը նշեց, որ մեր գաղափարախոսական աշխատանքն ընթանում է սոցիալիստական և բուրժուական գաղափարախոսությունների սուր հակամարտության պայմաններում: Սոցիալիզմի, Սովետական Միության դեմ իմպերիալիզմի սանձազերծած «հոգեբանական պատերազմն» ըստ էության ագրեսիայի հատուկ ձևի՝ ինֆորմացիոն իմպերիալիզմի դրսևորում է, որը ոտնահարում է ժողովուրդների սուվերենությունը, պատմությունը, մշակույթը:

Ինչպես նշվեց ՀԿԿ Կենտկոմի 1986 թ. հոկտեմբերյան պլենումում, ՍՍՀՄ ժողովուրդների միջև սեպ խրելու, սոցիալիստական ինտերնացիոնալիզմին բուրժուական նացիոնալիզմ, զանազան հակասոցիալիստական կոնցեպցիաներ հակադրելու նպատակով բուրժուական պրոպագանդան ճիգ ու ջանք չի խնայում: Դա մեզ պարտավորեցնում է անզիջում պայքար մղել ընդդեմ բուրժուական գաղափարախոսության, մերկացնել սովետական ապրելակերպի, մեր ազգամիջյան հարաբերությունների դեմ ուղղված զրպարտանքը: Այս կապակցությամբ անհրաժեշտ է եռանդուն կերպով և հետևողականորեն մերկացնել դաշնակցության գաղափարախոսության հետադիմական էությունը, նրա պարագլուխների հակաժողովրդական քաղաքականությունը, արկածախնդրությունն ու հակասովետիզմը, վճռական հակահարված տալ Սովետական Հայաստանի, մեր մեծ հայրենիքի հասցեին նրանց զրպարտանքին:

Սոցիալիզմի երդվյալ հակառակորդների շարքում իրենց հակասովետական գործունեությամբ շարունակում են աչքի ընկնել բուրժուանացիոնալիստական էմիգրանտական կազմակերպությունների, այդ թվում նաև արտասահմանի հայկական գաղթօջախներում (սփյուռք) գործող դաշնակցություն կուսակցության ներկայացուցիչները: Վերջին ժամանակներս դաշնակցական մամուլի էջերում մեր երկրի հասցեին ուժեղ կամպանիա է ծավալվել՝ կապված ՍՄԿԿ XXVII համագումարում և Կենտկոմի 1985 թ. ապրիլյան պլենումում տեղ գտած այն քննադատության ու ինքնաքննադատության հետ, որն արվեց 70-ական թվականներին և 80-ական թթ. սկզբին մեր երկրի էկոնոմիկայում, սոցիալական ու հոգևոր ոլորտներում տեղ գտած անբարենպաստ միտումների առնչությամբ: Դաշնակցական մամուլը, այդ քննադատությունը չարանենգորեն օգտագործելով սովետական հասարակությունը հեղինակազրկելու նպատակով, ճըգնում է ժխտել, որ մեր կուսակցության՝ սեփական գործունեության նկատմամբ քննադատական վերաբերմունքը, ձեռք բերվածի իրատեսական գնահատականը ելակետ եղավ երկրի կյանքի բոլոր կողմերի վերակառուցման և արմատական նորացման կոնստրուկտիվ կուրսի, սոցիալ-տնտեսական զարգացման արագացման ստրատեգիայի առաջադրման համար:

Իր ընթերցողներից թաքցնելով ճշմարտությունը՝ դաշնակցական պրոպագանդան պնդում է, որ համագումարում, իբր, ոչ մի նոր բան չի եղել և «... յուսախաբ եղան անոնք, որոնք կ՛ակնկալէին որ... յանդուգն բարենորոգումներու պիտի ձեռնարկէր Խ. Միութիւնը» («Հորիզոն», Մոնրեալ, 1986 թ., 31 մարտի): Իսկ թե ինչ ի նկատի ունեն դաշնակցականները «յանդուգն բարենորոգումներ» ասելով, երևում է թերթի նույն համարում արտահայտած ափսոսանքից այն առթիվ, որ չնայած համագումարում եղած քննադատությանը, կանխատեսված աշխատանքները մնացել են «ընդհանուր սկզբունքներու մակարդակին վրայ»:

ՍՄԿԿ-ի մշակած արագացման ստրատեգիայում կարևոր դեր է վերագրված ազ-

որպես երկրորդ լեզու, որին ազատորեն տիրապետում են: Սակայն սա չի խանգարում դաշնակներին բացահայտ զրպարտանքի դիմելու ազգային լեզուների զարգացման գործում կոմունիստական կուսակցության վարած քաղաքականության հասցեին և գրելու, թե իբր հայ ժողովուրդը կարող է «... այս անգամ **ոգեպէս** զոհ դառնալ նորատիպ ցեղասպանութեան մը՝ լեզուասպանութեան ճամբով» («Ազդակ Շաբաթօրեակ», Բեյրութ, 1982 թ., 11 ապրիլի, էջ 267):

Օբյեկտիվ պատճառների հետևանքով սովետական մարդիկ կամավոր կերպով ռուսաց լեզուն ընդունել են որպես ազգամիջյան հաղորդակցման միջոց, առանց որի ՍՍՀՄ ազգերի ու ազգությունների փոխշահավետ համագործակցությունն ու զարգացումը փաստորեն, անհնար կլիներ: Բացի այդ, ռուսաց լեզուն կարևոր դեր է խաղում սովետական ժողովուրդների մերձեցման և եղբայրական բարեկամության ամրապնդման գործում: Մայրենի լեզվից զատ այլ լեզուների իմացությունը տվյալ մարդու կամ ազգի հոգևոր հարստության ու զարգացածության վկայություն է, այլ ոչ թե ասիմիլյացիայի նշան: Մեր երկրում մայրենի լեզվին, ինչպես նաև ռուսերենին, ՍՍՀՄ մյուս ժողովուրդների և օտար լեզուներին տիրապետելու բարձր մակարդակը ՍՄԿԿ-ի ազգային քաղաքականության դեմոկրատիզմի վկայությունն է:

Ոչ մի զրպարտությամբ հնարավոր չէ սքողել այն փաստը, որ մեր երկրում ազգային հարցի հաջող լուծման կարևորագույն հետևանքներից մեկը ՍՍՀՄ-ի բոլոր ազգերի ու ազգությունների լեզուների ու մշակույթների ազատ զարգացումն է: Սովետական իշխանության տարիներին ՍՍՀՄ-ի տարածքում արձանագրված 127 լեզուներից նույնիսկ մեկ առւլ ներկայացնող լեզուն մեռած լեզվի չի վերածվել, չի դադարել օգտագործվելուց և լեզվաբանության պատմության սեփականություն չի դարձել: ՍՍՀՄ սահմանադրությունը մեր երկրի տարբեր ռասաների ու ազգությունների պատկանող քաղաքացիների համար երաշխավորում է հավասար իրավունքներ, որոնց իրագործումն ապահովվում է ՍՍՀՄ բոլոր ազգերի ու ազգությունների համակողմանի զարգացման ու մերձեցման քաղաքականությամբ, քաղաքացիներին սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելով, մայրենի լեզվից և ՍՍՀՄ ժողովուրդների լեզուներից օգտվելու հնարավորությամբ **(տե՛ս ՍՍՀՄ Սահմանադրություն,** հոդ. 36, էջ 18):

ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում ասված է, որ «այսուհետև էլ կապահովվի մայրենի լեզուների ազատ զարգացումը և ՍՍՀՄ բոլոր քաղաքացիների կողմից դրանց իրավահավասար օգտագործումը» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 220):

ՍՍՀՄ ժողովուրդների հիրավի ազատ ազգային զարգացման կարևոր ցուցանիշ է մայրենի լեզվով գրքերի և բրոշյուրների վիթխարի աճը: Այսպես, 1984 թ. Հայկական ՍՍՀ-ում հրապարակվել է 1.102 անուն գիրք ու բրոշյուր, այդ թվում՝ 756-ը հայերեն: Ամբողջ տպաքանակը կազմել է 11,7 մլն օրինակ, այդ թվում՝ 9 մլն օրինակ հայերեն: 1940 թ. համեմատությամբ հայերեն լեզվով հրապարակումների տպաքանակը մեծացել է գրեթե 3,4 անգամ: 1984 թ. լույս են տեսել 89 անուն թերթեր, այդ թվում 79-ը՝ հայերեն (համապատասխանաբար 1 մլն 555 հազար և 1 մլն 431 հազար օրինակ միանվագ տպաքանակով), 92 անուն հանդեսներ և այլ պարբերականներ (դրանցից 54-ը՝ հայերեն), որոնց տարեկան տպաքանակը համապատասխանաբար կազմել է 24 մլն 213 հազար և 21 մլն 177 հազար օրինակ:

ՍՍՀՄ իրավահավասար ժողովուրդների փոխհարաբերությունները ինչ-որ հիերարխիայի ձևով ներկայացնելու փորձերը, երբ «կառավարող» ազգը, իբր, ճնշում, կլանում է մյուս ազգերին, բոլոր դեպքերում (լինի դա ՍՍՀՄ ժողովուրդների սոցիալ-քաղաքական, տնտեսական կամ հոգևոր զարգացումը) ուղղված են սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, ռուս ժողովրդի հետ ՍՍՀՄ մյուս ժողովուրդների եղբայրական դաշինքի դեմ: Փորձ է արվում նույնիսկ ապացուցելու, որ սոցիալիստական ինտերնացիոնալիզմն, իբր, «ռուսական գաղութակալության» տարատեսակ հանդիսացող «սովետական հեգեմոնիզմի» քողարկման համար մի ծխածածկույթ է:

Այսպես, դաշնակցություն կուսակցության XXII «ընդհանուր ժողովում» (1981 թ. դեկտեմբեր) ընդունված «Քաղաքական ուղեգիծ Խ. Հայաստանի նկատմամբ» փաստաթղթում ասվում է, որ սովետական կարգի «աշխարհակալական» բնույթին ու նպատակներին, ինչպես նաև քաղաքական, գաղափարախոսական ու տնտեսական ստրատեգիային համաձայն, «հայ ժողովուրդը հայրենական հողերու վրայ զրկուած է ոչ միայն քաղաքական, ընկերային ու տնտեսական իր հիմնական իրաւունքներէն, մարդկային ազատութիւններէն եւ ինքնազարգացման անկաշկանդ հնարաւորութիւններէն,



այլեւ իր ազգային ինքնուրոյն մշակոյթի բնականոն յառաջադիմութեան իրաւունքէն ու միջոցներէն...» («Ազդակ Շաբաթօրեակ», 1983 թ., 16 հունվարի, էջ 4):

Սակայն ինչպե՞ս բացատրել այդ դեպքում սովետական իշխանության տարիներին հայ ժողովրդի սոցիալ-տնտեսական, հասարակական-քաղաքական ու կուլտուրական աննախադեպ զարգացման փաստը: Ամենևին էլ անհրաժեշտ չզգալով միևնույն փաստաթղթում համատեղել երկու հակադիր, իրարամերժ դրույթներ, դաշնակցական գաղափարախոսները նրանում ընդունում են. «... Հայաստանի հայութեան ձեռք բերած ակնառու յաջողութիւնները ու նուաճումները կեանքի բոլոր ճակատներուն վրայ,— ընկերային, մշակութային, ուսումնակրթական, գիտահետազոտական ու ճարտարարուեստական մարզերուն մէջ հաստատապէս» (նույն տեղը, էջ 3) և դրանով իսկ ճգնում են Սովետական Հայաստանի ժողովրդին հակադրել սովետական իշխանությանը: Դաշնակցական մամուլի արտահայտություններն այս առթիվ հանգում են նրան, որ Սովետական Հայաստանի բոլոր հաջողությունների գրավականներն են «հայ ժողովուրդի աշխատունակութիւնը, տաղանդն ու ստեղծագործ կարողութիւնները...» («Հայրենիք», Բոստոն, 1981 թ., 5 փետրվարի), բայց ոչ ամենևին հասարակական-քաղաքական կարգերի բնույթը:

Անվիճելի է, անշուշտ, որ յուրաքանչյուր ժողովուրդ ինքն է իր պատմությունը կերտում, ստեղծում իր արժեքները, բայց անվիճելի է նաև, որ ինչքան էլ որ տաղանդավոր լինի այս կամ այն ժողովուրդը, նրա ստեղծարար գործունեության համար անհրաժեշտ են բարենպաստ սոցիալ-քաղաքական և տնտեսական պայմաններ: Ներկայիս դաշնակցական գաղափարախոսները, ըստ երևույթին, «մոռացել են» այն ողբերգական վիճակը, որի մեջ գտնվում էր տաղանդավոր և աշխատասեր հայ ժողովուրդը՝ Հայաստանում դաշնակների կառավարման ժամանակաշրջանում, երբ ամբողջ երկիրն ընկղմված էր ավերի, սովի և համաճարակների մեջ, երբ, ինչպես գրել է Ս. Կասյանը, «Հայաստանում գոյությունը դարձել էր անեծք, կյանքը՝ դժոխք» **(Ընտիր Երկեր,** «Հայաստան» հրատ., 1967, էջ 111):

Եվ միայն սովետական իշխանությունը, Հայաստանին բերելով սոցիալական և ազգային ազատություն, ամենանպաստավոր սոցիալ-քաղաքական և տնտեսական պայմանները ապահովեց հայ ժողովրդի խաղաղ, ստեղծարար գործունեության համար և արթնացրեց նրա հսկայական կարողությունները:

Հայաստանի օրինակով պարզորոշ երևում է կոմունիստական կուսակցության և սովետական պետության հետևողական կուրսը՝ ուղղված երկրի կենտրոնական շրջանների մակարդակից հատկապես հետ մնացած հանրապետությունների և շրջանների առավել արագ սոցիալ-տնտեսական և կուլտուրական զարգացմանը: Եթե 1922—1982 թթ. ՍՍՀՄ-ում արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալն աճել է 537 անգամ, այդ թվում՝ ՌՍՖՍՀ-ում 500 անգամ, ապա Հայկական ՍՍՀ-ում՝ 1.048 անգամ: Այդ նույն ժամանակաշրջանում գյուղատնտեսության համախառն արտադրանքն ավելացել է ՍՍՀՄ-ում 5,2 անգամ, ՌՍՖՍՀ-ում՝ 4,1, իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ 9,7 անգամ: 1970-ից մինչև 1983 թվականն ազգային եկամուտը մեծացել է ՍՍՀՄ-ում 82 տոկոսով, այդ թվում՝ ՌՍՖՍՀ-ում 83, իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ 146 տոկոսով: 1984 թ. ժողովրդական տնտեսությունում 1000 մարդուց բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեին. ամբողջությամբ վերցրած ՍՍՀՄ-ում՝ 868 մարդ, ՌՍՖՍՀ-ում՝ 863, իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ 915 մարդ:

Սոցիալիստական հասարակությունում հաստատվել է ոչ միայն բոլոր ազգերի ու ազգությունների իրավական, այլև փաստական հավասարություն, հետամնաց ազգային ծայրամասի հասկացությունը դադարել է գոյություն ունենալ: «Անցած ուղու արդյունքները համոզիչ կերպով վկայում են,— ասված է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունում,— **անցյալից մնացած ազգային հարցը հաջողությամբ է լուծված Սովետական Միությունում» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 219):

Սովետական Հայաստանը լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի վառ վկայությունն է: Այսօր հանրապետությունում մեկ օրում արտադրվում է այնքան արդյունաբերական արտադրանք, որքան արտադրվել է ամբողջ 1922 թ., այնքան էլեկտրաէներգիա, որի արտադրության համար 1919 թ. կպահանջվեր 23 տարի: Զբաղեցնելով Սովետական Միության տարածքի 0,13 տոկոսը և ունենալով նրա բնակչության 1,2 տոկոսը, Հայկական ՍՍՀ-ն արտադրանքի այնպիսի տեսակների գծով, ինչպիսիք են պղնձարջասպը, մոլիբդենը, քացախաթթուն, սինթետիկ կաուչուկը, շարժական էլեկտրակայանները, ուժային տրանսֆորմատորները, կենտրոնախույս պոմպերը, մետաղահատ հաստոցները, թողարկում է համամիութենական արտադրան-

քի 5-ից մինչև 35 տոկոսը: Հանրապետության արդյունաբերական արտադրանքն արտահանվում է ավելի քան 80 արտասահմանյան երկրների հասցեներով:

Հարկ է նշել, որ դաշնակցական մամուլը հաճախ իր հորինվածքների համար նյութ է քաղում Արևմուտքի «սովետագիտական» կենտրոնների և ամեն կարգի հակակոմունիստների ստեղծած հակասովետական զրպարտչագրերից: Այսպես, Փարիզում հրատարակվող դաշնակցական «Հայաստան» հանդեսը անսքող հրճվանքով իր էջերում զետեղել է հայկական ծագում ունեցող ֆրանսիացի պատմաբան Սեդա-Քլեր Մուրադյանի հետ հարցազրույցը, որում վերջինս, բացատրելով Հայկական ՍՍՀ-ի սոցիալ-տնտեսական, քաղաքական ու մշակութային զարգացմանը նվիրված իր դիսերտացիայի հիմնական դրույթներն ու հետևությունները, կույրի կերպով աղավաղել է ՍՄԿԿ ազգային քաղաքականության սկզբունքները: Մասնավորապես, հայտարարելով, թե, իբր, սովետական իրականությունում ինտերնացիոնալիզմը կորցրել է իր բուն իմաստը և այլևս գոյություն չունի, նա պնդում է, թե տնտեսության զարգացման առումով Հայաստանն, իբր, ընդհուպ մինչև 50-ական թվականների կեսերը, մատնված է եղել անուշադրության: Պնդելով, որ երկրի սոցիալիստական ինդուստրացմանն ուղղված կուսակցության կուրսը մեր հանրապետությունում սկսել է իրագործվել ոչ թե 20-ական թվականների երկրորդ կեսից, այլ 50-ական թվականների կեսերից, հեղինակը պնդում է, թե երկրի հետամնաց շրջանների զարգացման մակարդակների փաստական հավասարեցման կուսակցության քաղաքականությունը Հայաստանի նկատմամբ անարդյունք եղավ (տե՛ս «Հայաստան», Փարիզ, 1983 թ., փետրվար, № 439, էջ 22):

Հակառակ բուրժուական գաղափարախոսների հորինվածքներին, կոմունիստական կուսակցությունը սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրերից, չնայած հետպատերազմյան ավերվածությանն ու քաղաքացիական պատերազմին, դասակարգային հակառակորդի չդադարող դիմադրության և համաշխարհային կապիտալիստական բլոկադայի պայմաններում հետևողականորեն կենսագործել է նախկին ծայրամասերի ժողովուրդների տնտեսական ու մշակութային զարգացման բնագավառում գոյություն ունեցող փաստական անհավասարությունը վերացնելու լենինյան ազգային քաղաքականությունը: Շնորհիվ ռուս և երկրի մյուս եղբայրական ժողովուրդների անշահախնդիր օգնության, արդեն առաջին երկու տասնամյակներում ապահովվեց երիտասարդ Սովետական Հայաստանի ինտենսիվ զարգացումը: Հատկապես բուռն կերպով զարգացավ հանրապետության տնտեսությունը երկրի ինդուստրացման տարիներին: 12 տարվա ընթացքում կառուցվեց 46 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն, ձևավորվեց մեքենաշինական և քիմիական արդյունաբերությունը, ստեղծվեցին թեթև, սննդի և շինանյութերի արդյունաբերությունների որակապես նոր ճյուղեր:

Հաջորդ տարիներին հանրապետության տնտեսությունը շարունակում էր զարգանալ արագացված տեմպերով: Պատահական չէ, որ այսօր այնպիսի կարևոր ցուցանիշով, ինչպիսին արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի աճի տեմպերն են, Հայկական ՍՍՀ-ն երկրի հանրապետությունների մեջ գրավում է առաջին տեղերից մեկը:

ՍՄԿԿ լենինյան ազգային քաղաքականությունն անանց նշանակություն ունի հայ ժողովրդի նոր, երջանիկ ճակատագրում, ժողովուրդ, որը ջերմ սիրո ու հարգանքի զգացումներ է տածում ռուս մեծ ժողովրդի, ՍՍՀՄ-ի բոլոր եղբայրական ժողովուրդների նկատմամբ: Ինչպես նշվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1986 թ. հոկտեմբերյան պլենումում, մեր ժողովրդի ուժը ինտերնացիոնալիզմն է, սովետական ժողովուրդների հետ եղբայրական բարեկամությունը: Եվ նա խորապես գիտակցում է, որ մեր հանրապետության բոլոր պատմական նվաճումները, դեպի սոցիալ-տնտեսական ու կուլտուրական զարգացման գագաթները նրա խոյանքը անհնարին կլինեին առանց Սովետական Միության եղբայր ժողովուրդների բարեկամության ու փոխօգնության:

ՍՍՀՄ ազգերի ու ազգությունների անխախտ դաշինքը, նրանց անսասան բարեկամությունն ու եղբայրությունը, համատեղ աշխատանքը, ծաղկումն ու մերձեցումը սովետական հասարակության հետագա առաջընթացի կարևորագույն գործոններն են: Մեր երկրի ժողովուրդները վաղուց են գիտակցել սոցիալիզմի բոլոր առավելությունները, որը հնարավորություն է ընձեռում միասնական միութենական բազմազգ պետության շրջանակներում համատեղ լուծելու սոցիալ-տնտեսական, քաղաքական ու այլ հարցեր: ՍՍՀՄ ժողովուրդների միջև սեպ խրելու, նրանց միասնությունը խարխլելու հակակոմունիզմի բոլոր փորձերը դատապարտված են ձախողման:



# ԱԿԱՆԱՎՈՐ ԳԻՏՆԱԿԱՆԸ, ԲՈՑԱՇՈՒՆՉ ՀԱՅՐԵՆԱՍԵՐԸ

**(Ակադեմիկոս Ն. Մ. Սիսակյանի ծննդյան 80-ամյակի առթիվ)**

*ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅԱՆ ականավոր ներկայացուցիչների համաստեղության մեջ, որոնք հավատարմորեն ծառայել են երկրին ու ժողովրդին, արժանի տեղ է գրավում սովետական երևելի գիտնական, գիտության խոշոր կազմակերպիչ, պետական և հասարակական գործիչ. ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիաների ակադեմիկոս, ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր Նորայր Մարտիրոսի Սիսակյանը, որն այս օրերին կբոլորեր իր 80 տարին...*

*Ն. Սիսակյանը ծնվել է 1907 թ. հունվարի 25-ին Աշտարակում, չքավոր գյուղացու ընտանիքում: Վաղ հասակում զրկվելով ծնողներից՝ նա ստիպված էր հոգալ իր գոյության մասին և՝ մինչև 16 տարեկանը հնարավորություն չի ունեցել ստանալու անգամ նախնական կրթություն: Ուսման իր անհագ ծարավը Ն. Սիսակյանը կարողացավ հագեցնել միայն սովետական իշխանության հաստատումից հետո: Կարճ ժամանակում ստանալով միջնակարգ կրթություն՝ նա 1928 թ. ընդունվում է Երևանի պետական համալսարանը, որտեղից շուտով գործուղվում է Մոսկվայի Կ. Ա. Տիմիրյազևի անվան գյուղատնտեսական ակադեմիա՝ ուսումը շարունակելու: Դեռ ուսանելու տարիներին Սիսակյանը մեծ հետաքրքրություն է ցուցաբերում գիտական աշխատանքի նկատմամբ: Նրա ընդունակություններն աննկատ չեն մնում ականավոր գիտնական, ակադեմիկոս Դ. Ն. Պրյանիշնիկովի ուշադրությունից. վերջինիս ղեկավարությամբ էլ 1932 թվականից սկսվում է Սիսակյանի գիտական գործունեությունը:*

*1935 թ. Դ. Պրյանիշնիկովի և սովետական կենսաքիմիական գիտության հիմնադիր ու կազմակերպիչ, ակադեմիկոս Ա. Ն. Բախի երաշխավորությամբ Սիսակյանն ուղարկվում է ՍՍՀՄ ԳԱ կենսաքիմիայի նորաստեղծ ինստիտուտի ասպիրանտուրա: Այստեղ էլ անցել է նրա ողջ գիտական գործունեությունը՝ որպես լաբորատորիայի ղեկավար և դիրեկտորի տեղակալ: Կարճ ժամանակամիջոցում Նորայր Սիսակյանին հաջողվեց իրականացնել խորը հետազոտություններ՝ նվիրված բույսերի, կենդանիների և մանրէների հիմնարար ու կիրառական կենսաքիմիայի բազմազան հրատապ պրոբլեմներին:*

*Գիտական աշխատանքի սկզբնական շրջանում նա զբաղվում էր բույսերի կենսաքիմիայի և ֆիզիոլոգիայի կարևորագույն, այն ժամանակ դեռևս չլուծված հարցերի ուսումնասիրությամբ: Կատարվում էին հետազոտություններ՝ կապված շաքարի ճակնդեղի մեջ շաքարի կուտակման պրոցեսում ֆոսֆորի դերի բացահայտման հետ: Այնուհետև գիտնականն իր ջանքերը կենտրոնացրեց բույսերի երաշտադիմացկունության կենսաքիմիական հիմունքների ուսումնասիրության վրա:*

*Խոր գիտելիքները, հարցախույզ միտքն ու առաջադրված նպատակին հասնելու հետևողականությունը հաջողությամբ պսակեցին նշված պրոբլեմների լուծմանն ուղղված գիտնականի ջանքերը և հնարավորություն տվեցին նրան պաշտպանելու նախ թեկնածուական (1936 թ.), ապա դոկտորական դիսերտացիաները (1940 թ.): Այդ հետազոտությունները համընդհանուր ճանաչում ստացան ինչպես մեր երկրում, այնպես էլ արտասահմանում, քանի որ Ն. Սիսակյանն առաջինը բացահայտեց կենսաքիմիական պրոցեսների նուրբ մեխանիզմում տեղի ունեցող այն տեղաշարժերը, նյութափոխանակության այն խախտումները և ֆերմենտային ապարատի ակտիվության այն փոփոխությունները, որոնք երաշտի պայմաններում հանգեցնում են բույսերի չորացմանը: Նրա ստացած արդյունքները ոչ միայն էականորեն լրացրին բույսերի երաշտադիմացկունության բնույթի մասին եղած պատկերացումները, այլև հիմք ծառայեցին կուլտուրաների նոր, ավելի չորադիմացկուն տեսակների ստացման և դրանց մշակության ագրոտեխնիկական միջոցառումների հետազոտման համար:*

*Երկար տարիներ Ն. Սիսակյանը հետևողականորեն ուսումնասիրում էր բույսերի ենթաբջջային գոյացումների ֆունկցիոնալ կենսաքիմիան, և նա իրավամբ համարվում է այդ ուղղության հիմնադիրը: Գիտնականի այդ աշխատանքների շարքում նկատելի տեղ են գրավեց-*

գործողությունների կատարման ձևն ու կարգը՝ ծիսակարգը: Նրանց վերջնական նպատակը մարդկանց մեջ որոշակի սոցիալական զգացումներ ներշնչելն է:

Սոցիալիստական նոր ծեսերը ծագել են մարդկանց արտադրական գործունեության նոր հիմքի վրա և հագեցած են աշխատավորական զանգվածների ավանդույթներով: Դրանք արտահայտում են մարդկանց կենսակերպը, անձնական, կոլեկտիվ ու հասարակական ձգտումները: Դրանցում յուրովի զուգակցվում են ժողովրդական ծեսերի ավանդական կայուն և մշտապես նորացվող տարրերը, որոնց շնորհիվ, հաստատվելով կենցաղի մեջ, սովորույթի և բարոյական օրենքի ուժ են ձեռք բերում, փոխանցվում հաջորդ սերունդներին: Հետևապես նոր ծեսեր ստեղծելը կենսական անհրաժեշտություն է: Դրանք, սակայն, հնի հասարակ կրկնությունը չեն, այլ ավանդականը՝ նորօրյա բովանդակությամբ հարստացած: Ժողովուրդն է ստեղծում ծեսերը, որոնք մարմնավորվում են կենցաղում ու կյանքում զանազան միջոցներով:

Սոցիալիստական նոր ծեսերն ու տոները մեր ժողովրդի հոգևոր մշակույթի և կենսակերպի ձևավորման, զարգացման բաղադրամասն են, որոնք նպաստում են նոր հարաբերությունների զարգացմանը, անհատի և կոլեկտիվի կապերի ամրապնդմանը: Դրանց մեջ կուտակվում են սովետական մարդկանց սոցիալական փորձը, աշխարհայացքը, հոգևոր գաղափարները, կենցաղի կոմունիստական վերափոխման միջոցները: Մեր հասարակության հոգևոր կուլտուրայի անընդմեջ զարգացման պրոցեսը նոր ծեսերին ու սովորույթներին հեղափոխական բնույթ է տալիս, նրանց օգնությամբ հաղթահարվում են մարդու ներդաշնակ զարգացմանը խանգարող հինն ու իր դարն ապրածը:

Սոցիալիստական նոր տոներն ու ծեսերը հիմնականում հետևյալ ֆունկցիաներն են կատարում. սոցիալ-հոգեբանական, որի օգնությամբ ժամանակների կենդանի կապ է հաստատվում, տեղի է ունենում նախորդ սերունդների սոցիալական փորձի անմիջական ընկալում կամ ժառանգում: Երկրորդ՝ դաստիարակող ֆունկցիան դրսևորվում է ընտանիքում, կոլեկտիվում և հասարակության մեջ: Երրորդ ֆունկցիայի շնորհիվ հասարակական ավանդույթները, ծեսերը հանդես են գալիս որպես մարդու ամենօրյա կյանքն ու աշխատանքային գործունեությունը կարգավորող միջոց՝ դրանք նպատակամղելով դեպի բարոյական սկզբունքների, օրենքների, հասարակական գաղափարների կիրառման հունը:

Նոր ծեսերի մեջ մտնում են աշխատանքային, հասարակական-քաղաքական, հայրենասիրական և ընտանեկան-կենցաղային տոներն ու արարողությունները: Աշխատանքային ծեսերի նպատակն է նոր սերնդին բարոյապես և հոգեբանորեն նախապատրաստել աշխատանքի, նրանց մեջ ներարկել աշխատասիրություն, անհանդուրժողական վերաբերմունք մշակել անբանության և ծուլության, անաշխատ վաստակով ապրելու դեմ: Առավել տարածված աշխատանքային արարողություններից է բանվոր ձեռնադրելու ծիսակատարությունը, որը նորընծա բանվորի մեջ կյանքի և ապրելու, աշխատանքից հաճույք ստանալու կայուն դիրքորոշում է ձևավորում, ամրապնդում նախընտրած մասնագիտության նկատմամբ սերը: Պրոֆտեխուսումնարաններից կամ արտադրական ուսուցման դպրոցներից եկածները նախ ընդունվում են աշխատանքային ընտանիք, ծանոթանում արտադրամասի, բրիգադի, հերթափոխի աշխատանքին, վարպետ-դաստիարակի հետ, գործարանային անցաթղթեր ստանում, յուրացնում արտադրական գործողությունները, հարմարվում, ինչպես ասում են, ադապտացիայի են ենթարկվում: Նման փորձաշրջանը սովորաբար տևում է վեց ամսից մեկ տարի: Ժամկետը լրանալուց հետո տեղի է ունենում բանվոր դասակարգի շարքերը համալրելու արարողությունը, որը հարմարեցվում է այս կամ այն օրացուցային տարեթվին կամ համաժողովրդական տոնին: Օրինակ, Լենինականի շատ արդյունաբերական ձեռնարկություններում բանվոր ձեռնադրելու օրը նշվում է յուրաքանչյուր տարվա հոկտեմբերի սկզբին՝ կոմերիտմիության III համագումարում Վ. Ի. Լենինի արտասանած ճառի տարեդարձի օրը: Մայրաքաղաքի «Լույս» արտադրական միավորումում նման միջոցառումների ժամանակ շեշտը դրվում է դրանց բարոյական կողմի վրա: Օրինակ, միավորման Երևանի գլխամասային գործարանում երիտասարդ բանվորներին նվիրված արարողությանը մասնակցելու հրավիրատոմսի հետ միասին տրվում է կոլեկտիվի աշխատանքային կոդեքսը, որը բովանդակում է ձեռնարկության մարդկանց հայրենանվեր գործերի, նրա աջթևայինների, վետերանների, հնգամյակների առաջավորների աշխատանքային սխրանքների տարեգրությունը: Բացի այս, այնտեղ նշված են երիտասարդի վարքի կանոններն ու նորմերը աշխատանքի և հանգստի ժամանակ:

Մեր հանրապետության բազմաթիվ ձեռնարկություններում աշխատում են նույն ընտանիքի կամ ազգակցական կապ ունեցող ընտանիքների անդամներ, որոնք կազմում են աշխատանքային գերդաստաններ: Երևանի կաբելի գործարանում հիմնադրման օրից աշխատանքի անցավ Գևորգ Սմբատյանը: Նա կարճ ժամանակում հմտացավ իր գործում: Այսօր նրա աշակերտների թիվն անցնում է 200-ից, որոնցից շատերն արտադրության առաջավորներ են, անվանի վարպետ-դաստիարակներ: Նա հարյուրավոր նորամուծությունների հեղինակ է, հանրապետության վաստակավոր ռացիոնալիզատոր: «Պատվո նշանի» շքանշանակիր Սմբատյանը ղեկավարում է փաթաթման արտադրամասը, բազմիցս հաղթող է ճանաչվել համամիութենական սոցիալիստական մրցությունում: Ծուրջ քառորդ դար այստեղ է աշխատում կինը՝ Ժենյան, որը պոլիտեխնիկական ինստիտուտն ավարտելուց հետո անդամագրվեց կաբելագործների մեծ կոլեկտիվին: Արտադրության վետերաններից է նաև Գևորգի եղբայրը՝ Սմբատը: Տասնյակ պատանիներ ու աղջիկներ ինքնահաստատման քայլերն արել են նրա ղեկավարությամբ: Գործարանում գովեստով են խոսում Անուշ և Վարդան Սմբատյանների մասին, որոնք աշխատում են անձնական դրոշմանիշով: Վերջերս Գևորգ և Ժենյա Սմբատյանների աշխատանքային ուղին ընտրեց նրանց որդին՝ Մկրտիչը: Աշխատանքային գերդաստանները ձեռնարկության կոլեկտիվի իսկական միջուկն են և իրենց օրինակով բարի նախանձ են առաջացնում՝ ստեղծելով արտադրությունը խթանող ընտանեկան յուրօրինակ արդյունավետ մրցություն: Սա հիանալի ավանդույթ է:

Աշխատանքային ծեսերի մեջ կարելի է հատկապես առանձնացնել առաջին աշխատավարձի հանձնումը: Այս արարողությունը տարբեր կոլեկտիվներում յուրովի է կատարվում: Արտադրություն եկած տղաներն ու աղջիկները աշխատավարձն ստանում են արտադրամասում կամ բրիգադում, որտեղ նորեկներին սրտանց ու ջերմորեն ողջունում են աշխատանքային ընկերները, ծաղիկներ, գրքեր, հուշանվերներ, բարեմաղթական բացիկներ նվիրում: Նման իրադարձությունը, ինչ խոսք, անհետևանք չի մնում: Դրանք նորեկներին հնարավորություն են ընձեռում ճաշակելու իրենց նկատմամբ տածվող հոգատարության և ուշադրության բերկրանքը: Ավելի հետաքրքիր է անցնում պրոֆտեխուսումնարանների շրջանավարտների առաջին աշխատավարձի կոլեկտիվ հանձնմանը նվիրված արարողությունը: Լենինականի բամբակագործվածքային արտադրական միավորման մանվածքային ֆաբրիկայում դա տեղի է ունենում ձեռնարկության դահլիճում: Թնդում է քայլերգը, բացվում վարագույրը, կլոր սեղանը ծաղկեփնջերով է զարդարված: Բեմում հանդիսության «մեղավորների» հետ նրանց ծնողներն են, ավագ բանվորները, վարպետ-դաստիարակները, գործարանի ղեկավարները, հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչները: Տոնախմբության ամբողջ ընթացքում կարմիր թելի պես անցնում է ստեղծագործ աշխատանքի թեման: Գալիս է հանդիսության ամենատպավորիչ մասը. ֆաբրիկայի կոմերիտական կազմակերպության քարտուղարը կարդում է նորընծա բանվորների ազգանունները, որոնք առաջին անգամ գործի գցելով մանող մեքենաները, արտադրանք են տվել երկրին: Իսկ հիմա... վարպետ դաստիարակները ու բրիգադի ղեկավարները նրանց հանդիսավորությամբ առաջին աշխատավարձն են հանձնում: Դահլիճով մեկ թևածում է ավագների անկեղծ և սրտաբուխ խոսքը:

Մեր ամբրելակերպին յուրահատուկ հրաշալի ավանդույթ է սոցիալիստական մրցությունը, որի արդյունավետ ձևեր են դարձել կոմունիստական շաբաթօրյակները, կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների և հարվածայինների կոչման համար ծավալված շարժումը: Ավագ սերնդի աշխատանքային գործունեությունն ու սխրանքները վառ, ուսանելի օրինակ են յուրաքանչյուր ընտանիքի երեխաների համար: Դրանք աճող սերնդի և ավագ սերնդի կապի անքակտելիության երաշխիքն են: Այդ ամենի մասին նշվեց կուսակցության XXVII համագումարում. «Պետք է պետական ու հասարակական կազմակերպությունների գործնական աշխատանքը այնպես դնել, որ այն ըստ ամենայնի նպաստի ընտանիքի, նրա հիմքերի ամրապնդմանը: Խոսքը վերաբերում է հասարակական տոնակատարությունների, կուլտուրական ու սպորտային միջոցառումների, ընտանեկան հանգստի համատեղ անցկացման պայմանների ստեղծմանը: Անհրաժեշտ է լայնորեն մեծարել աշխատավորական գերդաստաններին, պրոպագանդել ընտանեկան բարի ավանդույթները, երիտասարդությանը դաստիարակել ավագ սերնդի փորձի հիման վրա...» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 72)**:

Մարդու հասարակական ճանաչումն ու

# ԺԱՌԱԳԱՅԹՆԵՐԸ ԾԱՌԱՅՈՒՄ ԵՆ ՄԱՐԴՈՒՆ

Մ ԵՐ ԺԱՄԱՆԱԿԻ ԽՈՇՈՐԱԳՈՒՅՆ նվաճումներից գիտատեխնիկական նշանակալից իրադարձություն է քվանտային գեներատորների՝ լազերի ստեղծումը 60-ական թվականների սկզբին: Այդ բնագավառում կատարած աշխատանքների համար սովետական գիտնականները՝ ակադեմիկոսներ Ն. Գ. Բասովը և Ա. Մ. Պրոխորովը, ինչպես և ամերիկացի Չ. Թաունսը արժանացան Նոբելյան մրցանակի: Իր գոյության 20 տարիներին սահմաններ չճանաչող լազերային ճառագայթը դարձավ մարդու բարի օգնականը: Քվանտային գեներատորները լայնորեն գործադրվեցին արդյունաբերության ու տեխնիկայի, բժշկության տարբեր բնագավառներում, գիտական հետազոտություններում: Ցավալի է, որ ԱՄՆ-ում այս ասպարեզի նվաճումներն այսօր ձգտում են ծառայեցնել իրենց ռազմամոլական նպատակներին:

Մեր ամսագրի ընթերցողների խնդրանքով ժուռնալիստ Լ. Մանայանը զրույց ունեցավ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի՝ «Կոգերենտ և ոչ գծային օպտիկայի» պրոբլեմի գծով գիտական խորհրդի նախագահ, ՍՍՀՄ Գ.Ա. թղթակից անդամ Ֆեոդոր Վասիլևիչ Բունկինի հետ: Հարցազրույցը նվիրված էր քվանտային էլեկտրոնիկայի ասպարեզում ձեռք բերված արդյունքներին, ինչպես և ջերմամիջուկային կառավարվող ռեակցիայի խնդրի լուծման նպատակով դրանց օգտագործման հեռանկարներին:

ԹՂԹ.— Ֆեոդոր Վասիլևիչ, Ձեր ղեկավարած գիտական խորհուրդը կոչված է կոորդինացնելու գիտական տարբեր հաստատությունների ջանքերը լազերի ուսումնասիրության գործում: Այս թեմային նվիրված ամենափոքր տեսությունն իսկ բազմահատոր գիրք կկազմեր: Այնուամենայնիվ, խնդրում եմ, գոնե թվարկել այն բնագավառները, ուր լազերի օգտագործումն արդեն զգալի արդյունքներ է տալիս:

ԲՈՒՆԿԻՆ.— Ամսագրային մեկ հոդվածում, իհարկե, հնարավոր չէ պատմել լազերի բոլոր գործածությունների մասին: Որքան էլ տարօրինակ է, լազերը դեռևս շատերի պատկերացմամբ ինչ-որ էկզոտիկ մի բան է: Դրա գործադրության շուրջ լեգենդներ, մտահնարանքներ են հյուսվում և մեր օրերում: Մինչդեռ լազերային տեխնիկայի նմուշները ձեռք են բերում նորանոր «մասնագիտություններ» ո՛չ միայն պատկառազդու լաբորատորիաներում ու կոնստրուկտորական բյուրոներում, այլև արտադրության նորարարների արհեստանոցներում, գիտական լսարաններում:

Լազերային «դանակը» երկաթաթերթից կամ ամեն մի, նույնիսկ ամենապինդ, մետաղից կարող է ձևել ապագա մեքենայի մասերը, զգեստի բարդ ձևերը՝ տարբեր գործվածքներից: Լազերը հնարավորություն է ընձեռում գլխիկոնելու ուզած մետաղը, զոդում կատարելու ամենաարտասովոր պայմաններում, ասենք՝ վակուումում, դժվարամատչելի տեղերում զոդելու միլիմետրից էլ փոքր տրամագիծ ունեցող արտադրանքները:

Գետնի տակ, խորքում, լազերը մետրոպոլիտենի ուղիներ է բացում, օդանավակայաններում նշում օդանավերի վայրէջքը նույնիսկ ամենաթանձր մառախուղի ժամանակ:

Եթե լազերի ճառագայթն ուղղենք հատուկ մեկուսիչով պատած լուսատարի, այսինքն՝ ապակե մանրաթելի միջով, լույսը ձեռք կբերի մինչ այդ իրեն ոչ հատուկ դյուրաթեքություն: Այսօր արդեն «դյուրաթեք լույսի» օգնությամբ բժիշկները



թափանցում են մարդկային օրգանիզմի ծալքերը, կատարում անարյուն վիրահատություններ: Լուսատարները լայնորեն օգտագործվում են նաև կապի ասպարեզում: Մեկ տասնորդական միլիմետր հաստություն ունեցող լուսատարին հաջորդող էներգիայի հույքը միաժամանակ կարող է փոխանցել մի քանի հազար հեռախոսային խոսակցություն և հեռուստատեսային բազում ծրագրեր: Ընդ որում լուսային կանալները զերծ են հաղորդալարերի ցանցին հատուկ արատներից:

Այսօր արդեն լազերային ճառագայթն ինֆորմացիա է «գրում» հոլոգրաֆիական հիշողության ոլորտում: Դժվար է պատկերացնել, որ ամբողջ մի գրադարանում ամփոփվող ինֆորմացիան լազերային ճառագայթի միջոցով հնարավոր կլինի գրանել ստանդարտ թղթի չափ ժապավենի վրա:

ԹՂԹ.— Ֆեոդոր Վասիլևիչ, պատմեցեք, խնդրում եմ, այն ուսումնասիրությունների մասին, որոնց նպատակն է լազերային ճառագայթը ծառայեցնել էներգետիկայի հետ կապված խնդիրների լուծմանը:

ԲՈՒՆԿԻՆ.— Թերևս ամենից առաջ հարկ է խոսել այն ուսումնասիրությունների մասին, որոնք վերաբերում են լազերի «ներխուժմանը» մեզ համար արդեն սովորական դարձած ատոմային էներգետիկայի ոլորտը:

Իր ողջ պատմության ընթացքում մարդկությունն էներգիա է ստացել այրման պրոցեսներից: Մենք վառել ենք փայտը, նավթը, ածուխը: Քիմիական այս բոլոր փոխարկումներում մասնակցում են ատոմների էլեկտրոնային թաղանթները: Եվ միայն XX դարում մարդիկ հասկացան, որ քիմիական վառելիքի պաշարները, ցավոք, անսպառ չեն: Ամենալավատես կանխատեսություններով իսկ, պահանջմունքի այժմյան մակարդակի պահպանման պայմաններում, նավթի պաշարները երկրի վրա կսպառվեն այս դարի վերջին, ածխինը՝ մի քանի հարյուրամյակ հետո:

Դեռևս մեր դարասկզբին Ալբերտ Էյնշտեյնը նշեց, որ հնարավոր է էներգիա ստանալ ո՛չ միայն քիմիական պրոցեսների շնորհիվ՝ էլեկտրոնային թաղանթների մակարդակում, այլև ատոմային միջուկների վերակառուցման օգնությամբ: Մի քանի տասնամյակ անց, փորձնականորեն հաստատվեց նրա կանխատեսությունը: Ընդ որում պարզվեց, որ էներգիա կարող են տալ երկու տիպի միջուկային փոխակերպությունները— ծանր միջուկի տրոհումը և թեթև միջուկների միավորումը ծանրի մեջ:

Առաջին պրոցեսը ատոմի ճեղքումն է՝ ընկած ուրան—235-ի տարրալուծման շղթայական ռեակցիայի հիմքում: Ուրանի այս իզոտոպն է ահա, որ արդեն մի քանի տասնամյակ է վառելանյութ է ծառայում ամբողջ աշխարհի ատոմային էլեկտրակայանների համար: Սակայն որպեսզի ճեղքվող ուրանն իբրև վառելանյութ օգտագործվի արդյունաբերական միջուկային ռեակտորներում, այն պետք է հարստացվի:

Ուրանի հարստացումն այսօր իրականացվում է իզոտոպների տրոհման միջոցով, օրինակ, գազի մեջ՝ դիֆուզիայի մեթոդով: Այդ հույժ թանկարժեք պրոցես է: Եվ, բացի դրանից, այդ պրոցեսի հետևանքով առաջանում են արժեքավոր հումք պարունակող թափոններ: Գիտնականների առջև միշտ էլ ծառացել է այդ հումքի լատությունը թափոններում նվազեցնելու խնդիրը: Այդպիսով իսկ զգալիորեն կանեին ուրանի՝ օգտագործման համար պիտանի պաշարները:

Ուրանի հարստացման արժեքի իջեցման ներկայումս ուսումնասիրվող հնարավորություններից մեկը իզոտոպների լազերային տրոհումն է: Ընդ որում հարկ է նշել, որ այս խնդրի լուծման գործում իրենց նշանակալից ավանդն ունեն սովետական գիտնականները: 1972 թվականին հենց մեր երկրում կատարվեց առաջին հաջողված փորձն այս ասպարեզում: Այդ ժամանակվանից այս բնագավառում հետազոտություններ են ծավալվել շատ երկրներում: Հուսանք, որ դրանք հաջող կավարտվեն...

ԹՂԹ.— Այդ, թերևս, միաժամանակ վերջ կդնի լազերը դարիս հիմնական խնդրի՝ ջերմամիջուկային սինթեզի համար օգտագործելու նպատակով կատարվող ուսումնասիրություններին:

ԲՈՒՆԿԻՆ.— Ամենևի՛ն: Չէ՛ որ ջերմամիջուկային սինթեզը, էներգիայի ստացման այլ միջոցների համեմատությամբ, ունի շատ առավելություններ: Ինչպես արդեն ասել եմ, էներգիայի ստացման երկրորդ միջոցը, ատոմային միջուկների փոխակերպման շնորհիվ, միջուկային սինթեզն է՝ համեմատաբար թեթև միջուկների միաձուլումը ավելի ծանրի: Դրանում օգտագործվում են ջրածնի իզոտոպները, որոնք

մտնում են ջրի բաղադրության մեջ: Իսկ այդ նշանակում է, որ գործնականորեն անսպառ են երկրի՝ սինթեզի ռեակցիայի համար անհրաժեշտ հումքի պաշարները, և այդ հարցը օրակարգից հանվում է:

Բայց այս դեռ բոլորը չէ: Ջերմամիջուկը ունի նաև այնպիսի առավելություններ, ինչպիսին են՝ էկոլոգիական մաքրությունը և վթարային անվտանգությունը: Ջերմամիջուկը կդյուրացնի ռադիոակտիվ թափոններից ձերբազերծվելու խնդրի լուծումը: Ջերմամիջուկային ռեակցիայի ընթացքում առաջացող նեյտրոնային ճառագայթումը գործնականում կկլանվի էներգիայի արտադրության ժամանակ: Կառուցվածքային համապատասխան նյութերի ընտրությամբ նվազագույնի կհասցվի ռադիոակտիվությունը:

ԹՂԹ.— Երբ. ասում ենք «ատոմային էներգետիկա» կամ «միջուկային էներգետիկա», ապա դեռևս նկատի ենք ունենում միայն տրոհման էներգիան: Բայց չէ՞ որ նկատի ունենալով սինթեզի պրոցեսին հատուկ այդքան ակնհայտ առավելությունները, մարդկությունը վաղուց պետք է հաղթահարեր ջերմամիջուկային էներգիայի ստացման ճանապարհին ընկած բոլոր արգելքները: Թերևս քիչ ուշադրություն է նվիրվել միջուկային սնթեզից էներգիա ստանալու խնդրին:

ԲՈՒՆԿԻՆ.— Հարցն այստեղ ուշադրության պակասը չէ: Ավելի քան երեսուն տարի է, որ գիտնականներն աշխատում են լուծել ջերմամիջուկի՝ երկրային արհեստական արեգակի ստացման խնդիրը: Կարելի է ասել, որ այդ աշխատանքն սկզբնական շրջանում անիրականանալի է թվացել, ապա դասվել ռեալ գործերի կարգը, իսկ վերջին ժամանակներս դարձել է «կենսական պահանջ»: Դեռևս 1956 թվականին ակադեմիկոս Կուրչատովը ձեռակերտ արեգակի ստեղծման գործը համարել է «գիտության կարևորագույն, ամենագլխավոր խնդիրը, որի լուծումը մարդկությանը վերջնականապես կազատեր երկրի վրա իր գոյության համար անհրաժեշտ էներգիայի պաշարներ ունենալու հոգսից»: Ինչպես տեսնում եք, գիտնականները չեն թերագնահատել ջերմամիջուկը:

Բայց կար մի այլ բան. հանգիստ, կառավարվող ռեժիմում միջուկների սինթեզի իրականացման հետ կապված դժվարությունները: Ըստ էության, ջերմամիջուկը նմանակում է արեգակի և այլ աստղերի արտաքին շերտերում տեղի ունեցող պրոցեսները: Որպեսզի տեղի ունենա ջրածնի միջուկների ռեակցիա, անհրաժեշտ է, որ դրանք հաղթահարեն փոխադարձ վանման վիթխարի էլեկտրական ուժերը: Դրա համար գիտնականներն առաջարկեցին ջրածնային միջուկներից բաղկացած պլազման տաքացնել մինչև 10—15 միլիոն աստիճան: Ի դեպ, հենց այդպիսին է աստղերի ընդերքի ջերմաստիճանը: Միջուկի այդպիսի տաքացման շնորհիվ ստեղծվում է քաոսային վիճակ, որի հետևանքով աճում է դրանց ուժգին բախման հավանականությունը:

Սակայն աստղերի վրա պլազման գտնվում է շատ հոծ վիճակում, իսկ աստղային «ռեակտորներն» այնպիսի վիթխարի չափերի են, որ անհասանելի են երկրային պայմաններում: Եվ նույնիսկ նման բարենպաստ վիճակում աստղերի վրա միջուկները համեմատաբար հազվադեպ են միաձուլվում: Այդ է պատճառը, օրինակ, որ արեգակի էներգաանջատումը շատ քիչ է: Համեմատության համար ասեմ, որ այն 400 հազար անգամ քիչ է մարդու (նույնիսկ «սառնարյուն» կոչվողների) էներգաանջատման տեսակարար կշռից...

ԹՂԹ.— Ֆեոդոր Վասիլևիչ, Դուք չե՞ք չափազանցնում:

ԲՈՒՆԿԻՆ.— Ո՛չ: Մարդն արտազատում է 400 հազար անգամ ավելի շատ տեսակարար էներգիա, քան մեր լուսատուն: Արեգակի ընդհանուր վիթխարի հզորությունը նրա հսկայական զանգվածի արդյունք է: Երկրային, ձեռակերտ ռեակտորների համար նման տեսակարար էներգաանջատումն անհասանելի է:

Ի՞նչ անել: Ես ասացի, որ մենք կարող ենք մեծացնել պլազմայի խտությունը կամ ռեակտորների ծավալը հասցնել աներևակայելի չափերի, օրինակ՝ ամբողջ Երկրին: Սակայն արեգակնայինին հավասար էներգիա ստանալու համար կա նաև երրորդ ճանապարհը— բարձրացնել ջերմամիջուկային ռեակցիայի ընթացքի ջերմաստիճանը: Հաշվումները ցույց են տվել, որ վերջինիս ինտենսիվության բարձրացման համար բավական է «ընդամենը» արեգակնայինից մի կարգ բարձր, այսինքն՝ ավելի քան 100 միլիոն աստիճան ջերմություն: Այստեղ ծագել է այդպիսի ջերմություն ունեցող պլազմային թանձրուկի՝ ռեակտորի պատերից մեկուսացնելու տեխնիկական



խնդիրը: Սովետական ֆիզիկոսներն առաջարկեցին այդ պլազմայի մագնիսային պլազմակալի գաղափարը: «Բուբլիկի» միջնամասում գտնվող պլազմայի գաղափարը մարմնավորվեց այնպիսի սարքերում, որոնք հայտնի են ամենքին: Տոկամակները, ստելարատորներն են դրանք, որոնցում ուժեղ հոսանքով ստեղծված մագնիսական դաշտի կողմից պահվում է պլազման:

Բայց այստեղ գիտնականների առջև հառնում է մի նոր խնդիր— մագնիսական դաշտը չի կարող ապահովել պլազմայի կայունությունը: Շիկացած պլազման դառնում է հույժ շարժուն, ընդ որում նրա շարժումները միշտ անակնկալ են, անկանխագուշակելի: Բայց չէ՛ որ գիտնականների իդեալը եղել և մնում է այնպիսի ռեակտորը, ուր միջուկների սինթեզը տեղի է ունենում համաչափ ու հանգիստ, ուր ռեակցիայի մեջ ներառվում են «կիզանյութի նորանոր բաժիններ»: Մի խոսքով սինթեզ, որն ամբողջովին գտնվի մարդու հսկողության տակ— կառավարվող սինթեզ:

ԹՂԹ.— Եվ այստեղ իր ծառայություններն առաջարկեց լազերը...

ԲՈՒՆԿԻՆ.— Այսօր մենք լիիրավ կարող ենք ասել, որ պլազմայի մագնիսական պահման համակարգին զուգահեռ իրենց մասին ավելի ու ավելի ակնբախ զգալ են տալիս իներցիալ պահման՝ լազերի վրա հիմնված իմպուլսային համակարգերը:

Մեր երկրում հաջողությամբ զարգանում է ելակետային ուղղությունը՝ պլազմայի մագնիսական պահման համակարգերի ստեղծումը: Սովետական մասնագետներն արդեն առաջարկել և մշակում են գերհաղորդիչ փաթույթներ՝ մագնիսական համակարգերի համար: Դրանք հնարավորություն են ընձեռում նվազեցնելու մագնիսական դաշտի պահպանման համար պահանջվող էներգիայի ծախսերը: Մենք սովորել ենք գերբարձր ռադիոալիքային գեներատորների՝ գիրոտրոնների, օգնությամբ պլազման տաքացնել մինչև ջերմամիջուկի ջերմաստիճանի: Մեր վերջին տոկամակներից մեկի վրա գիրոտրոնների օգտագործման շնորհիվ հաջողվեց ստանալ 30 միլիոն աստիճանից բարձր էլեկտրոնային ջերմության պլազմա: Այժմ ստեղծվող «Տոկամակ— 15»-ում հույս ունենք ջերմաստիճանը հասցնել 100 միլիոնի՝ հանելով միաժամանակ դրա բարձր խտության:

Սակայն, այնուամենայնիվ, պակաս խոստումնալից չէ պլազմայի իներցիալ պահման իմպուլսային համակարգը:

Այս ասպարեզի ուսումնասիրությունների պատմությունը հաշվվում է վաթսունական թվականների սկզբից, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի՝ Պ. Ն. Լեբեդևի անվան ֆիզիկայի ինստիտուտի աշխատակիցներ ակադեմիկոս Ն. Գ. Բասովի և Օ. Ն. Կրոխինի հոդվածից: Նրանք առաջարկեցին ջերմամիջուկային վառելանյութի տաքացման համար օգտագործել լազերը:

Ռեակտորում լազերի օգտագործման դեպքում վերանում է պլազման անշարժ վիճակում պահելու անհրաժեշտությունը և այն էլ երկար ժամանակով: Եվ, եթե մագնիսային պահման համակարգը կարելի է նմանեցնել էներգիայի մի տեսակը մի այլ տեսակի փոխարկող տուրբինի, ապա լազերային ջերմամիջուկային էլեկտրակայանը կարելի է համեմատել ներքին այրման շարժիչի հետ, որտեղ կիզանյութի միկրոպայթյունների ջերմային էներգիան վերածվում է մխոցի առաջամուղ էներգիայի:

Ինչպե՞ս է տեղի ունենում այդ: Դա արգասիք է այն բանի, որ լազերի հզոր վիթխափունջը կարելի է շատ փոքր տեղի վրա կիզակետել և ստանալ էներգիայի վիթխարի խտությամբ հոսք. կիզանյութը ռեակտորի մեջ է լցվում միկրոսկոպիկ բաժիններով, գնդիկը, որի մեջ գտնվում է այն, ունի մեկ տասներորդական միլիմետր տրամագիծ: Այս թիրախին ուղղվում է լազերային հզոր իմպուլսը, որի տևողությունը մեկ հազարերորդական վայրկյան է: Իմպուլսի նման «կարճ կյանքի» շնորհիվ պլազման, որի վրա ուղղվում է այն, չի հասցնում դուրս գալ «պաշտպանության» շրջանակներից և այս ու այն կողմ ցրվել: Մեկ միլիարդերորդական վայրկյանում իմպուլսում եղած լուսային ճառագայթման հզորությունը տասնյակ անգամ ավելի է աշխարհի բոլոր էլեկտրակայաններից՝ միասին վերցրած:

ԹՂԹ.— Որքան ես հասկանում եմ, Դուք հիմա ներկայացրիք «իդեալական» տարբերակը, այն, ինչպես կարող է և պետք է ընթանա ջերմամիջուկային սինթեզը՝ լազերի օգնությամբ: Պատմեցեք, խնդրում եմ, այն դժվարությունների մասին, որոնց բախվում են հետազոտողները:

ԲՈՒՆԿԻՆ.— Իսկ այդ հարցը կարելի է այլ կերպ ձևակերպել: Քանի որ ջեր-

մամիջուկային սինթեզի բնագավառը, ջերմամիջուկային էլեկտրակայանների ստեղծումը գիտատեխնիկական խոշորագույն խնդիր է՝ մարդկության ողջ պատմության ընթացքում լուծելի, ապա ավելի ճիշտ կլինի ասել ոչ թե այդ ճանապարհին ծագող դժվարությունների, այլ այն հաջողությունների մասին, որոնք, վերջին հաշվով, կարող են իրականություն դարձնել մարդկության երազանքը:

Ջերմամիջուկային սինթեզի բնագավառում լազերը, կարելի է ասել, նորանոր դիրքեր է գրավում: Ծուսով գիտնականները կարող են թիրախում տեղի ունեցող ռեակցիայից ստանալ այնքան էներգիա, որքան թիրախին հասցնի այդ ռեակցիան առաջացնող լազերային իմպուլսը: «Պլազմայի սանձահարման» ամբողջական պրոբլեմի առումով այդ, անշուշտ, անբավարար հատույց է: Ռեակտորների արդյունաբերական շահագործման համար անհրաժեշտ է թիրախից ստանալ, ասենք, 1.000 անգամ ավելի էներգիա: Բայց յուրաքանչյուր նոր քայլ այս ասպարեզում կապված է աներևակայելի դժվարությունների հետ, ուստի և կարող է հաղթանակ համարվել:

Ջերմամիջուկային կիզանյութի խտացման ասպարեզում կատարված փորձերի ընթացքում մենք հասել ենք որոշ արդյունքների:

Մի խոսքով, հաջողությունները ակնհայտ են: Անշուշտ, չլուծված խնդիրներ ևս դեռ շատ կան: Դրանց լուծմամբ են այսօր զբաղված մեր երկրի շատ լաբորատորիաների գիտնականները: Համոզված եմ, որ այդ աշխատանքները ի վերջո հաջողությամբ կպսակվեն, քանի որ շատ վեհ ու ազնիվ է նպատակը՝ տալ մարդկանց էժան և գործնականորեն անսպառ էներգիա: Էներգիա, որն ի սպաս կդրվի մոլորակի բոլոր մարդկանց կյանքի բարելավմանը...

---



## ՀԱՅՐԵՆԻՔԻ ՁԳՈՂԱԿԱՆ ՈՒԺԸ

ԱՇԽԱՐՀՈՎ ՄԵԿ ՍՓՌՎԱԾ հայերի հայրենադարձությունը, որ սկսվել է դեռևս սովետական իշխանության առաջին օրերից, շարունակվում է առ այսօր: Հայրենադարձությունը սոցիալիզմի շնորհիվ հայ ժողովրդի ձեռք բերած մեծագույն նվաճումներից է, նրա ազգահավաքման, համախմբման և զարգացման կարևոր գործոններից մեկը:

Պետք է նշել, սակայն, որ ինչպես սփյուռքահայության, այնպես էլ հայրենադարձության, հայրենիք-սփյուռք փոխհարաբերությունների պատմությունը դեռևս գիտական պատշաճ մակարդակով չի ուսումնասիրվել ու լուսաբանվել: Իսկ բուրժուազգայնական, արևմտաեվրոպական, ամերիկյան և թուրքական պատմագրությունը միտումնավոր կերպով խեղաթյուրում է իրականությունը և այն ներկայացնում ծուռ հայելու մեջ: Այստեղից էլ բխում է վերոհիշյալ պրոբլեմների քաղաքական ու պատմագիտական կարևոր նշանակությունը, դրանց գիտական լուսաբանման անհրաժեշտությունն ու հրատապությունը:

Այդ առումով ուշագրավ է Հ. Մելիքսեթյանի **Հայրենիք—սփյուռք առնչությունները և հայրենադարձությունը (1920—1980 թթ.)** մենագրությունը:

Գրքի առաջին գլուխը նվիրված է ժամանակակից սփյուռքի առաջացմանը և նրա կողմնորոշմանը դեպի Սովետական Հայաստան: Հեղինակը արխիվներից, մամուլից, քննվող հարցի շուրջ եղած գրականությունից քաղած բազմաթիվ փաստերով ներկայացրել է երիտթուրքերի սանձազերծած առաջին ցեղասպանության հրեշավոր քաղաքականությունը, որի հետևանքով ավելի քան **1,5** միլիոն հայեր ոչնչացվեցին, իսկ ողջ մնացածները բռնի տեղահանվեցին ու սփռվեցին աշխարհով մեկ:

Այստեղ ներկայացված է նաև հայ տարագիրների սոցիալ-տնտեսական, իրավազուրկ, անտերունչ վիճակը, ինչպես նաև իմպերիալիստական տերությունների հանցավոր, անտարբեր վերաբերմունքը նրանց նկատմամբ: Միաժամանակ հեղինակը ցույց է տվել այն սրտացավ վերաբերմունքը և հոգատարությունը, որ դրսևորում էր երիտասարդ սովետական պետությունը Ռուսաստանում ապաստանած գաղթականության նկատմամբ: Սովետական երկրի պատմության ամենից ծանր տարիներին՝ 1918—1920 թթ. ՌՍՖՍՀ-ի կառավարությունը հայ գաղթականների համար բացել է տասնյակ որբանոցներ, դպրոցներ, հիվանդանոցներ, սննդակայաններ:

Գրքում վկայակոչվում են հայ գաղթականների բազմաթիվ նամակներ, հեռագրեր, որոնցում նրանք իրենց անկեղծ երախտագիտությունն են հայտնում կոմունիստական կուսակցությանը, սովետական կառավարությանը, անձամբ Վ. Ի. Լենինին՝ ցուցաբերած ջերմ հոգատարության և հսկայական օգնության համար:

Այստեղ համոզիչ փաստերով ցույց է տրված, թե ինչու և ինչպես սփյուռքի հայ զանգվածները վճռականորեն կողմնորոշվեցին դեպի Սովետական Հայաստան՝ այն դիտելով որպես նաև աշխարհասփյուռ հայության հայրենիք:

Ծարադրելով սովետական իշխանության նախատարիներին հայրենադարձության նախապատրաստման և իրականացման պատմությունը՝ հեղինակն այն բաժանել է երեք հիմնական փուլերի: Առանձին տեղ է տրըրված այն ջանքերին, որ գործադրում էր Սովետական Հայաստանի կառավարությունը հայրենադարձներին տեղավորելու, նրանց սոցիալիստական շինարարության և հասարակական-քաղաքական կյանքի մեջ ներգրավելու խնդրում:

Գրքում ցույց է տրվում, թե ինչպես Հայրենական մեծ պատերազմից հետո Սովետական Հայաստանի կուսակցական և պետական մարմինները, հանրապետության առջև ծառացած սոցիալ-տնտեսական կարևոր խնդիրները լուծելու հետ միաժամանակ, ձեռնամուխ եղան սփյուռքի զանգվածային ներգաղթի հարցերին:

Սփյուռքահայերի հայրենադարձության նախապատրաստումը, հայրենադարձների քարավանների տունդարձը և նրանց տեղավորումը հանրապետությունում՝ ահա այս երկու բաժիններից է բաղկացած աշխատության «Սփյուռքահայերի զանգվածային հայրենադարձությունը 1946—1949 թվականներին» գլուխը:

Հենվելով հավաստի փաստաթղթերի վրա՝ հեղինակը հանգամանորեն ներկա-

* *Հ. Ռ. Մելիքսեթյան*, Հայրենիք-սփյուռք առնչությունները և հայրենադարձությունը (1920—1980 թթ.), Երևանի համալսարանի հրատարակչություն, *Երևան, 1985, 476 էջ:*

յացնում է այն մեծ աշխատանքը, որ կատարեցին Հայաստանի կոմկուսն ու կառավարությունը հարյուր հազարավոր հայության տունդարձը կազմակերպելու գործում: Այս գլխում բերված տասնյակ փաստերը հաստատում են նաև այն հսկայական աշխատանքը, որ իրենց հերթին կատարում էին սովետական դեսպանությունները հայրենադարձությունը կազմակերպված անցկացնելու համար:

«Տարբեր դիրքորոշումներ հայրենադարձության նկատմամբ» գլուխը նույնպես շարադրված է բազմաթիվ վավերագրերի, մամուլից քաղած հարուստ փաստական նյութերի հիման վրա: Հեղինակը հանգամանորեն վերլուծել է նաև հայրենադարձության առնչությամբ սփյուռքահայ քաղաքական կուսակցությունների, ազգային, հասարակական և այլ կազմակերպությունների դիրքորոշումն ու գործունեությունը: Բարձր գնահատելով առաջադիմական ուժերի եռանդուն աշխատանքը՝ նա քննադատության է ենթարկել Արևմուտքի իմպերիալիստական տերությունների քաղաքականությունն ու գործունեությունը ինչպես հայկական հարցի, այնպես էլ սփյուռքի ճակատագրի և հայրենադարձության նկատմամբ: Այնուհետև հեղինակը ցույց է տալիս դաշնակցության կուսակցության և նրա ղեկավարների շեշտված թշնամական վերաբերմունքը հայրենադարձության նկատմամբ: Հ. Մելիքսեթյանը անդրադարձել է այդ կուսակցության առանձին պարագլուխներին, որոնք հայության տունդարձը կապում էին ոչ ավելի, ոչ պակաս... Սովետական Հայաստանը Սովետական Միությունից անջատելու և «անկախ» հռչակելու հետ: Նրանք սփյուռքահայությանը ցույց էին տալիս Արգենտինա, Բրազիլիա, Ուրուգվայ, Ավստրալիա, ԱՄՆ, անգամ Աֆրիկա տանող ուղիները, բայց ոչ երբեք մայր հայրենիքի ճամփան:

Երբ սփյուռքահայությունը արհամարհանքով մերժեց հայրենադարձությունը ձախողելու դաշնակցականների դավերը, ապա վերջիններս անցան իրենց նախասիրած մեթոդներին՝ ահաբեկում, զրպարտություն, առաջադեմ գործիչների սպանություն և այլն: Սակայն այդ ամենը դաշնակցությանը սպասված արդյունքը չտըվեց: Այստեղ միանգամայն ճիշտ է հեղինակի եզրակացությունը. դաշնակցությունը և նրա ղեկավարները լավ են հասկանում, որ յուրաքանչյուր գաղթականի տունդարձը սպառնալիք է իրենց իսկ գոյությանը, որովհետև իրենք զրկվում են այն միջավայրից, ուր դեռևս հնարավորություն ունեն գործելու և ապրելու:

Հայրենադարձված հայության ճակատագիրն ու բախտն արդեն պարզ էր: Ի՞նչ պետք է լիներ աշխարհասփյուռ, դեռևս տուն չդարձած հայերի վիճակը: Ինչպե՞ս պահպանել նրա ազգային դիմագիծը, հետ պահել ուծացումից, դուրս քաշել այն սեպը, որ խրում էին դաշնակցականները հայրենիք—սփյուռք կապերի մեջ: Գրքի հետագա շարադրանքից տեղեկանում ենք, որ այդ հարցերը մշտապես գտնվել են Հայաստանի կոմկուսի և կառավարության ուշադրության կենտրոնում: Այն քննարկվել է համագումարներում: ՀԿԿ XXII համագումարը խնդիր դրեց «ընդլայնել և բարելավել կապերը արտասահմանյան հայերի և նրանց առաջադիմական կազմակերպությունների հետ»: Ուշագրավ է նաև այն, որ 1964 թ. հունիսին ստեղծվեց սփյուռքահայության հետ մշակութային կապի կոմիտեն, որի նպատակը դարձավ արտասահմանի հայությանը մայր հայրենիքի շուրջն ավելի սերտորեն համախմբելը և վերջինիս օգնությունը հայապահպանության կենսական գործին ծառայեցնելը:

Գրքի եզրափակիչ մասը մի յուրօրինակ տեղեկատու է, ուր ընթերցողը անհրաժեշտ տվյալներ կարող է ստանալ սփյուռքի հասարակական, քաղաքական, մշակութային, վարչական կազմակերպությունների, կրթօջախների, մամուլի, հայրենակցական միությունների և այլնի մասին:

«Սփյուռքահայության գերակշիռ մեծամասնությունը Սովետական Հայաստանը համարում է իր հայրենիքը,— ՀԿԿ XXVIII համագումարում նշեց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը,— անկեղծորեն ուրախանում նրա հաջողություններով, խոր համակրանքով է վերաբերվում Սովետական Միությանը»:

Հ. Մելիքսեթյանի աշխատությունը ծանրակշիռ ներդրում է հայրենիք-սփյուռք առնչությունների և հայրենադարձության պատմության լուսաբանման ասպարեզում:

**Ռ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**
**Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

*Հանձնված է շարվածքի՝ 17. 02. 87 թ.: Ստորագրված է տպագրության 19. 03. 87 թ.: ՎՖ 05523: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակը՝ 18732: Պատվեր՝ 438:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*